0 8 .04. 2013

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

Государст... БИБЛИОТ... СССР им. В. И. Лен...
23776



digitised by A.R.A.R.@

# Содержание



---

# ԼԻԱՐԺԵՔ ՈՒ ԲՈՎԱՆԴԱԿԱԼԻՑ ԳՐՔԻ ՀԱՄԱՐ

«Հայաստան» հրատարակչությունը տպագրվող գրքերի թվով, բնագավառների ու պրոբլեմների ընդգրկումով ռեսպուբլիկայի առաջատար հրատարակչությունն է: Հայ ընթերցողը գրատենչության իր ծարավը հագեցնում է հիմնականում կարդալով «Հայաստան» մակնիշը կրող քաղաքական ու գեղարվեստական, գիտական ու մասսայական, գյուղատնտեսական ու արտադրա-տեխնիկական, երաժշտական ու կերպարվեստի թեմաներով գրքերը: Այս տեսակետից խոշոր է այդ հրատարակչության դերը մեր ռեսպուբլիկայի աշխատավորության ու երիտասարդությանը նոր գիտելիքներ պատվաստելու, համաշխարհային կուլտուրային հաղորդակից դարձնելու և, ընդհանրապես, նրանց կոմունիստական դաստիարակության գործում: Հրատարակչությունը գաղափարական ճակատի հարվածային ուժերից մեկն է և նրա գործունեության կարգացումն ու բարելավումը կարևորագույն խնդիր է:

Ահա թե ինչու Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտկոմի նախագահությունը վերջերս քննարկեց «Հայաստան» հրատարակչության գործունեության հարցը և հանգամանալի որոշում ընդունեց այդ մասին: Այդ որոշման մեջ նշված է, որ վերջին տարիներին հրատարակչությունը նկատելիորեն բարելավել է իր գործունեությունը, լույս է ընծայել ժամանակի ակտուալ պրոբլեմներին, մեր երկրում կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկային նվիրված բազմաթիվ գրքեր: Հայ ընթերցողն ստացել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների նոր հրատարակություններ: Լույս են տեսել պարտիայի քաղաքականությունը, նրա ծրագրի կարևորագույն դրույթները պարզաբանող մի շարք գրքեր, քաղաքական ու սոցիոլոգիական, փիլիսոփայական և պատմագիտական, տնտեսագիտական և տեխնիկական արժեքավոր երկեր: Փոքր չէ այն աշխատությունների թիվը, որոնք ուղղված են բուրժուական գաղափարախոսության հակաժողովրդական էությունը բացահայտելու նպատակին: Այս տարի հայ ընթերցողը նոր գրքեր ստացավ մեր պարտիայի և սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 95-ամյակի, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 20-ամյակի կապակցությամբ: Հրատարակչությունը լուրջ ուշադրություն է նվիրել սովետական հայրենասիրության, ժողովուրդների բարեկամության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, գիտական աթեիզմի հարցերին:

Մեծ աշխուժություն է նկատվում գեղարվեստական երկի հրատարակման բնագավառում: Հատկապես ուրախալի է ժամանակակից թեմատիկայով տպագրվող արժեքավոր գործերի երևան գալը: Զգալի տեղաշարժեր կան առանձնա-



digitised by A.R.A.R.@

պես գիտա-մասսայական գրականության հրատարակման ասպարեզում: Զգալի-
որեն բարելավվել է լույս տեսած գրականության գաղափարական և գիտական
մակարդակը: Շնորհիվ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի կոմիտեի ջանքերի,
առաջին քայլերն են կատարվում թեմատիկ պլանները կազմելու գործում տարե-
րայնությունը վերացնելու, ընթերցող հասարակայնության պահանջարկը հաշվի
առնելու ուղղությամբ: Արդեն մշակված է 1966—1967 թվականներին հրատա-
րակվելիք գրքերի թեմատիկան, որտեղ պատշաճ տեղ է հատկացված Հոկտեմ-
բերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 50-ամյակին նվիրված գրականու-
թյանը:

Դրական տեղաշարժերի հետ միասին, ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը
միաժամանակ նշեց, որ «Հայաստան» հրատարակչության գործունեության մեջ
տակավին առկա են լուրջ թերություններ և բացեր՝ ինչպես թեմատիկան մշա-
կելու, այնպես էլ լույս տեսած գրքերի բովանդակության, գաղափարական ու
գեղարվեստական մակարդակի, նպատակասլացության տեսակետից: Գիտական
և ստեղծագործական հիմնարկների հետ հրատարակչության համապատասխան
բաժինների թույլ կապերի հետևանքով իրականում տակավին չի հաղթահարված
անպլանայնությունը: Թեմատիկ պլանները տարերային կարգով, միայն հեղի-
նակների անձնական հայտերի հիման վրա կազմելը, ինչ խոսք, այնքան էլ օգ-
տակար պրակտիկա չի կարելի համարել: Այդ իրողությունը հրատարակչությանը
զրկում է նպատակասլաց, ինքնուրույն, նախաձեռնող դերից, սեփական քաղա-
քականությունը վարելու հնարավորությունից: Ճիշտ է, թեմայի անձնական ընտ-
րության շնորհիվ է դարեր շարունակ կարգացել գիտությունը: Սակայն հեղինա-
կի կողմից թեմայի ընտրությունը և հրատարակության համար պատրաստի աշ-
խատություն ներկայացնելը ստեղծագործության անհրաժեշտ տարրն է լոկ:
Մինչդեռ հրատարակչության կարևոր խնդիրը այդ իսկ ստեղծագործական պրո-
ցեսի վրա ներգործելն է, հեղինակների ուշադրությունը չլուծված ակտուալ խնդ-
դիրների վրա բևեռելը, գիտական և այլ կարգի բազմաթիվ ու բազմապան թե-
մաների շարքից կարևորագույնի, հրատապի ընտրելը, ընթերցող հասարակայ-
նության պահանջների ու ցանկությունների ճիշտ ընկալումը և դրանց համապա-
տասխան գործին ընթացք տալը: Դժբախտաբար, հաճախ հեղինակները հրա-
տարակչությանն են ներկայացնում այնպիսի ձեռագրեր, որոնց լույս ընծայումը
ոչ մի տեսակետից անհրաժեշտություն չէ: Դեռ ավելին. հրատարակչական պլան-
ներն են մուծվում վերջնականապես չստուգված, երբեմն թերմշակ ու պակա-
սավոր գործեր:

Հրատարակչության ղեկավարության, գրքի բախտը որոշող օղակների պա-
հանջկոտության թուլացման հետևանքով արտադրություն են հանձնվում ձեռա-
գրեր, որոնք վերամշակման ու խմբագրման լուրջ կարիք ունեն: Պատշաճ բարձ-
րության վրա չի դրված ձեռագրերի գրախոսումը: Ձեռագրերի գրախոսման սահ-
մանված կարգի խախտումները երբեմն այդ կարևոր օղակը դարձնում են ձևա-
կան, գործին քիչ օգնող: Հատկապես անհանդուրժելի են ձեռագրերի վերա-
բերյալ ոչ մասնագետների կարծիք տալու փաստերը: Հրատարակչությունը ոչ
միշտ է կանխում գրախոսողների կողմից անսկզբունքայնության, մակերեսայնու-
թյան ու սուբյեկտիվիզմի երևույթները: Դրա հետևանքով մերթ «դրական» կար-
ծիք են ստանում անարժան գործեր, ապակողմնորոշվում են հենց իրենք՝ հրա-
տարակիչները: Այդպիսի պրակտիկան վկայում է հեղինակների հետ համապա-
տասխան աշխատանքի բացակայության, գրքի խմբագրման պրոցեսի թերիների



մասին: Հատկապես խոսքը վերաբերում է խմբագիրների պրոֆեսիոնալ վարպե-
տությանը, նրանց գիտական ու քաղաքական մակարդակին, գրական ցածր
ունակություններին: Միայն խմբագրական պատշաճ աշխատանքի բացակայու-
թյան պայմաններում կարող էր լույս աշխարհ գալ Ս. Ավագյանի՝ «Մամուլը կո-
մունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում» գրքույկը, որտեղ աչքի
են զարնում կրկնողությունները, անհարկի օրինակները, մակերեսային դատո-
ղությունները ու փնթի ձևակերպումները: Այս կարգի պակասավորություններ
կան բազմաթիվ հրատարակություններում:

Հրատարակչությունը քիչ է հոգում քաղաքականության և սոցիոլոգիայի,
պատմության և փիլիսոփայության տակավին չմշակված պրոբլեմներին նվիրված
տեղական հեղինակների աշխատությունները հրատարակելու մասին: Դեռևս
լույս են տեսնում այդ բնագավառներին վերաբերող, արդեն բազմիցս կրկնը-
ված թեմաներով գրքեր, որոնք հանրահայտ ճշմարտություններ ծամծմելով վա-
նում են ընթերցողներին: Դա նշանակում է չհարգել ընթերցողին, անտեսել նրա
հակումները: Այդպիսի գրքերը բնականաբար տարիներով մնում են պահեստ-
ներում, ֆինանսական և բարոյական վնաս հասցնելով հրատարակչությանը:

Մյուս կողմից, հրատարակչությունը թերանում է այնպիսի պրոբլեմների
շուրջ գրքեր ստեղծելու հարցում, որոնց նկատմամբ խիստ աճել է ընթերցող-
ների պահանջարկը: Մեր խոսքը մեծարժեք պատմագիտական, գիտության ներ-
կա մակարդակից ելնող հիմնավոր հետազոտությունների մասին է: Մեզ պակա-
սում են սովետական էկոնոմիկայի հիմնական պրոցեսների ու օրինաչափություն-
ների խոր և կոնկրետ հետազոտություններ, որոնք բացահայտելով երկրի զար-
գացման վերընթաց տենդենցը, միաժամանակ նշեն տեղ գտած անհամաչափու-
թյունների բուն պատճառները: Ընթերցողները հաճույքով կկարդան ՍՍՌՄ ժո-
ղովուրդների և հայ ժողովրդի պատմության հանգուցային հարցերին նվիրված
լուրջ հետազոտությունները, որոնք, սակայն, տոգորված լինեն մարքսիստական
աշխարհայեցողությամբ, գրված գիտնականին վայել վարպետությամբ ու կուլ-
տուրայով: Գրական ձիրքն անհրաժեշտ է ոչ միայն արվեստի, այլև գիտության
ներկայացուցչին: Լեզվական և մտավոր աղքատիկ ատաղձով հրատարակված
գրքերը մնում են գրապահեստներում, չնայած նրանց թեմայի կարևորությանը:
Լավ և ակտուալ թեմաները հաճախ վարկաբեկվում են շնորհազուրկ հեղինակ-
ների կողմից: Վեր է կասկածից, որ կոմունիզմ կառուցողը պետք է բազմակող-
մանիորեն իմանա իր հայրենիքի անցյալը: Նա պետք է լավ գիտենա պատմու-
թյունը և հասկանա այսօրվա մեր նվաճումների համար վճարված գինը: Այս տե-
սակետից հրատարակչության գործունեության առաջնահերթ խնդիրներից մեկը
չլուծված, չբացահայտված պրոբլեմների շուրջ գիտական և գաղափարական
բարձր մակարդակով գրականություն ստեղծելն է:

«Պրավդա»-ն (հուլիսի 27-ի իր առաջնորդող հոդվածում) մամուլի աշխա-
տողներից պահանջում է մեր գործունեության պրակտիկայից բացառել պարծեն-
կոտությունը, դատարկ խոստումները, չտարվել քաղաքական ճոռոմաբանու-
թյամբ: Մամուլը պետք է հանգիստ, գործարար տոն ունենա՝ ահա մեր պար-
տիայի Կենտկոմի օրգանի պահանջը: Այդ խիստ կարևոր հարցադրումը հավա-
սար չափով վերաբերում է քաղաքական, հասարակական, տնտեսական թեմա-
ներով մեզ մոտ հրատարակվող մասսայական գրականությանը: Կարելի է օրի-
նակներ բերել մի շարք գրքերից, որտեղ ամեն ինչ վարդագույն, պարադային
դիրքերից է ներկայացվում: Այնտեղ բացակայում է մեր երկրում կոմունիստա-



digitised by A.R.A.R.@

կան շինարարության խնդիրների, երևույթների պատշաճ վերլուծությունը, հարցերի տրամաբանական քննարկումը. դրա փոխարեն տիրապետող է վերամբարձ, փքուն տոնը, շաբլոն ֆրազներն ու էժան, քաղցր-մեղցր ոճը: Քաղաքական թեմաներով մասսայական բրոշյուրներ հրատարակելը հեշտ գործ չէ, եթե նրանց հրատարակիչներն իսկապես ուզում են ներգործել ընթերցողների լայն շրջանների վրա և ոչ թե նրանց վանել մեր կյանքի հրատապ խնդիրները ճիշտ ըմբռնելու, դրանց մեջ խորանալու անհրաժեշտությունից:

Լիարժեք և ակտուալ քաղաքական գրքի ստեղծումը լուրջ և շնորհակալ գործ է, որին պետք է նպատակամղվեն հրատարակչության ողջ կոլեկտիվի ջանքերը: Մինչդեռ քաղաքական գրականության լույս ընծայման հարցում երբեմն ոչ ճիշտ կողմնորոշումը և հոնարարային քաղաքականության սայթաքումները չեն նպաստում գործի բարելավմանը:

Թերություններ կան և գեղարվեստական գրականության հրատարակման գործում: Ճիշտ է, վերջին տարիներս սովետահայ ընթերցողի գրադարանը հարստացավ արդիական թեմաներով գրված բազմաթիվ երկերով, որոնց շարքում կարելի է հիշատակել Ս. Խանզադյանի «Կորած արահետներ» պատմվածքների ժողովածուն, Ս. Այվազյանի՝ «Բարի առավոտ», Ան. Սեկոյանի՝ «Գարունը ձյան տակ» և Շ. Թաթիկյանի՝ «Նրա ճանապարհը» վեպերը և այլն: Լույս տեսան Գ. Սարյանի, Հ. Սահյանի, Սարմենի, Վ. Դավթյանի, Հ. Հովհաննիսյանի, Պ. Սևակի և այլոց բանաստեղծությունների արժեքավոր ժողովածուները: Սակայն այս ամեն դրականի հետ միասին պետք է ասել, որ գեղարվեստական գրականության խմբագրությունը ոչ միշտ է հետևողական ձեռագրերի ընտրության գործում. երբեմն չափազանց երկչոտ է գեղարվեստական և գաղափարական տեսակետից ցածրորակ ձեռագրերը մերժելու հարցում:

Մի շարք գործերի, առանձնապես ընթերցող հասարակայնությանն անծանոթ հեղինակների միջակ բանաստեղծությունների ժողովածուների հրատարակությունը վկայում է, որ գեղարվեստական բաժնի մուտքը, ինչպես ասում են, շատ ազատ է, գրականությունը հեշտանված բան է թվում և ամեն մի գրագետ մարդ իրեն գրող է երևակայում ու ձգտում ինչ գնով էլ լինի ասպարեզ մտնել: Ինչ խոսք, լավ գրքեր կարող են հայտնվել բնավ էլ ոչ պրոֆեսիոնալ գրիչների ձեռքով: Բայց չի կարելի թույլ տալ, որ այդ ազատությունը վերածվի բոլոր չափանիշները ոտնահարող հասարակացման: Մինչդեռ մեզանում վերջերս ստեղծվել է գրագետների մի խավ, որն իր պարապությունը փարատում է գրական ասպարեզ մտնելու «դյուրագայթ» ձգտումով՝ հուշեր է գրում, որոնք ոչ միայն ճանաչողական արժեք չունեն, այլև հեռու են գրական ամենաչափավոր շնորհքից, վեպեր են շարադրում՝ առանց ժանրի տարրական օրենքներն իմանալու: Կշտամբանքի է արժանի գեղարվեստական գրականության բաժնի կողմից պատմվածքների և բանաստեղծությունների ժողովածուների անհարկի վերահրատարակման պրակտիկան, մանավանդ, երբ հաշվի չի առնվում դրանց նկատմամբ պահանջարկի բացակայությունը: Այս տեսակետից ճիշտ չի կարելի համարել նաև գրականագիտական տպագրված և չտպագրված, այսօրվա պահանջներին ոչ միշտ համապատասխանող հոդվածների ժողովածուների հրատարակությամբ տարվելը, պիեսների հաստափոր հավաքածուների լույս ընծայումն այն դեպքում, երբ մեր թատրոնների ռեպերտուարում այդ պիեսները հազվագյուտ են տեղ գտնում:

Այդ կարգի թերություններ են նկատվում նաև դասական գրողների երկերի հրատարակության կամ վերահրատարակության գործում: Այստեղ նույնպես կան



պատահական ընտրության, կանխակալ մոտեցման, պահանջը հաշվի չառնելու և այլ երևույթներ:

ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը մի շարք թերություններ արձանագրեց նաև գյուղատնտեսական և արտադրա-տեխնիկական գրականության խմբագրությունների գծով, երբ վերջիններս տարվում են նեղ մասնագիտական հարցերով, մոռանալով մասսայական ընթերցողին արդյունաբերության և գյուղատնտեսության բնագավառների հրատապ հարցերի շուրջը գրականություն տրամադրելու, առաջավոր փորձը տարածելու իրենց դերը:

Թարգմանական գրականության բնագավառում ևս առկա են տարբերյնության փաստեր: Առհասարակ թարգմանությունների կազմակերպումը կարոտ է լուրջ բարելավման: Հրատարակչությունը տակավին քիչ ուշադրություն է նվիրում ինքնուրույն մասսայական հրատարակությունների՝ նկարազարդ ալբոմների, բուկլետների, ուղեցույցների և այլնի ստեղծմանը, որը կօգնի ավելի լավ պրոպագանդելու մեր ռեսպուբլիկայի տնտեսության և կուլտուրայի ասպարեզներում ձեռք բերված նվաճումները, դրանց հաղորդակից կդարձնի ոչ միայն մեր աշխատավորներին, այլև նրանց հայրենի հյուրերին ու բարեկամներին:

«Հայաստան» հրատարակչության դիրեկցիան և պարտիական կազմակերպությունը բավարար հետևողականությամբ չեն զբաղվում կոլեկտիվի աշխատանքային կարգապահությունը և պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու, աշխատողներին քաղաքական և տեսական գիտելիքներով զինելու հարցերով, միշտ չէ, որ պահանջկոտ են նրանց նկատմամբ:

Շատ ջանքեր պետք է գործադրել գրքի պրոպագանդայի և տարածման գործը բարելավելու նպատակով: Հիրավի, այս բնագավառում դեռևս կան չլուծված հարցեր: Նպաստել այն բանին, որպեսզի գիրքը հասնի մասսաներին, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, իրական դառնա նրա «հսկայական ուժը» կամ, որպեսզի ընթերցողը հեշտությամբ գտնի լեռ գրականության մեջ իրեն հետաքրքրող գիրքը՝ ահա այն կարևոր խնդիրներից մեկը, որին պետք է նպատակամղվեն գրքի ստեղծման, առևտրի և տարածման գործով զբաղված մարդկանց ջանքերը:

Մարդիկ հեշտությամբ են իմանում ռադիո և հեռուստատեսային հաղորդումների ծրագրերի, թատրոնների և կինոների ռեպերտուարների մասին: Բավական է միայն հետևել օրվա թերթերին: Նույնը չի կարելի ասել հրատարակվող գրականության վերաբերյալ: Գրքի պրոպագանդայի հայտնի ձևերը՝ գրախոսություն և քննադատական հոդվածներ, գրքերի ցուցահանդեսներ ու քննարկումներ և այլն, ցավոք, մեզ մոտ բավարար չափով չեն նպաստում գրքի տարածմանը: Պարբերական մամուլում այդ գործը չի կրում նպատակասլաց և սիստեմատիկ բնույթ: Էլ չենք խոսում այն մասին, որ երբեմն գրախոսականները ապակողմնորոշում են ընթերցողին: Հազվագյուտ գրախոսականներն ու անոտացիաները տակավին սահմանափակ գրքեր են ընդգրկում, ընթերցողին չեն ներկայացնում այն մեծ գրականությունը, որն ստեղծվում է ոչ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև միութենական հրատարակչությունների կողմից:

Բավական է ասել, որ 1964 թվականին Սովետական Միությունում լույս է տեսել 78 հազար անուն գիրք, այդ թվում մեր ռեսպուբլիկայում՝ մոտ 450 անուն գիրք: Հայ ընթերցողին ժամանակին իրազեկ պահել թեկուզ և այդ գրքերի հիմնական մասի վերաբերյալ, ակտիվորեն նպաստել նրա տարածմանը՝ առաջնահերթ խնդիր է:



digitised by A.R.A.R.@

Իսկ ինչ վերաբերում է նոր գրքերի կատալոգներին, հանձնարարական բիբլիոգրաֆիաների, գրավաճառ կազմակերպությունների միջոցով ընթերցողին այս կամ այն նոր հրատարակությանը իրազեկ պահելու բազմազան ձևերին, ապա այստեղ անելիքները շատ են: ՀԿՊ Կենտկոմի որոշման մեջ հատկապես շեշտված է գրքի պրոպագանդայի և ռեկլամի նոր ձևերի կիրառման, ընթերցողի մոտ նոր գիրքը նկատելու ճաշակ զարգացնելու անհրաժեշտությունը: Այսուհետև մամուլի պետական կոմիտեն պետք է միջոցներ ձեռք առնի արմատապես բարելավելու գրքերի կատալոգների, հանձնարարական-բիբլիոգրաֆիաների ստեղծման, ընդհանրապես ռեկլամի բազմազան ձևերի կիրառման գործը: Ռեսպուբլիկայի մամուլի օրգանները, ռադիոյի և հեռուստատեսության պետական կոմիտեն ավելի մեծ ուշադրություն պետք է հատկացնեն գրքի պրոպագանդային, ավելի շատ տեղ տան գրախոսությանն ու բիբլիոգրաֆիային, լայն ինֆորմացիա հաղորդեն նոր գրականության մասին:

Մամուլի կոմիտեն, նրա պոլիգրաֆիական արդյունաբերության վարչությունը կոչված են պատշաճ ուշադրություն դարձնելու գրքի ձևավորման, պոլիգրաֆիական կատարման բարելավման հարցերին: Չէ՛ որ այս բնագավառում իրոք քիչ բանով կարող ենք հպարտանալ: Գրքի հրատարակման որակի հարցում մենք տակավին ետ ենք մնում սովետական և արտասահմանյան լավագույն նմուշներից: Սովետական ընթերցողն այժմ պահանջում է ճաշակով ձևավորված, արտաքնապես գրավիչ, տպագրական տեսակետից կատարյալ գրքեր: Պոլիգրաֆիական գործը վարող մեր ռեսպուբլիկական մարմինները պետք է մաքսիմում հնարամտություն և պահանջկոտություն ցուցաբերեն բարձրացնելու գրքի պոլիգրաֆիական որակը:

ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը պարտավորեցրեց ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի կոմիտեին (նախագահ ընկ. Հ. Մարտիրոսյան), «Հայաստան» հրատարակչությանը (դիրեկտոր ընկ. Կ. Վարդանյան) ձեռք առնել բոլոր անհրաժեշտ միջոցները հրատարակչության գործունեության թերությունները վերացնելու, լույս տեսնող գրականության գաղափարական և գիտական մակարդակը բարելավելու համար: «Հայաստան» հրատարակչությունը պետք է հրատարակի այնպիսի գրքեր, որոնք լիովին բխում են կոմունիստական պարտիայի գաղափարական աշխատանքի խնդիրներից, ծառայում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում աշխատավորների ջանքերի մոբիլիզացմանը: Հրատարակչությունը պետք է նպաստի սովետահայ գրականության հետագա հարստացմանն ու զարգացմանը, հայ ընթերցողին հաղորդակից դարձնի սովետական և համաշխարհային գեղարվեստական գրականության գոհարներին, գիտա-տեխնիկական մտքի նվաճումներին:

Որոշման մեջ խնդիր է դրված լուրջ ուշադրություն նվիրել քաղաքական թեմաներով բարձրորակ գրքեր ստեղծելու գործին, ուժեղացնել պահանջկոտությունը նրանց գաղափարական-գիտական մակարդակի նկատմամբ, հրատարակչության խմբագրությունները ամրապնդել մասնագետ և կարող ուժերով:

Անտարակույս, «Հայաստան» հրատարակչության գործունեության մասին ՀԿՊ Կենտկոմի ընդունած նոր որոշումը կխթանի մեր ռեսպուբլիկայում գրքի հրատարակման և տարածման գործի արմատապես բարելավմանը:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՅԻՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ՆՈՐ ԿԱՐԳԸ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ

Մ. ԱԴՈՆՑ
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Սոցիալիստական արտադրողական ուժերի զարգացման հետ միասին փոխվում ու կատարելագործվում են ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման ձևերն ու եղանակները: Սոցիալիստական հասարակության զարգացման նոր պայմաններում անհրաժեշտ է դառնում վերանայելու նախկինում իրենց արդարացրած պլանավորման մեթոդները և կիրառելու ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման նոր ձևեր:

Վերջին տարիներս Եվրոպայի սոցիալիստական երկրներում լայնորեն քննարկվեցին սոցիալիստական պլանավորման հետագա կատարելագործման հարցերը: Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիայի XII համագումարը, որը տեղի ունեցավ 1962 թվականի հունվարին, խնդիր դրեց, ելնելով երկրի կոնկրետ պայմաններից, ժողովրդական տնտեսության ինտենսիֆիկացման համար մշակելու պլանավորման ու տնտեսական կառավարման նոր կարգ:

ՉԿՊ Կենտրոնական Կոմիտեն տնտեսագետ-գիտնականների, տնտեսական ղեկավար աշխատողների և մասնագետների մասնակցությամբ նախագիծ կազմեց ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման նոր կարգի մասին, որը լայն քննարկման ենթարկվեց ժողովներում և մամուլի էջերում:

ՉԿՊ Կենտկոմի հունվարյան պլենումը (1965 թ.) ծավալուն որոշում ընդունեց ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման կատարելագործման գլխավոր ուղղությունների մասին: Հունվարյան պլենումի որոշմամբ պլանավորման նոր կարգի սկզբունքները Չեխոսլովակիայի ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերում աստիճանաբար պետք է կիրառվեն 1966 թվականի սկզբից:

Կապիտալիստական աշխարհի մամուլը դիտավորյալ կերպով աղավաղում է Չեխոսլովակիայում և Եվրոպայի մյուս սոցիալիստական երկրներում պլա-



digitised by A.R.A.R.@

նավորման կատարելագործման գծով անցկացվող ձեռնարկումների իսկական իմաստը: Կապիտալիստական երկրների ռեակցիոն մամուլը ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման կատարելագործման հարցերի շուրջը ծավալված վիճաբանությունները գնահատում է որպես սոցիալիստական պլանավորման պրակտիկայի ճգնաժամ, ձգտում՝ վերադառնալու կապիտալիստական ազատ մրցակցության սկզբունքների կիրառմանը: Նրանք չեն հասկանում, որ սոցիալիստական հասարակարգում, որտեղ ոչնչացված է կապիտալիստական շահագործումը, ամբողջովին բացակայում են կապիտալիզմի տնտեսական օրենքների գործողության պայմանները:

Իրականում անցկացվող ձեռնարկումների նպատակը ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման ուժեղացման ու կատարելագործման միջոցով սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացումն է:

## ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Գոյություն ունեցող պլանավորման կարգն ունի մի շարք էական թերություններ: Ամենագլխավոր թերությունը կայանում է նրանում, որ հաճախ ձեռնարկությունների աշխատանքների գնահատման գործում վճռական դեր են կատարում սուբյեկտիվ գործոնները, գրեթե բացակայում են նրանց գործունեության արդյունքները որոշող օբյեկտիվ տնտեսական չափանիշները: Պետական պլանը մինչև այժմ գերազանցապես խթանել է ժողովրդական տնտեսության էքստենսիվ զարգացմանը, արտադրության քանակային ցուցանիշների բարելավմանը: Ձեռնարկությունների գործունեությունը գնահատվել է պլանի կատարման ցուցանիշներով: Վերադաս մարմինները պլանները հաստատելիս հաշվի են առել ձեռնարկության տեխնիկական մակարդակը, կադրերի որակավորման աստիճանը, նրա արտադրական տնտեսական գործունեության հաշվետու տարվա ցուցանիշները և այլն: Ելնելով այդ բոլորից, առաջավոր ձեռնարկությունների համար սահմանվել են բարձր պլանային ցուցանիշներ, իսկ թույլ ձեռնարկությունների համար՝ ցածր ցուցանիշներ, որի հետևանքով հաճախ վերջինները գերակատարել են պլանները և արժանացել պարգևատրման, իսկ առաջինները դժվարությամբ են կատարել պլանային առաջադրանքները: Ձեռնարկությունների գործունեության գնահատման այդպիսի կարգը չի նպաստել տեխնիկական առաջադիմությանը և արհեստականորեն որոշ հակասություններ է առաջացրել ամբողջ հասարակության և առանձին ձեռնարկությունների տնտեսական շահերի միջև: Առանձին ձեռնարկություններ հաճախ ձգտել են ցածր պլան ստանալ, որպեսզի այն հեշտությամբ կատարեն և հոգ չեն տարել տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ու գոյություն ունեցող ռեզերվների լրիվ օգտագործման մասին:

Բոլոր դեպքերում չէ, որ ձեռնարկությանը ձեռնտու է բարելավելու արտադրանքի ասորտիմենտը, թողարկելու նոր տեսակի, բարձր արտադրողականությամբ մեքենաներ ու սարքավորումներ: Եթե նոր տեսակի արտադրանքը, կամ կատարելագործված մեքենան ավելի աշխատատար է և նրա թողարկումը կարող է բացասական ազդեցություն ունենալ համախառն արտադրանքի և աշխա-



տանքի արտադրողականության պլանների կատարման վրա, ապա այդ դեպքում ձեռնարկությունը գերադասում է շարունակել արտադրանքի հին տեսակների թողարկումը, եթե նույնիսկ նրանց կարիքը հասարակությունն այլևս չի զգում: Այդպիսի դեպքերում պլանի կատարումը դառնում է ինքնանպատակ. ձեռնարկությունը պլանները կատարում ու գերակատարում է, իսկ նրա արտադրանքը չի վաճառվում, կամ թողարկում է այնպիսի հնացած մեքենաներ, որոնք չեն ապահովում հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը:

Ձեռնարկությունների արտադրական տնտեսական գործունեությունը գնահատող ցուցանիշները՝ համախառն արտադրանքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման պլանային առաջադրանքները բոլորովին էլ չեն խթանում արտադրանքի որակի բարձրացմանը, ընդհակառակը, որոշ դեպքերում այդ ցուցանիշների կատարումն ու գերակատարումը ապահովվում է որակի իջեցման հաշվին: Այդ բոլորից երևում է, որ պլանավորման և ձեռնարկությունների գործունեության գնահատման գոյություն ունեցող կարգը բոլոր դեպքերում չէ, որ խթանել է ժողովրդական տնտեսության ինտենսիվ զարգացմանը, սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացման անսպառ հնարավորությունների լրիվ օգտագործմանը:

Պլանավորման գործող կարգի գլխավոր թերություններից մեկն էլ նրա խիստ կենտրոնացումն է:

Մինչև վերջերս Չեխոսլովակիայում ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանները կազմվել են կենտրոնական պլանային մարմինների կողմից, որոնք մինիստրությունների միջոցով հասցվել են ձեռնարկություններին, որպես դիրեկտիվ ցուցանիշներ, որոնց կատարումը պարտադիր բնույթ ունի: Փորձը ցույց է տվել, որ կենտրոնական պլանային մարմինների կողմից իջեցված դիրեկտիվ ցուցանիշները չեն կարող ընդգրկել ձեռնարկությունների գործունեության բոլոր կողմերը. մեկ ընդհանուր կենտրոնից հնարավոր չէ ճիշտ որոշել տասնյակ հազարավոր ձեռնարկությունների արտադրանքի ասորտիմենտը, որակական ցուցանիշների սահմանները և այլն: Բազմաթիվ դիրեկտիվ ցուցանիշների իջեցումը խեղդում է ձեռնարկությունների նախաձեռնությունը, թույլ չի տալիս, որպեսզի նրանք նպատակահարմար և արդյունավետ ձևով օգտագործեն իրենց միջոցները:

Պետական պլանը պետք է որոշի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական խնդիրներն ու ուղղությունները, սահմանի բնակչության կենսամակարդակի բարձրացման չափերը և ցույց տա այդ խնդիրների իրականացման միջոցները: Կենտրոնական պլանավորող մարմինները պետական պլանի միջոցով պետք է սահմանեն ժողովրդատնտեսական ճիշտ համամասնություններ և ապահովեն կառուցվածքային անհրաժեշտ տեղաշարժեր:

ՉԿՊ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումներում նշված է, որ կենտրոնական պլանավորող մարմիններն առաջին հերթին պետք է մշակեն ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման հարցերը և պլանավորեն կապիտալ ներդրումների չափերն ու ուղղությունները:

Ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմները տարեկան պլանները լուծել չեն կարող: Միայն հեռանկարային պլանների միջոցով կարելի է լուծել այնպիսի խնդիրներ, ինչպիսիք են ժողովրդական տնտեսության կառուցվածքային փոփոխությունները (երկրի ինդուստրացումը, քիմիայի դերի բարձրացումը,



digitised by A.R.A.R.@

վառելիքի հաշվեկշռում ավելի արդյունավետ տեսակների տեսակարար կշռի բարձրացումը), որակյալ կադրերի պատրաստումը և այլն։ Կապիտալ ներդրումները, որոնք վճռական դեր ունեն ժողովրդական տնտեսության կառուցվածքային փոփոխությունների գործում, իրենց արդյունքները տալիս են միայն մի քանի տարիներից հետո, այդ պատճառով էլ նրանց ծավալի և ուղղության հարցերը առաջին հերթին պատշաճ հիմնավորում պետք է ստանան հեռանկարային պլաններում։

Չեխոսլովակիայում նախատեսվում է կազմել երեք տեսակի հեռանկարային պլաններ՝ պլան պրոգնոզ՝ 25—30 տարվա համար, բազմամյա հեռանկարային պլան՝ 10—15 տարվա համար և հնգամյա պլան։

Պլան-պրոգնոզում ցույց է տրվում, թե ինչ տենդենց պետք է ունենա ժողովրդական տնտեսության զարգացումը հեռավոր հեռանկարում։ Այդ պլանում բացակայում են ժողովրդատնտեսական հաշվեկշիռները և մշակվում են արտադրության գլխավոր ճյուղերի զարգացման և տնտեսական կոմպլեքսների հարցերը։

Բազմամյա հեռանկարային պլանում ավելի կոնկրետ ձևով են մշակվում ժողովրդական տնտեսության զարգացման հարցերը։ Այդ պլանը կազմելիս հաշվի է առնվում հայրենական և համաշխարհային տեխնիկայի զարգացման հեռանկարները, տրվում է տեխնիկական և գիտական նոր և կարևոր հայտնագործությունների տնտեսական գնահատականը, համեմատվում են ժողովրդական տնտեսության կառուցվածքային փոփոխությունների ալտերնատիվ վարիանտները, մշակվում է ժողովրդական տնտեսության այնպիսի պրոբլեմներ, որոնց իրականացումը պահանջում է երկարատև ժամանակ՝ արտադրողական ուժերի տեղաբաշխման, տրանսպորտի կոմպլեքսային զարգացման, արտադրության ճյուղային կառուցվածքի փոփոխման հարցերը և այլն։

Ելակետ ունենալով բազմամյա հեռանկարային պլանի առաջ քաշած հիմնական խնդիրները, կազմվում է հնգամյա պլանը, որն ընդգրկում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Հնգամյա պլանի նպատակը հասարակության պահանջմունքների հնարավոր լրիվ բավարարումն է՝ նյութական և աշխատանքային միջոցների առավել արդյունավետ օգտագործման միջոցով։ Հնգամյա պլանում արտացոլում են գտնում առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի օգտագործման, արտադրության մասնագիտացման ու ինտենսիվացման, աշխատանքի միջազգային բաժանման հարցերը և այլն։ Հնգամյա պլանի կարևոր բաղադրիչ մասն է կազմում ժողովրդատնտեսական հաշվեկշիռները։ Այդ պլանը կազմվում է նախորդ հնգամյակի կեսերին, իսկ հետագայում, ելնելով հաշվետու տվյալներից, ճշտվում է։

Հեռանկարային պլաններից բացի գոյություն ունեն օպերատիվ պլաններ, որոնք կազմում են ձեռնարկությունները՝ մեկ տարվա համար։ Կապիտալ ներդրումների և արտահանման համար թողարկվող սարքավորումների օպերատիվ պլանները կազմվում են երկու տարվա համար։ Օպերատիվ պլանները կազմըվում են հնգամյակի դիրեկտիվների հիման վրա, նրա ցուցանիշները օպերատիվ պլաններում յուրաքանչյուր տարի ճշտվում են, սակայն հնգամյա պլանի տնտեսական-տեխնիկական հիմնական սկզբունքները կայուն են մնում։

Ձեռնարկությունների կազմած օպերատիվ պլանները ճյուղային դիրեկցիաները ճշտում և ներկայացնում են միութենական պլանավորող մարմիններին, իսկ վերջիններս ստուգում են նրա հաշվեկշռային կապակցությունները, հատկապես պետական բյուջեի և վարկային պլանի հետ ունեցած կապերը և այդ բոլորից հետո կազմում ժողովրդատնտեսական տարեկան պետական պլանը։

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԼԾԱԿՆԵՐԻ ԴԵՐԸ

Պլանավորման նոր կարգի գլխավոր իմաստը Չեխոսլովակիայում տնտեսական լծակների (գին, համախառն և զուտ եկամուտ, վարկ, տոկոս և այլն) լայն ու գիտակցված օգտագործումն է։ Պլանի կատարման գործում ետին գծի վրա են մղվում վարչական գործոնները և առավել առաջնակարգ նշանակություն են ստանում տնտեսական գործոնները։ Տնտեսական լծակները և տնտեսական օրենքները դառնում են պետական պլանի և նրա գլխավոր համամասնությունների կենսագործման հիմնական միջոցները։

Պլանավորման նոր կարգի պայմաններում վերադաս մարմինները ձեռնարկությունների համար արտադրանքի թողարկման առաջադրանքներ չեն սահմանելու։ Ձեռնարկություններին չեն իջեցվելու նաև աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման, աշխատողների թվաքանակի, աշխատավարձի ֆոնդի պլաններ։

Վերադաս պլանային մարմինները կազմելու են ընդհանուր հնգամյա և տարեկան պետական պլաններ, իսկ առանձին ձեռնարկությունների համար մշակելու են միասնական տնտեսական կանոններ, որոնց կատարումը պարտադիր է։ Այդ տնտեսական կանոններն այնպես պետք է կազմվեն, որ ձեռնարկությունները նյութապես շահագրգռված լինեն հարմարվելու պետական ընդհանուր պլանի համամասնություններին և արդյունավետ ձևով բավարարելու հասարակության պահանջները։

Ժողովրդատնտեսական օպտիմալ համամասնությունները պահպանելու նպատակով տնտեսական լծակների հետ միասին օգտագործվելու են նաև դիրեկտիվ ցուցանիշներ, որոնք համընդհանուր բնույթ չեն ունենալու և ծառայելու են առանձին կարևոր խնդիրների լուծման նպատակին։ Դիրեկտիվ առաջադրանքներ են սահմանվելու մեքենաշինության կարևոր ճյուղերի համար, արտահանման համար նախատեսված արտադրանքի համար, դեֆիցիտային նյութերի համար և այլն։ Դիրեկտիվ առաջադրանքներ են սահմանվելու նաև արտաքին առևտրի, կենտրոնացված կապիտալ ներդրումների համար, որակյալ կադրերի պատրաստման, գիտության ու տեխնիկայի զարգացման գծով։ Դիրեկտիվ առաջադրանքները բոլոր դեպքերում սահմանվելու են լիմիտների ձևով։ Օրինակ. դեֆիցիտային նյութերի օգտագործման գծով սահմանվելու են նվազագույն լիմիտներ, որից պակաս արտադրել չի թույլատրվում, իսկ ավելի՝ թույլատրվում է։ Դեֆիցիտային նյութերի օգտագործման, ինչպես նաև աշխատողների թվաքանակի գծով սահմանվելու են առավելագույն լիմիտներ։ Դիրեկտիվ ցուցանիշների դերը գնալով նվազելու է։ Հնգամյա և օպերատիվ պլանները բացի դիրեկտիվ առաջադրանքներից ունենալու են նաև մի շարք օրիենտիր ցուցանիշներ, որոնք ձեռնարկությունների համար պարտադիր չեն լինելու, բայց օպերատիվ պլաններ կազմելու ժամանակ նրանց որոշ կողմնորոշում են տալու։ Կենտրոնական պլանավորող մարմինները պարտավոր են տնտեսական լծակների միջոցով ձեռնարկություններին շահագրգռել՝ օրիենտիր ցուցանիշները կատարելու համար։





digitised by A.R.A.R.@

Պլանավորման նոր սիստեմի կարևոր տնտեսական գործոններից մեկը գինն է։ Գինը պետք է դառնա այն տնտեսական լծակը, որը պետք է ազդի թե արտադրողների վրա, հարկադրելով նրանց հարմարվելու հասարակական սպառման պահանջներին՝ արտադրվող ապրանքների քանակի, որակի և ասորտիմենտի տեսակետից, և թե սպառման ծավալի և կառուցվածքի վրա, որով համապատասխանություն կստեղծի արտադրանքի ծավալի և սպառման ընդհանուր պահանջների միջև։ Այլ կերպ ասած, գինը պետք է արտացոլի արտադրության և սպառման միջև եղած հարաբերությունները։ Գինը պետք է խթանի արտադրության արդյունավետ ճյուղերի առավել զարգացմանը, արտադրանքի որակի բարձրացմանը և բարձր արտադրողական մեքենաների և սարքավորումների արտադրության արագ ընդլայնմանը։ Սակայն ներկայումս գործող գները չեն կարող կատարել տնտեսական լծակի վերևում նշված ակտիվ դերը։ Գործող գները խոշոր չափերով շեղվում են արժեքից, որը տնտեսապես հիմնավորված չէ։ Գործող գները արտադրության որոշ ճյուղերում չափազանց բարձր շահույթներ են ապահովում և ընդհակառակը, արտադրության որոշ ճյուղեր էլ աշխատում են վնասով։ Քանի որ գործող գները չեն համապատասխանում հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումներին, այդ պատճառով էլ նրանց հիման վրա հնարավոր չէ ճիշտ հաշվարկել այս կամ այն արտադրության տնտեսական արդյունավետությունը։

Գործող տարբեր տեսակի գներն իրար հետ կապված չեն, շատ դեպքերում մանրածախ գները փոփոխվում են, իսկ ձեռնարկության մեծածախ գները մնում են անփոփոխ։ Դրա հետևանքով էլ սպառողն արտադրողի վրա ոչ մի ազդեցություն չի գործում։ Այդ բոլորից բացի, գները սահմանելիս հաշվի չեն առնվում համաշխարհային շուկայի գները, այդ պատճառով էլ հնարավոր չի դառնում ճշտորեն որոշելու արտահանման և ներմուծման տնտեսական արդյունավետությունը։

Այդ բոլորը խոսում են այն մասին, որ պլանավորման նոր կարգին անցնելու և տնտեսական լծակների դերը բարձրացնելու համար առաջին հերթին պետք է անցկացնել գների ռեֆորմ։

Նոր գները սահմանելիս պետք է հաշվի առնել հասարակայնորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները, պահանջարկի և առաջարկի հարաբերակցությունները, ապրանքի սպառողական հատկությունները, համաշխարհային շուկայի գները։ Տեխնիկական պրոգրեսիվ արտադրանքի տեսակների համար պետք է սահմանել արտոնյալ գներ։

Չեխոսլովակիայի տնտեսագետների մեծամասնությունն առաջարկում է գները պլանավորել արտադրության գնի սկզբունքով։ Նրանք գտնում են, որ արտադրության յուրաքանչյուր ճյուղի արտադրանքի իրացումից ստացված գումարի և նրա նյութական ծախսումների ու աշխատավարձի վճարման, ինչպես և արտադրության ընդլայնման համար պահանջվող ծախսումների միջև համապատասխանություն պետք է գոյություն ունենա։ Արտադրանքի իրացումից յուրաքանչյուր ձեռնարկության ստացած համախառն եկամուտը պետք է համապատասխանի այն ավանդին, որ նա մուծել է հասարակական ընդհանուր ֆոնդը։

Գները, որպեսզի ակտիվ դեր ունենան տնտեսական կյանքում, նրանք պետք է կայուն և միաժամանակ ճկուն լինեն։ Կայուն լինեն այն իմաստով, որ պետական մարմինները գները հաճախակի չփոխեն, իսկ նրանց ճկունությունը պետք



է արտահայտվի նրանում, որ արտադրողների և գնողների փոխադարձ համաձայնությամբ որոշ սահմաններում գները բարձրացվեն կամ իջեցվեն։

Պլանավորման նոր կարգը Չեխոսլովակիայում նախատեսում է հետևյալ տեսակի գների գոյությունը.

ա) կայուն գներ, բ) լիմիտային գներ, գ) ազատ գներ։

Կայուն գներ սահմանվում են արտադրության այն կարևոր տեսակների համար, որոնց նկատմամբ եղած պահանջարկն ու առաջարկը մեծ փոփոխությունների չեն ենթարկվում։ Կայուն գներ են սահմանվում նաև սպառման առարկաների այն տեսակների համար, որոնք ընտանիքի բյուջեում մեծ տեսակարար կշիռ ունեն։ Կայուն գները հաստատում են և իրավասու են փոխելու միայն պետական վերադաս մարմինները։

Լիմիտային գները ևս սահմանվում են կենտրոնական կառավարական մարմինների կողմից։ Նախատեսվում են լիմիտային գների տատանումները սահմանափակել հետևյալ եղանակներով. առավելագույն լիմիտների օգնությամբ, երբ գների խիստ բարձրացումը արգելակելու համար որոշվում է նրանց մաքսիմալ սահմանը, նվազագույն լիմիտներ, երբ տնտեսական կազմակերպություններին կայուն եկամուտներով ապահովելու նպատակով որոշվում է գների մինիմալ սահմանը և երկկողմանի լիմիտներ, երբ որոշվում են գների մաքսիմալ և մինիմալ սահմանները։ Երկկողմանի լիմիտներ գերազանցապես սահմանվում են այնպիսի ապրանքների համար, որոնց նկատմամբ եղած պահանջարկն ու առաջարկը տարվա տարբեր սեզոններում փոփոխվում են։

Գների բարձրացումը կամ իջեցումը ցույց տրված սահմաններում կատարվում է արտադրողների և գնորդների փոխադարձ համաձայնությամբ։

Ազատ գներ են գոյություն ունենալու ոչ առաջնակարգ կենսական նշանակություն ունեցող ժողովրդական սպառման առարկաների համար և արտադրության այն ճյուղերում, որտեղ ազատ մրցությունը չի հանգեցնի գների սպեկուլյատիվ բարձրացմանը։ Մասնավորապես ազատ գներ են կիրառվելու տեղական արդյունաբերության արտադրանքի զգալի մասի, հատուկ պատվերներով թողարկվող արտադրանքի և նոր մոդայի ապրանքների, ինչպես նաև տեխնիկական պրոգրեսիվ բանվածքների նկատմամբ։

Գների այսպիսի սիստեմը խթանում է արտադրանքի որակի բարձրացմանը, ասորտիմենտի բարելավմանը և օժանդակում է արտադրության ու սպառման միջև ճիշտ համամասնությունների ստեղծմանը։

## ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Պլանավորման նոր կարգը և տնտեսական լծակների դերի բարձրացումը հիմնովին փոխում են նյութական շահագրգռվածության սիստեմը։

Պլանավորման նոր կարգը նյութական շահագրգռվածությունը խարսխում է ձեռնարկությունների արտադրական-տնտեսական ցուցանիշների վրա։ Նոր պայմաններում պլանային ցուցանիշների կատարումն այլևս չափանիշ չի կարող հանդիսանալ ձեռնարկությունների գործունեության գնահատման համար։ Ձեռնարկության արտադրական տնտեսական գործունեության գնահատումը պլանի կատարման տոկոսով, ջնջում է առաջավոր և հետամնաց ձեռնարկությունների միջև եղած տարբերությունները և հակասություններ ստեղծում նրանց նյութական ու բարոյական շահերի միջև։



digitised by A.R.A.R.@

Չեխոսլովակիայում ձեռնարկությունների նյութական շահագրգռվածության նոր սիստեմի հիմքում դրվում է համախառն եկամուտը։ Ձեռնարկության համախառն եկամուտը դա համախառն արտադրանքի և նյութական ծախսումների արժեքի տարբերությունն է (v+m)։

Տնտեսական նոր կանոնների համապատասխան Չեխոսլովակիայում համախառն եկամուտը բաշխվում է հետևյալ բաղադրամասերի,

ձեռնարկության արտադրանքի իրացումից ստացված համախառն հասույթից հանվում են. նյութական ծախսումները, ամորտիզացիան, արտադրության և իրացման այլ ծախքերը։

Այդ հանումներից հետո մնում է համախառն եկամուտը, որից կատարվում են հետևյալ ծախքերն ու վճարումները. մասհանումներ պետական բյուջեին, ստացված վարկերի տոկոսներ, տուգանքներ ու տույժեր (սալդո), կապիտալ ներդրումներ, մուծումներ տեխնիկական առաջադիմության ֆոնդին, սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների ծախսեր, մուծումներ ռեզերվային ֆոնդին։

Մնացած մասը կազմում է աշխատավորների ֆոնդը, որից ձեռնարկությունը վճարում է.

ա) ռոճիկներ, գործարքային աշխատավարձ և ժամանակավարձ,

բ) պարգևատրումներ և աշխատանքի անհատական այլ վճարումներ,

գ) ձեռնարկության տնտեսական գործունեության արդյունքներին համապատասխան վճարումներ։

Ինչքան որ շատ լինի ձեռնարկության համախառն եկամուտը, այնքան մեծ կլինի աշխատավորների ֆոնդը։ Նոր սիստեմի պայմաններում ձեռնարկությունը նյութականապես շահագրգռված է բարելավելու իր արտադրական-տնտեսական գործունեության բոլոր ցուցանիշները։ Համախառն եկամտի մեծացման համար ձեռնարկությունը պետք է ձգտի ավելացնելու թողարկվող արտադրանքի ծավալը, բարձրացնելու նրա որակը, որպեսզի ձեռնտու գներով վաճառի, ասորտիմենտը հարմարեցնելու շուկայի պահանջներին, որպեսզի արտադրանքը վաճառվի, կրճատելու հումքի և այլ նյութական ծախսումները։

Նյութական շահագրգռվածության նոր սիստեմը բարձրացնում է ձեռնարկության աշխատողների կոլեկտիվ պատասխանատվությունը՝ արտադրական ցուցանիշների բարելավման գործում։ Համախառն եկամտի աճը որոշվում է ոչ թե մեկ անհատի լավ աշխատանքով, այլ ամբողջ կոլեկտիվի համատեղ ջանքերով և եթե ձեռնարկության աշխատանքի ցուցանիշները լավ չեն, դրանից տուժում է նաև լավ աշխատողը, քանի որ նրա աշխատավարձի մեծությունը որոշվում է ոչ միայն իր անհատական աշխատանքի ցուցանիշներով, այլև ձեռնարկության համախառն եկամտի ծավալով։

Պետական բյուջեին կատարվող մասհանումները երկու տեսակի են՝ մասհանումներ համախառն եկամտից ընդհանուր միասնական նորմայով և մասհանումներ արտադրական ֆոնդերից։

Միասնական նորմայով բյուջեին համախառն եկամտից մասհանումներ կատարելու միջոցով պետությունը կարգավորում է աշխատավարձի մակարդակը։ Ինչպես նշեցինք, պլանավորման նոր կարգի պայմաններում ձեռնարկության համար աշխատավարձի ֆոնդի և արտադրական ու տեխնիկա-տնտեսական ցուցանիշների պլանային առաջադրանքներ չեն սահմանվում։ Համախառն եկամտից պետական բյուջեին մասհանումներ և այլ վճարումներ կա-



տարելուց հետո մնացած գումարը կազմում է աշխատավորների ֆոնդը, որի բաշխումը թողնվում է ձեռնարկության իրավասությանը։

Պետությունը ձեռնարկության համախառն եկամտից բյուջեին կատարվող մասհանումների չափերը սահմանելիս, ելնում է աշխատավարձի նորմալ մակարդակը պահպանելու սկզբունքից։ Իսկ քանի որ բոլոր ձեռնարկությունների համար սահմանվում է բյուջեին կատարվող մասհանումների միատեսակ և կայուն նորմա, այդ պատճառով էլ առաջավոր ձեռնարկությունների աշխատողների աշխատավարձի մակարդակը հասարակական միջինից բարձր է լինում, իսկ վատ աշխատող ձեռնարկությունների աշխատողների աշխատավարձի մակարդակը հասարակական միջինից ցածր է լինում։ Այսինքն յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքը վարձատրվում է ընդհանուր հասարակական ֆոնդին իր մուծած ավանդին համապատասխան։

Կենտրոնական կառավարական մարմինների կողմից հաստատված տնտեսական կանոնների համաձայն, Չեխոսլովակիայում 1966 թվականի սկզբից ամորտիզացիայից բացի հիմնական ֆոնդերի մնացորդային արժեքից ձեռնարկությունները պետական բյուջեին սահմանված նորմաներով մասհանումներ պետք է կատարեն։ Այդպիսի կարգի սահմանումը ձեռնարկություններին ստիպում է արդյունավետ ձևով օգտագործելու հիմնական արտադրական ֆոնդերը։ Քանի որ ձեռնարկությունները պետական բյուջեին մասհանումներ են կատարում նաև ոչ օգտագործվող հիմնական արտադրական ֆոնդերից, որը վերջին հաշվով բացասական ազդեցություն է ունենում աշխատավարձի մակարդակի վրա, այդ պատճառով էլ նրանք ձգտում են անգործության մատնված արտադրական ֆոնդերից ազատվել։

Ձեռնարկությունները համախառն եկամտից պետական բյուջեին մասհանումներ պետք է կատարեն նաև շրջանառու ֆոնդերի օգտագործման համար։ Բացի այդ մասհանումներից, նրանք փոխառու շրջանառու միջոցների համար բանկին վարկի տոկոսներ պետք է վճարեն։ Համախառն եկամտից պետական բյուջեին այդ վճարումները նվազեցնելու նպատակով ձեռնարկությունները տնտեսապես հարկադրված պետք է լինեն ազատվելու ավելորդ շրջանառու միջոցներից և բարելավելու նրանց օգտագործումը։

Ձեռնարկությունները նաև շահագրգռված են բարձրացնելու իրենց սեփական միջոցների, կամ բանկից վերցրած վարկի հաշվին կատարվող կապիտալ ներդրումների արդյունավետությունը, քանի որ դա ևս նպաստում է համախառն եկամտի ավելացմանը։

Ինչպես նշեցինք, ձեռնարկության համախառն եկամտից կատարվող մասհանումներից, տարբեր վճարումներից ու մուծումներից հետո մնացած գումարը կազմում է աշխատողների ֆոնդը։ Եթե պլանավորման նոր կարգով աշխատավարձի ֆոնդի պլան չի սահմանվում, ապա դա դեռ չի նշանակում, որ պետական հսկողությունից դուրս է մնում աշխատանքի վարձատրությունը և այն չի կարգավորում աշխատավարձի մակարդակը։ Պետությունը աշխատանքի վարձատրության վրա վերահսկողություն է սահմանում ուղղակի և անուղղակի տնտեսական լծակների միջոցով։

Աշխատանքի պետական կարգավորման ուղղակի տնտեսական լծակների թվին են պատկանում աշխատավարձի տարիֆային կարգը, աշխատավարձի ձևերն ու աշխատանքի նորմավորումը։

Ձեռնարկության ղեկավարությունն աշխատանքի վարձատրությունը կա-





digitised by A.R.A.R.@

տարում է պետական մարմինների և պրոֆմիութենական կազմակերպություններ կողմից մշակված ու հաստատված տարիֆային սիստեմով։ Այդպիսի պայմաններում աշխատավարձի հավասարեցում լինել չի կարող և կպահպանվի յուրաքանչյուրին ըստ կատարած աշխատանքի քանակի ու որակի վարձատրության սկզբունքը։ Աշխատավարձի ֆոնդի գերակշռող մասը օգտագործվելու է անհատական աշխատանքի վարձատրության համար (գործավարձով և ժամանակավարձով տրվող աշխատավարձն ու պարգևատրումները), իսկ կոլեկտիվ աշխատանքի վարձատրության ֆոնդը կազմելու է աշխատավարձի ընդհանուր ֆոնդի 15—20 տոկոսը։

Աշխատավարձի պետական կարգավորման անուղղակի տնտեսական լծակներ են հանդիսանում համախառն եկամտից կատարվող մասհանումների սիստեմը, գների քաղաքականությունը, ռեզերվային ֆոնդի և բանկային վարկի օգտագործման կանոնները, տուգանքները, տույժերը և այլն։

Ձեռնարկությունների աշխատավարձի ֆոնդի մեծությունը կարգավորող գլխավոր տնտեսական գործոնը համախառն եկամտից կատարվող մասհանումների սիստեմն է։ Ինչպես նշել ենք, այլ հավասար պայմաններում, համախառն եկամտի ընդհանուր ծավալում ինչքան որ մեծանա մասհանումների բաժինը, այնքան կփոքրանա աշխատավարձի ֆոնդը։ Եթե ձեռնարկության լավ աշխատանքի հետևանքով մեծացել են նրա եկամուտները, ապա դա հնարավոր է դարձնում ոչ միայն բարձրացնելու անհատական և կոլեկտիվ աշխատանքի վարձատրությունը, այլև ավելացնելու տարբեր ֆոնդերին և, առաջին հերթին, ռեզերվային ֆոնդին կատարվող մուծումները։

Ձեռնարկության աշխատանքի ցուցանիշները լավ չլինելու դեպքում աշխատավարձի ֆոնդը պակասում է, որը կարող է հանգեցնել աշխատողների աշխատավարձի իջեցմանը։ Սակայն աշխատավարձի իջեցումը ևս որոշ սահմաններ ունի։ Պետությունն իրեն պատկանող բոլոր ձեռնարկությունների աշխատողների համար երաշխավորում է աշխատավարձի որոշ մինիմումի ապահովում։

Ձեռնարկությունն աշխատավարձի ֆոնդի պակասը լրացնելու համար առաջին հերթին օգտագործում է ռեզերվային ֆոնդի միջոցները։ Իսկ եթե ռեզերվային ֆոնդը ևս չի ապահովում աշխատավարձի երաշխավորված մինիմումը, այդ դեպքում պետական բանկը վարկ է բաց թողնում ձեռնարկությանը աշխատավարձի ֆոնդի պակասը լրացնելու համար։

Աշխատավարձի կազմակերպման այդպիսի սիստեմը ուժեղացնում է աշխատողների նյութական պատասխանատվությունը և նրանց ստիպում է պայքարելու ձեռնարկության արտադրական ու տնտեսական ցուցանիշների բարելավման համար։



Կապիտալիզմի ջատագովների բարբաջանքներն այն մասին, որ եվրոպական սոցիալիստական երկրները ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման սկզբունքից նահանջ են կատարում դեպի կապիտալիստական ազատ մրցակցության սկզբունքը, զուրկ են որևէ հիմքից։

Պլանավորման նոր կարգը չի թուլացնում ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման սկզբունքները, ընդհակառակը, շտկում ու կատարելագործում է նրա մեթոդները։ Ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման գործում էլ ավելի է մեծանում տնտեսական լծակների և նյութական շահագրգռվածության դերը։ Արժեքային կատեգորիաները և տնտեսական լծակներն օգտագործվում են պլանային կարգով, նրանք ծառայում են պետական պլանին։

Ղեկավարման նոր կարգի կիրառումը պահանջում է էլ ավելի բարձրացնել ժողովրդական տնտեսության պլանավորման մակարդակը, կադրերին զինել տնտեսական գիտելիքներով։ Ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման մակարդակի բարձրացումը անհրաժեշտ է դարձնում ավելի ուժեղացնել պետության դերը տնտեսական կյանքում։

Տնտեսական ղեկավարման նոր կարգի հետևողական կիրառումը Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայից պահանջում է ամրապնդել աշխատանքի գիտական մեթոդները, պլանավորման պրակտիկայից ամբողջովին դուրս մղել մակերեսայնությունն ու սուբյեկտիվիզմը, վոլյունտարիստական տենդենցները։

Պլանավորման նոր կարգի խնդիրն է՝ էլ ավելի բարձրացնել սոցիալիստական արտադրության արդյունավետությունը և գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործման, նյութական շահագրգռվածության սկզբունքների հետևողական կիրառման հիման վրա ապահովել ժողովրդական տնտեսության արագ վերելքը։ Տնտեսական կյանքի փորձի հիման վրա պլանավորման ձևերն ու մեթոդները հետագայում էլ ավելի կհարստանան ու կկատարելագործվեն։





digitised by A.R.A.R.@

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

*Հասարակական ինքնավարության յուրօրինակ ձևերը գոյություն են ունեցել մարդկային հասարակության առաջացման ժամանակներից ի վեր։ Բայց սոցիալ-տնտեսական անհավասարության առաջացման և հասարակությունը դասակարգերի բաժանվելու հետ մեկտեղ արմատապես փոխվել է նաև հասարակական կյանքի կառավարման կազմակերպման բնույթը։ Քայքայվել է կառավարման* հասարակական *կազմակերպումը, այն դարձել է* քաղաքական։ *Ընդսմին, հասարակության քաղաքական կազմակերպման հիմնական բովանդակությունը միշտ որոշվել է տիրապետող դասակարգի շահերով և այնտեղ գլխավոր տեղը գրավել է պետությունը։ Դասակարգային պայքարի զարգացմամբ և սրմամբ, հատկապես կապիտալիզմի օրոք, հասարակության քաղաքական կյանքում, նրա գործերի կառավարման ասպարեզում պետության հետ մեկտեղ սկսում են զգալի դեր խաղալ քաղաքական պարտիաները և մյուս միավորումները։ Դրանով իսկ ընդլայնվում և բարդանում է հասարակության կառավարման կազմակերպման քաղաքական բնույթը։*

*Սոցիալիզմի կառուցման և կոմունիզմին անցնելու փուլում հասարակական կյանքի կառավարման կազմակերպումը հասարակության* քաղաքական կազմակերպման վերջին ձևն է։ *Մարքսիզմ-լենինիզմը ելնում է նրանից, որ, ինչպես պետությունը, այնպես էլ հասարակության զարգացման որոշակի փուլում առաջացած դասակարգային մյուս կազմակերպությունները, գոյություն չեն ունենա մշտապես։ Լիակատար կոմունիզմի և կոմունիստական հասարական հարաբերությունների անցնելու պրոցեսում այդ օրգաններից մի քանիսը մեռնում են, մյուսները վերափոխվում և լրիվին ձուլվում հասարակության հետ։ Բայց դա չի նշանակում, թե կոմունիզմի օրոք կվերանա հասարակական կարգի կազմակերպված կարգավորումը։ Ընդհակառակը, կոմունիզմը ենթադրում է նյութական բարիքների արտադրության և բաշխման կուռ սիստեմ ունեցող հասարակարգի կառավարման առավել կատարելագործված կազմակերպում։ Նման կազմակերպման հիմքը կկազմեն հասարակական կոմունիստական ինքնավարության օրգանները։* «Կոմունիզմը,— *ասված է պարտիայի ծրագրում,—* ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կհաստատվի հանրային ինքնավարություն» *(ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 484)։ Կոմունիզմի օրոք հասարակարգի կառավարման կազմակերպումը կրկին կդառնա ոչ-քաղաքական։ Տեղի է ունենում դիալեկտիկական բացասում, որը ենթադրում է անցյալի կրկնում՝ նոր, ավելի բարձր աստիճանի վրա և անմիջական հաջորդականություն սոցիալիստական հասարակարգի քաղաքական կազմակերպման ու կոմունիստական ինքնավարության կազմակերպման միջև։*

*Կոմունիստական ինքնավարության անցնելու հարցը գիտապրոպագանդիստական գրականության մեջ հիմնականում դիտվում է պետության վերաճման տեսակետից, նրա օրգանների և ֆունկցիաների զարգացման, վերափոխման տեսակետից։ Դա միագամայն հասկանալի է, քանի որ պետությունը քաղաքական իշխանության հիմնական մարմնացումն է և հանդիսանում է հասարակության քաղաքական կազմակերպման հիմքը։ Բայց, ինչպես հայտնի է, նրա սիստեմի մեջ մտնում են նաև պարտիաներն ու հասարակական-քաղաքական այլ կազմակերպությունները։ Սոցիալիստական հասարակարգում նրանք պետության հետ մեկտեղ ակտիվ մասնակցում են հասարակական կյանքի բոլոր կողմերի կառավարմանը։ Հետևապես, կոմունիստական ինքնավարության անցնելու պրոցեսը ընդգրկում է ոչ միայն պետության, այլև հասարակական կազմակերպությունների ամբողջ սիստեմի վերաճումը։ Հարցը հենց այդպես է դրվում ՍՄԿՊ ծրագրում, որտեղ ընդգծված է, թե հասարակական կոմունիստական ինքնավարության մեջ «կմիավորվեն Սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները (նույն տեղը, էջ 532)։*

*Պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների զարգացման ու վերափոխման հետ մեկտեղ տեղի է ունենում հասարակական կառավարման դեմոկրատական սկզբունքների կատարելագործում և նրանց հիմնական հասարակական ֆունկցիաների վերափոխում։*

## 1. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԱՆՑՆԵԼՈՒ ՕԲՅԵԿՏԻՎ ԵՎ ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ՆԱԽԱԴՐՅԱԼՆԵՐԸ

*Ինչպես ամբողջությամբ վերցրած կոմունիզմի կառուցման, այնպես էլ կոմունիստական ինքնավարության անցնելու համար անհրաժեշտ է համապատասխան օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալներ ստեղծել հասարակության տնտեսական, քաղաքական և հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում։*

Տնտեսական նախադրյալները,— *նշել է Վ. Ի. Լենինը,— ստեղծվում են կոմունիզմի արտադրողական ուժերի այնպիսի բարձր զարգացմամբ, որի հիման վրա կվերանան հասարակական անհավասարության ամենակարևոր աղբյուրները՝ արտադրության միջոցների ամեն տեսակի մասնավոր սեփականությունը, տարբերությունը դասակարգերի, գյուղի և քաղաքի միջև, հակադրությունը մտավոր և ֆիզիկական աշխատանքի մարդկանց միջև, որոնք և կպայմանավորեն հանրային գործերի պետական-իրավական կարգավորման վերացումը (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 610, հ. 29, էջ 515)։*





digitised by A.R.A.R.@

Քաղաքական նախադրյալները ստեղծվում են դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացման շնորհիվ, երբ բոլորը կմասնակցեն հասարակության գործերի կառավարմանը և կառավարման ֆունկցիաները, որպես հատուկ կարգի մարդկանց հատուկ ֆունկցիաներ, կվերանան (նույն տեղը)։

Կոմունիզմին անցնելու հետ մեկտեղ սոցիալիստական հասարակարգի կառավարման հիմնական դեմոկրատական սկզբունքները (դեմոկրատական ցենտրալիզմ, կոլեկտիվ ղեկավարություն, տնտեսության և կուլտուրայի զարգացման միասնական պլանավորում, ընտրականություն, հաշվետվություն և այլն) ավելի են զարգանում և կատարելագործվում, իսկ կոմունիզմի օրոք կորցնում են իրենց քաղաքական բնույթը։ Վ. Ի. Լենինն ասել է. «Միմիայն կոմունիզմը կարող է իսկապես լիակատար դեմոկրատիա տալ, և որքան ավելի լիակատար լինի այդ դեմոկրատիան, այնքան ավելի շուտով անպետք կդառնա նա, ինքն իրեն կմահանա (Երկեր, հ. 25, էջ 602)։

Դեմոկրատիայի մահացման լենինյան դրույթը, հասկանալի է, չի նշանակում անձի ազատության, ընտրականության, կառավարման գործին մասսաների մասնակցության և դեմոկրատական մյուս իդեալների վերացում։ Դեմոկրատիայի մահացումը Վ. Ի. Լենինը կապել է դասակարգերի վերացման հետ, պետության՝ որպես դասակարգային տիրապետության գործիքի մահացման հետ։ Դասակարգային հասարակության մեջ դեմոկրատիան արտահայտում է նրա քաղաքական կազմակերպության էությունը, որը գլխավորապես դրսևորվում է տիրապետող դասակարգի դիկտատուրայում։ Հենց այդ դեմոկրատիան, դասակարգային հասարակության դեմոկրատիան է Վ. Ի. Լենինը նկատի ունեցել, երբ անարխիստների հետ մղած բանավեճում նշել է, թե քաղաքական դեմոկրատիայից բացի ոչ մի այլ դեմոկրատիա չկա։ Դրանից ելնելով, Լենինը առաջ է քաշել հետևյալ բանաձևը՝ աբսոլյուտիզմից դեպի բուրժուական դեմոկրատիա, բուրժուական դեմոկրատիայից դեպի ոչ մի դեմոկրատիա։ Ստեղծագործորեն զարգացնելով դեմոկրատիայի պատմական փուլերի վերաբերյալ լենինյան ուսմունքը, մեր պարտիան իր ծրագրում այն լրացրել է նոր, կարևորագույն դրույթներով՝ պրոլետարական դեմոկրատիան վերաճում է համաժողովրդական դեմոկրատիայի, իսկ վերջինս՝ հասարակական կոմունիստական ինքնավարության։

Հասարակական ինքնավարության անցնելու հոգևոր նախադրյալները ստեղծվում են մասսաների կոմունիստական դաստիարակության այնպիսի բարձր մակարդակի շնորհիվ, երբ հասարակության բոլոր անդամները կամավոր և գիտակցաբար կմասնակցեն հասարակական արտադրությանը և «կընտելանան առանց բռնության ու առանց հպատակման՝ կատարելու հասարակայնության տարրական պայմանները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 593)։

Կոմունիստական շինարարության արդի պայմաններում հասարակական ինքնավարության անցնելու օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալները գործնականում ստեղծվում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման պրոցեսում, հասարակության տնտեսական և քաղաքական ղեկավարության բոլոր բնագավառներում դեմոկրատիան ըստ ամենայնի բարձրացնելու, հասարակության բոլոր անդամների կոմունիստական դաստիարակության և բազմակողմանի զարգացման, սոցիալիստական հասարակական հարաբերությունները կոմունիստական հարաբերությունների վերափոխելու պրոցեսում։



## 2. ՊԵՏԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՃՈՒՄԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ

Որո՞նք են գոյություն ունեցող պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների դերն ու պատմական տեղը կոմունիստական հասարակության ինքնավարության անցնելու պրոցեսում։ Ինչպիսի՞ն կլինի հասարակական կոմունիստական ինքնավարության կազմակերպման ապագա սիստեմը։

Հասկանալի է, որ ներկայումս այդ հարցերին հնարավոր չէ անառարկելի պատասխան տալ, հնարավոր չէ ժամանակից շուտ հանգամանորեն նկարագրել այն, ինչ մշակվելու է հասարակական պրակտիկայի զարգացման ընթացքում։ Սակայն, այդ պրոցեսի առավել բնորոշ միտումները թույլ են տալիս որոշ ենթադրություններ անել։ Մեր գրականության մեջ այն կարծիքն է հայտնվել, թե կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող պետական օրգաններից և հասարակական կազմակերպություններից կոմունիստական ինքնավարության անցնելու պրոցեսում հատուկ դեր է պատկանում աշխատավորների դեպուտատների սովետներին, որոնց կողմն են ձգվում, ինչպես Վ. Ի. Լենինն է նշել, կառավարման բոլոր թելերը։ Խոսելով ժողովրդական տնտեսության խորհրդի նման ապարատի մասին, որին վիճակված է աճել, զարգանալ և ամրապնդվել, լրացնելով նոր հասարակարգի գործունեության բոլոր գլխավոր կողմերը, Վ. Ի. Լենինը խորապես բնութագրել է կառավարման սովետական ձևը և դրա մեջ կանխատեսել է կոմունիզմի ժամանակ հասարակական ինքնավարության սաղմը։ Բանն այն է, որ կառավարման կազմակերպման սովետական ձևի դեմոկրատական սկզբունքները, որոնք առաջացել են մասսաների ռևոլյուցիոն պայքարի և ստեղծագործական ինքնագործունեության ընթացքում, բնորոշ են սոցիալիստական հասարակարգի պետական բոլոր օրգաններին և հասարակական կազմակերպություններին։ Ուստի նրանք կարող են հանդիսանալ կոմունիստական ինքնավարության կազմակերպման նախատիպը։

Հասկանալի է, որ դրանից չի հետևում, թե կոմունիզմի ժամանակ սովետները վերածվելու են համապարփակ օրգանների, իսկ մյուս կազմակերպությունները վերանալու են։ Ոչ սովետները, ոչ արհմիությունները, ոչ էլ մյուս կազմակերպությունները կոմունիզմի ժամանակ չեն պահպանվի այն ձևով, ինչպիսին են այժմ։ Դրանք բոլորը զարգանալով ու մերձենալով կմիաձուլվեն, ստեղծելով կոմունիստական ինքնավարության ապագա օրգանները։

Այդ պրոցեսում սովետների պատմական տեղը գլխավորապես այն է, որ լինելով միակ համապարփակ ներկայացուցչական օրգանները և իրենց մեջ համադրելով պետական ու հասարակական կազմակերպման գծերը, նրանք կկազմեն այն հիմքը, որի շուրջն աստիճանաբար կբյուրեղանա կոմունիստական ինքնավարության միասնական սիստեմը։ Սակայն այդ չի բացառում, որ կոմունիստական ինքնավարության օրգանների առանձին ստորին օղակներ կստեղծվեն արտադրական կոլեկտիվների հիման վրա։ Կարելի է, օրինակ, ենթադրել, որ կոմունիստական ինքնավարության սկզբնական օրգանները կստեղծվեն արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների հիման վրա։ Բայց այդ չի կարելի պատկերացնել որպես ուղղագիծ ու սխեմատիկ պրոցես։ Օրինակ, չի կարելի կարծել թե կոլտնտեսություններն ու սովխոզները կվերածվեն գյուղատնտեսության ինքնավարության օր-



digitised by A.R.A.R.@

գանների, արհմիությունները՝ արդյունաբերության ինքնավարության օրգանների և այլն։

Վ. Ի. Լենինը արհմիությունների մասին խոսել է որպես կոմունիզմի դպրոցի։ Պարտիայի ծրագրի մեջ ասված է, որ կոլտնտեսությունները կոմունիզմի դպրոց են կոլտնտեսային գյուղացիության համար։ Բայց այս կարևորագույն դրույթները չի կարելի շփոթել հասարակության-քաղաքական կազմակերպության ամբողջ սիստեմի կոմունիստական ինքնավարության կազմակերպմանն անցնելու միասնական պրոցեսի հետ։ Սովետները, արհմիությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները կարող են կազմել կոմունիստական ինքնավարության միասնական օրգանների համապատասխան օղակների սոսկ հիմքը։ Հազիվ թե կարելի է տարակուսել, որ կոմունիզմի ժամանակ կյանքի տնտեսական, մշակութային և մյուս կողմերի ղեկավարությունն իրագործվելու է ինքնավարության տեղական ու կենտրոնական միասնական օրգանների կողմից, որոնք կմարմնավորեն պետական բոլոր օրգանների և հասարակական կազմակերպությունների լավագույն փորձն ու դեմոկրատական սկզբունքները։ Շրջանային օղակի վերաբերյալ, օրինակ, ՍՄԿՊ ծրագրում կա պարզ բացատրություն։ Այնտեղ ասված է. «Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականությանը մոտենալու համեմատ աստիճանաբար կկազմավորվի շրջանային նշանակություն ունեցող բոլոր ձեռնարկությունների, կազմակերպությունների և հիմնարկների կառավարման միասնական դեմոկրատական օրգան» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 526)։ Պետք է ենթադրել, որ այդպես կստեղծվեն նաև կոմունիստական ինքնավարության մյուս տեղական ու կենտրոնական օրգանների համապատասխան օղակները։ Կարելի է նաև ենթադրել, որ կոմունիստական ինքնավարության օրգանները շրջաններում ավելի շուտ կառաջանան, քան կենտրոնում։ Դա բացատրվում է նրանով, որ կենտրոնական օրգանները ղեկավարում են ժողովրդական տնտեսությունը, երկրի պաշտպանության գործը և ներքին ու արտաքին մյուս հարցերը՝ ամբողջ երկրի մասշտաբով։ Իսկ տեղերում սովետներն ու մյուս կազմակերպությունները արդեն այժմ ինչ-որ չափով հանդիսանում են ինքնավարության օրգաններ։ Բացառված չէ, որ կոմունիստական հասարակարգի տնտեսական և մշակութային կյանքի ինքնավարության օրգանների հետ մեկտեղ կլինեն նաև ստեղծագործական, գիտական, երիտասարդական և տարբեր այլ սպեցիֆիկ միավորումներ՝ հասարակության անդամների անհատական հակումներին համապատասխան։

Իսկ ինչպե՞ս է գործնականում տեղի ունենում պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների մերձեցման պրոցեսը ու նրանց վերափոխումը կոմունիստական ինքնավարության օրգանների։

Ամենից առաջ տեղի է ունենում դրանց կազմակերպման և գործունեության դեմոկրատական սկզբունքների ըստ ամենայնի ընդլայնում։ Իրագործվում է կառավարման ապարատի հետագա դեմոկրատացում, ընդլայնվում են պաշտոնական անձանց ընտրովիությունն ու փոփոխությունը, բարձրանում է հասարակության դերը նրանց գործունեության վերահսկման բնագավառում, ուժեղանում է կառավարման օրգանների և պաշտոնական անձանց՝ բնակչության առջև, առավել կանոնավոր հաշվետվության նշանակությունը, ընդլայնվում է հրապարակայնությունը և ընդհանուր ու տեղական նշանակության բոլոր կարևոր հարցերի համաժողովրդական քննարկման սկզբունքը։ Հատուկ



նշանակություն է ստանում աշխատավորների ավելի ու ավելի լայն ու անմիջական մասնակցությունը օրենսդրության գործին, որը կիրագործվի ոչ միայն նախագծերի քննարկման ուղիով, այլև հանրաքվեի, համաժողովրդական քվեարկության միջոցով։ Դեմոկրատիայի զարգացման այս և մյուս ձևերը նպաստում են կոլեգիալության ընդլայնմանը և աշխատավորների լայն մասնակցությանը կառավարման ապարատի գործունեությանը։ Դրանով իսկ նախադրյալներ են ստեղծվում, որպեսզի վճարովի ապարատի ֆունկցիաները աստիճանաբար անցնեն ինքնավարության հասարակական օրգաններին։

Պետական կառավարման ապարատի ըստ ամենայնի դեմոկրատացման հետ մեկտեղ բարձրանում է հասարակական կազմակերպությունների դերը։ Աստիճանաբար նրանց են անցնում այն ֆունկցիաները, որոնք կատարում են պետական օրգանները։ Դրա շնորհիվ տեղի է ունենում կառավարման բոլոր օրգանների մերձեցում։ Դրան նպաստում են նաև նրանց փոխադարձ ներկայացուցչության ընդլայնումը և համատեղ գործունեության ոլորտի ընդլայնումը։ Դժվար է գտնել տնտեսական ու կուլտուրական շինարարության այնպիսի ճյուղ, որտեղ չլինի պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների գործունեության սերտ կապ՝ ժողովրդա-տնտեսական պլանների մշակում և դրանց կատարման համար մասսաների կազմակերպում, մրցության տարբեր ձևերի ղեկավարում և առաջավոր փորձի տարածում, կուլտուր-կենցաղային շինարարության իրագործում պետական միջոցներով և հասարակայնության ուժերով, ժողովրդական կրթության, առողջապահության, կուրորտային սպասարկման, կուլտուր-լուսավորական հիմնարկների ղեկավարություն, հասարակական կարգի պահպանման ապահովում և բազմաթիվ այլ հարցեր լուծվում են պետական օրգանների ու հասարակական կազմակերպությունների համատեղ ջանքերով։

Դրա շնորհիվ նրանց գործունեության մեջ երևան են գալիս համատեղ աշխատանքի կազմակերպման նոր ձևեր։ Այսպես, վերջին տարիներս առաջացել են բնակչության շրջանում տարվող աշխատանքի խորհուրդներ, որոնց մեջ մտնում են պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչները. առաջացել են գործադիր կոմիտեների, պարտիական և կոմերիտական կազմակերպությունների արտահաստիքային բաժիններ, արհմիությունների հասարակական հանձնաժողովներ, ձեռնարկությունների փոխօգնության կոորդինացման խորհուրդներ, կոլտնտեսություններում բրիգադային խորհուրդներ, նորարարների խորհուրդներ, հասարակական հիմունքներով գործող կոնստրուկտորական բյուրոներ, ձեռնարկություններում կուլտուր-կենցաղային սպասարկման աշխատանքը վերահսկող հասարակական հանձնաժողովներ ու պոստեր։ Այս օրգանների առանձնահատկությունն այն է, որ նրանք միավորում են պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների գործունեությունը, լայն մասսաներին ներգրավում հասարակական ֆունկցիաների անվճար կատարման գործում։ Այդ էլ հենց կազմելու է կոմունիզմի ժամանակ կառավարման գործի կազմակերպման հիմնական բովանդակությունը։ Ուստի, կառավարման այս ձևերը մենք դիտում ենք որպես ապագա հասարակական կոմունիստական ինքնավարության սաղմեր։ Հանձին դրանց մենք տեսնում ենք սոցիալիստական դեմոկրատիայի հիմնական սկզբունքների զարգացման ակնբախ դրսևորումը, որը կա-



digitised by A.R.A.R.@

պահովի բոլոր քաղաքացիների ներգրավումը հասարակության կառավարման գործում:

Պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների՝ կոմունիստական ինքնավարության օրգանների վերափոխման պրոցեսը, ինչպես ամբողջովին վերցրած սոցիալիզմից կոմունիզմին անցնելը հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունն է: Բայց դա տեղի է ունենում ոչ թե տարերայնորեն, այլ ընկալվում և ուղղություն է ստանում կոմունիզմի շինարարների գիտակցական գործունեությամբ: Ուստի, ինչպես կոմունիզմի կառուցման բոլոր խնդիրների, այնպես էլ սոցիալիստական հասարակարգի քաղաքական կազմակերպման՝ կոմունիստական ինքնավարության կազմակերպման վերաճելու պրոցեսի ղեկավարության մեջ հատուկ դեր ունի Սովետական Միության կոմունիստական պարտիան՝ ամբողջ սովետական ժողովրդի ավանգարդը: ՍՄԿՊ ծրագրում նշված է, որ պարտիան, որպես ամբողջ ժողովրդի առաջավոր ջոկատ, պետք է ընթանա առջևից և ցույց տա կոմունիստական հասարակական ինքնավարության առավել կատարյալ ձևերի մշակման օրինակ, իրագործի ղեկավարությունը այդ ընդհանուր պրոցեսի նկատմամբ: Սոցիալիզմի հաղթանակի, սոցիալական արմատական վերափոխությունների և սովետական հասարակարգի գաղափարական-քաղաքական միասնության հաստատման շնորհիվ ՍՄԿՊ-ն բանվոր դասակարգի պարտիայից վերածվել է համաժողովրդական պարտիայի: Կոմունիզմի կառուցման պայմաններում էլ ավելի է զարգանում ներպարտիական դեմոկրատիան, նրա աշխատանքում ընդլայնվում են հասարակական հիմունքները և ուժեղանում է պարտիայի կապը մասսաների հետ: Դեմոկրատական սկզբունքների զարգացման ու կատարելագործման այդ պրոցեսը պարտիայի ղեկավարությամբ իրագործվում է նաև պետական օրգանների ու հասարակական կազմակերպությունների ամբողջ սիստեմում: Իրագործելով դեմոկրատիայի ըստ ամենայնի ընդլայնում, ծավալելով պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների կազմակերպման ու գործունեության դեմոկրատական սկզբունքները, պարտիան ռեալ պայմաններ է ստեղծում ամբողջ ժողովրդին կյանքի բոլոր ոլորտների կառավարման գործում ներգրավելու, աշխատավորների ձեռքին իշխանության փաստական առկայության և նրանց կառավարչական բավարար ունակությունների միջև եղած անհամապատասխանությունը վերջնականապես վերացնելու համար, այն բարձր նպատակին հասնելու համար, երբ բոլոր մարդիկ կսովորեն կառավարել և իրոք կկառավարեն հասարակության բոլոր գործերը: Այստեղից հասկանալի է, որ կոմունիստական ինքնավարության օրգանների սիստեմի հիմքը և կոմունիստական ինքնավարության անցումը կարող է նախապատրաստել միայն պարտիան:

Իսկ ինչպիսի՞ն կլինի պարտիայի ճակատագիրը կոմունիզմի օրոք: Պարտիայի գոյությունը կապելով միայն պրոլետարիատի դիկտատուրայի դերի կատարման հետ, Ի. Վ. Ստալինը այն կարծիքն է հայտնել, թե դասակարգերի վերացման, պրոլետարիատի դիկտատուրայի մահացման հետ պետք է մահանա նաև պարտիան: Կան նաև ենթադրություններ, թե կոմունիստական պարտիան ընդմիշտ կպահպանվի նաև լիակատար կոմունիզմի օրոք: Այս պնդումների մեջ դժվար չէ նկատել միակողմանի մոտեցում քննարկվող պրոբլեմի նկատմամբ: Ամենից առաջ սխալ է, երբ պարտիայի գոյության պատմական ժամկետները կապում են պրոլետարիատի դիկտատուրայի հետ: Ինչպես ցույց



է տվել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պրակտիկան, պրոլետարիատի դիկտատուրան դադարել է անհրաժեշտություն լինելուց, իսկ պարտիան շարունակում է գոյություն ունենալ: Նրա դերն էլ ավելի է աճում կոմունիզմի շինարարության պայմաններում: Բայց, պարտիայի՝ որպես աշխատավորների հասարակական-քաղաքական կազմակերպության ձևի գոյությունը ևս հավիտենական չէ: Պարտիան կդադարի գոյություն ունենալ այն ժամանակ, երբ նրա գաղափարական, բարոյական սկզբունքները լիովին կիրագործվեն հասարակական կյանքի բոլոր մարզերում: Հետևապես, որպես սոցիալիստական հասարակարգի առաջատար ուժ, պարտիան կոմունիզմի օրոք կպահպանվի այնքան ժամանակ, քանի դեռ ապահովված չէ հասարակական ինքնավարության բոլոր օղակների կուռ գործունեությունը և մասսաների կոմունիստական գիտակցությունը չի հասել բարձր մակարդակի: Պարտիան չի մեռնում պետության մահացման հետ մեկտեղ և գոյություն չի ունենում հավիտենապես: Կոմունիզմի բարձրագույն աստիճաններում պարտիան կձուլվի ժողովրդի հետ, դրանով իսկ կձուլվի կոմունիստական հասարակական ինքնավարության կազմակերպման հետ:

## 4. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՀԱՋՈՐԴԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐՈՔ

Ինչպես սոցիալիզմի, այնպես էլ կոմունիզմի օրոք ինքնավարության օրգանները կոչված են հաստատելու հասարակական ֆունկցիաները՝ հասարակության կուռ ղեկավարման համար: Այստեղ ևս գոյություն ունի կոմունիստական ֆորմացիայի երկու փուլերի անմիջական հաջորդականություն: Կոմունիզմի ժամանակ հիմնական ֆունկցիաների հաջորդականության և նրանց բնույթի հարցը ընդհանուր գծերով ուսումնասիրված է գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատություններում: Նրանք ընդհանուր առմամբ նշել են, որ կոմունիզմի ժամանակ հիմնական ֆունկցիաները կպահպանվեն, բայց քաղաքականից դրանք կվերածվեն պարզապես վարչական ֆունկցիաների: Այս հանճարեղ գաղափարները հետագայում իրենց զարգացումն ու կոնկրետացումը գտան ՍՄԿՊ ծրագրում: Այնտեղ ասված է, որ «Տնտեսության և կուլտուրայի կառավարման ներկայիս պետական ֆունկցիաների համանման հասարակական ֆունկցիաները կպահպանվեն նաև կոմունիզմի օրոք, կերպարանափոխվելով և կատարելագործվելով հասարակության զարգացմանը համապատասխան: Բայց դրանց իրականացման բնույթն ու եղանակները տարբեր կլինեն, քան սոցիալիզմի օրոք: Դրանք կկորցնեն քաղաքական բնույթը (ՍՄԿՊ XXII համագումարի նյութեր, էջ 532):

Ինչո՞վ է դա պայմանավորված: Վերցնենք, օրինակ, տնտեսության, արտադրության ղեկավարման ֆունկցիան: Միանգամայն ակնհայտ է, որ հասարակության պահանջմունքներին համապատասխան արտադրանքի թողարկումը ապահովելու համար, նույնիսկ հասարակության անդամների ամենաբարձր գիտակցության պայմաններում, անհրաժեշտ կլինի գիտականորեն պլանավորել տնտեսության տարբեր ճյուղերի զարգացումը: Բայց արտադրության կառավարումը չի սահմանափակվում միայն պլանավորմամբ: Արտադրության կառավարման անհրաժեշտ պայման է հանդիսանում նաև մարդկանց աշ-



digitised by A.R.A.R.@

խատանքային գործունեության ճիշտ կազմակերպումը, բանվորական ուժի ճիշտ կարգավորումը: Ուրեմն, համապատասխան ֆունկցիան կպահպանվի:

Աշխատանքային գործունեության, մեր ամբողջ արտադրության նպատակը հասարակության անդամների նյութական և հոգևոր պահանջմունքների առավելագույն բավարարումն է: Սոցիալիզմի ժամանակ այդ պահանջմունքները բավարարվում են «յուրաքանչյուրից ըստ ընդունակության, յուրաքանչյուրին ըստ աշխատանքի» սկզբունքի համապատասխան: Հենց այդ սկզբունքի հիման վրա է իրագործվում աշխատանքի չափի և սպառման չափի կարգավորման ֆունկցիան: Որոշ հեղինակներ այն կարծիքն են հայտնում, թե ըստ պահանջմունքի բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու հետ մեկտեղ աշխատանքի և սպառման չափի կարգավորման ֆունկցիան կվերանա: Նման կարծիքների սխալ լինելն ակնհայտ է: Չէ որ միամիտ բան է ենթադրել, թե կոմունիզմի օրոք մարդիկ աշխատելու են և հասարակությունից վերցնելու՝ ով, երբ և որքան ցանկանա: Ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքի իրագործումը ամենևին չի նշանակում նյութական և հոգևոր բարիքների անկազմակերպ օգտագործում: Բացի այդ, անհնարին է ըստ պահանջմունքի բաշխման սկզբունքի իրագործում առանց այն պահանջմունքների հաշվառման, որոնք կապված են երկրի առանձին գոտիների պայմանների, ազգաբնակչության աճի և մյուս գործոնների հետ: Ուստի, ավելի ճիշտ կլինի ենթադրել, որ կոմունիստական ինքնավարության օրգաններն զբաղվելու են ինչպես մարդկանց աշխատանքային գործունեության կարգավորմամբ, այնպես էլ նրանց պահանջմունքների առավելագույն բավարարման գործի կազմակերպմամբ: Հետևապես, համապատասխան ֆունկցիան կպահպանվի, բայց կվերափոխվի: Կոմունիզմի օրոք աշխատանքի չափին համապատասխան սպառման չափի նկատմամբ վերահսկողությունը կկորցնի այն կապը, որ գոյություն ունի սոցիալիզմի ժամանակ: Այն հիմնականում կզբաղվի հարաճուն պահանջմունքների հաշվառմամբ և դրանք բավարարելու գործի կազմակերպմամբ:

Դժվար չէ հասկանալ, որ ուսուցումը, դաստիարակությունը և կուլտուրայի զարգացումը ղեկավարելու բնագավառում ֆունկցիաների գոյության անհրաժեշտություն կլինի նաև կոմունիզմի ժամանակ: Կոմունիստական հասարակարգի մարդը պետք է համակողմանի զարգացած լինի, օժտված բարձր գիտակցականության, աշխատասիրության, կարգապահության, բարոյական անաղարտության, հասարակական շահերին նվիրվածության ոգով:

Այսպիսով, կոմունիզմի օրոք հասարակական հիմնական ֆունկցիաների իրագործումը պայմանավորված է կյանքի պահանջներով, հասարակական առաջադիմության անընդմեջ պրոցեսի օբյեկտիվ օրինաչափություններով: Բայց այդ ֆունկցիաները, ինչպես և կոմունիզմի օրոք կառավարման օրգանները կվերափոխվեն, կկորցնեն իրենց քաղաքական բնույթը:

## 5. ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԻ ԿՈՐՈՒՍՏԸ

Գիտական կոմունիզմի հիմնադիրները դեռևս «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» այս հարցի մասին գրել են. «Երբ զարգացման ընթացքում դասակարգային տարբերություններն անհետանան, և ամբողջ արտադրու-



թյունը կկենտրոնանա անհատների ասոցիացիաների ձեռքում, այն ժամանակ հանրային իշխանությունը կկորցնի իր քաղաքական բնույթը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, էջ 37):

Դասակարգային և սոցիալական այլ տարբերությունների առկայությունը պայմանավորում է հասարակական կյանքի պետական-իրավական կարգավորումը, որն, ըստ էության, պարունակում է կառավարման կազմակերպման քաղաքական բնույթի հիմնական հատկանիշը: Լիակատար կոմունիզմի ժամանակ այդ տարբերությունների վերացմամբ կպայմանավորվի պետության և իրավունքի մահացումը: Այն ժամանակ պետական-իրավական կարգավորումը իր տեղը կզիջի կոմունիստական համակեցության նորմերին:

Տվյալ դեպքում տեղի կունենա անմիջական հաջորդականություն սոցիալիստական իրավունքի և կոմունիստական համակեցության նորմերի միջև: Այն, հավանաբար, կարտահայտվի հասարակական կյանքի կառավարման հիմնական նորմերի ընդհանրության մեջ, սոցիալիստական իրավունքի և կոմունիստական բարոյականության սկզբունքների միասնության մեջ: Սոցիալիստական հասարակության պայմաններում իրավունքը հանդիսանում է ամբողջ ժողովրդի կամքի արտահայտությունը, հետևապես՝ նրա բարոյական պատկերացումների, հայացքների, գաղափարների արտահայտությունը: Ուստի սոցիալիստական հասարակարգի օրենքների կատարումը արդեն այժմ սովետական մարդկանց մեծամասնության համար դառնում է ներքին պահանջ, սովորություն: Դրա մեջ պարունակվում է այն օբյեկտիվ նախադրյալը, որ կոմունիզմին անցնելու պրոցեսում սոցիալիստական հասարակարգի իրավական և բարոյական նորմերը կվերածվեն կոմունիստական համակեցության միասնական նորմերի, որոնց կամավոր պահպանումը կդառնա հասարակության բոլոր անդամների ներքին պահանջը, սովորությունը: Այս հարցի վերաբերյալ ՍՄԿՊ ծրագրում գրված է. «Պետական ու հասարակական կազմակերպությունների ամբողջ սիստեմը աշխատավորներին դաստիարակում է իրենց պարտականությունների կամավոր, բարեխիղճ կատարման ոգով, հանգեցնում է կոմունիստական համակեցության նորմերում, պարտականությունների հետ իրավունքների օրգանական միաձուլմանը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 529):

ՍՄԿՊ ծրագրում մշակված կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը իրենից ներկայացնում է իրավունքների, պարտականությունների և բարոյական սկզբունքների այնպիսի սերտ միավորում, որի մեջ մենք տեսնում ենք կոմունիզմի հասարակական նորմերի նախատիպը:

Հետևապես, կոմունիստական հասարակարգի պայմաններում պետության մահացման հետ մեկտեղ մահանում է նաև իրավունքը՝ որպես հասարակական հարաբերությունների կարգավորման քաղաքական ձև: Իրավունքի մահացումը չի նշանակում հասարակության անդամների իրավունքների և ազատությունների վերացում: Բացի այդ, արտադրության պլանային զարգացման, բանվորական ուժի, նյութական ռեսուրսների բաշխման և այլ հարցերի կարգավորումը կիրագործվի սոցիալական այնպիսի որոշակի նորմերի ու նորմատիվների հիման վրա, որոնք կունենան ինչպես տեղական, այնպես էլ համընդհանուր բնույթ: Դրանք ժողովրդի անունից կսահմանվեն ինքնավարության օրգանների կողմից և կերաշխավորվեն հասարակական ներգործությամբ:

Կոմունիզմի ժամանակ սոցիալական նորմաների տարբերությունը կարտահայտվի գլխավորապես պետական հարկադրության բացակայության



digitised by A.R.A.R.@

*մեջ: Սոցիալիստական իրավունքի և կոմունիստական համակեցության հաջոր-դականության հետ է կապված հասարակության կյանքում իշխանության և հարկադրության էության հարցը: Մարքսիզմը չի ճանաչում լիակատար անիշ-խանության վիճակ: Բայց իշխանությունը լինում է ոչ միայն պետական: Պե-տության մահացման հետ մեկտեղ մահանում են նաև պետական իշխանու-թյունն ու պետական հարկադրությունը, սակայն դա չի նշանակում, թե կվերա-նա ամեն տեսակի իշխանություն, ամեն տեսակի հարկադրություն: «Պետու-թյուն» և «իշխանություն» հասկացությունները նույնը չեն: Լենինը գրել է. «Հարկադրական իշխանություն կա մարդկային ամեն մի համակեցության մեջ, թե տոհմային կարգերում և թե ընտանիքում, բայց այստեղ պետություն չի եղել (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 533):*

*Այստեղից հասկանալի է, որ կոմունիստական հասարակարգի պայմաննե-րում ևս մարդն ամենևին չի ազատվում մեծամասնության շահերին և կամքին ենթարկվելու անհրաժեշտությունից: Կոմունիզմի օրոք ևս հասարակության բոլոր անդամները կենթարկվեն համակեցության միասնական նորմերին: Բայց այդ ենթակայությունը խարսխված կլինի ոչ թե հատուկ ապարատի և պետա-կան իրավական սանկցիաների կիրառման ուժի վրա, այլ հասարակական կար-ծիքի ու ներգործության վրա, կոմունիստական բարոյականության համընդ-հանուր սկզբունքների վրա: Հենց սրա մեջ է, որ ամենից առաջ կարտահայտ-վի հասարակական ինքնավարության կազմակերպման քաղաքական բնույթի կորուստը:*

*Կառավարման կազմակերպման պետական և քաղաքական բնույթի մյուս էական կողմը, ինչպես հայտնի է, հանդիսանում է հպատակների բաշխումը ըստ տերիտորիալ հատկանիշի: Ազգերի առաջացման հետ մեկտեղ տերիտո-րիականությունը դարձել է ազգային-պետական: Պետության մահացման և ազգերի ձուլման հետ մեկտեղ կվերանան նաև պետական սահմանները: Բայց պետական-ազգային մեկուսացման վերացումը ամենևին չի նշանակում ամեն տեսակի տերիտորիականության վերացում: Տերիտորիականությունը կոմու-նիզմ կառուցող ժողովուրդների լեզվի, մշակույթի և կենցաղի որոշակի տար-բերություններով հանդերձ, դեռևս երկար կպահպանվի: Ավելին, տերիտորիա-կանությունը որպես հասարակության կառավարման կազմակերպման անհրա-ժեշտ սկզբունք, կպահպանվի նաև լիակատար կոմունիզմի օրոք, երբ կվերա-նան ոչ միայն դասակարգային տարբերությունները, այլև տեղի կունենա ազ-գերի միաձուլում: Կոմունիստական հասարակարգում կառավարման տերիտո-րիալ սկզբունքը անհրաժեշտ կլինի աշխատանքի հասարակական բաժանման առավել նպատակահարմար կարգավորման, երկրի շրջանների կամ գոտիների տնտեսական ռեսուրսների ու պահանջմունքների հաշվառման համար և այլն: Բայց, քանի որ տերիտորիականությունը կոմունիստական հասարակարգում կլինի ոչ թե ազգային-պետական, այլ ամենայն հավանականությամբ՝ վարչա-կան-տնտեսական, ապա այն կկորցնի իր քաղաքական բնույթը:*

*Այնուհետև, քննարկելով կոմունիզմի օրոք հասարակության կառավարման կազմակերպման քաղաքական բնույթի կորուստը, անհրաժեշտ է հաշվի առ-նել ոչ միայն ներքին, այլև արտաքին պայմանները, քանի որ քաղաքականու-թյունը ընդգրկում է նաև միջպետական հարաբերությունների բնագավառը: Հնարավոր է, որ կոմունիզմը Սովետական Միությունում և մյուս սոցիալիստա-կան երկրներում կառուցվի ավելի շուտ, նախքան կապիտալիստական արդի-*



*սիստեմի բոլոր երկրները բռնեն զարգացման սոցիալիստական ուղին: Հասկա-նալի է, որ նման պայմաններում համաշխարհային թատերաբեմում կպահ-պանվի դասակարգային պայքարը: Այն ժամանակ տնտեսության, մշակույթի, գաղափարախոսության բնագավառում կառավարման օրգանների գործունեու-թյունը ևս, անշուշտ, կունենա քաղաքական բնույթ:*

*Այսպիսով*, հասարակական կյանքի կառավարման կազմակերպման քա-ղաքական բնույթի կորուստը նշանակում է դասակարգային, ազգային և սո-ցիալական մյուս տարբերությունների լիակատար վերացում և դրա հետ կապ-ված հանրային իշխանության վերափոխում կոմունիստական ինքնավարության օրգանների, հասարակական ֆունկցիաների վերափոխում՝ քաղաքականից պարզապես վարչականի, ազգային պետական տերիտորիականության վերա-փոխում վարչական, տնտեսական, և պետական-իրավականի կարգավորման վերափոխում՝ կոմունիստական համակեցության նորմերի:

***

*Սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ հասարակության կառավարման կազմակերպման գործում գոյություն ունի անմիջական դիալեկտիկական հա-ջորդականություն: Այն կայանում է կառավարման օրգանների կազմակերպ-ման և նրանց գործունեության դեմոկրատական սկզբունքների ընդհանրության, ինչպես նաև կոմունիստական միասնական ֆորմացիայի երկու փուլերի հիմ-նական հասարակական ֆունկցիաների ընդհանրության մեջ:*

*Կոմունիստական ինքնավարությունը իրենից կներկայացնի հասարակու-թյան կառավարման համաժողովրդական կազմակերպման բարձրագույն ձև, որը չի ունենա քաղաքական բնույթ:*



digitised by A.R.A.R.@

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԳՆԱԳՈՅԱՑՄԱՆ ԱՌԹԻՎ*

Ն. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ

Կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքի հետևողական կիրառման համար կարևորագույն նշանակություն ունի գյուղատնտեսական արդյունքի իրացման ճիշտ պայմանների ապահովումը։ Խոսքն ամենից առաջ գյուղատնտեսական արտադրանքի գների, գնագոյացման կարգի աստիճանական կատարելագործման մասին է։

Գյուղատնտեսական արտադրանքի ավելացմանը զուգընթաց տարեցտարի բարձրանում է նրա ապրանքային մասը, որն անցնում է հասարակության տրամադրության տակ և բաշխվում ապրանքափողային կանալներով, առք ու վաճառքի միջոցով։ Այսպես, վերջին տարիներս ՍՍՌՄ գյուղատնտեսական ամբողջ արդյունքի մոտ 55 տոկոսն ապրանքային էր, այդ թվում բուսաբուծությանը՝ 49, անասնաբուծությանը՝ 61 տոկոսը։ Ներկայումս գյուղատնտեսական ապրանքային արտադրանքի ճնշող զանգվածը տալիս է հանրային սեկտորը՝ կոլտնտեսություններն ու սովխոզները։ 1963 թվականի տվյալներով հանրային սեկտորը տվել է գյուղատնտեսության ամբողջ ապրանքային արտադրանքի 84 տոկոսը, այդ թվում հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բամբակի 100, մսի 80, կաթի 90 տոկոսը և այլն։

Մյուս կողմից՝ հայտնի է, որ ապրանքային արտադրանքի գերակշռող մասը իրացվում է պետական մթերումների ձևով։ Ուրեմն, գյուղատնտեսական ձեռնարկությունների, ինչպես և նրա առանձին ճյուղերի եկամուտներն ու եկամտաբերությունը մեծապես կախված են գյուղատնտեսական արտադրանքի իրացման գների և, հատկապես, պետմթերման (գնման և հանձնման) գների մեծությունից։ Այս կապակցությամբ հարկ է անդրադառնալ այն կարևոր տեսական հարցին, թե որն է պետական մթերման գների էությունը, որոնք են դրանց տնտեսական ֆունկցիաները։

Լինելով արժեքի դրամական արտահայտությունը, գինը պետք է արտահայտի և հատուցի գյուղատնտեսական յուրաքանչյուր մթերքի արտադրության վրա կատարված հանրորեն անհրաժեշտ ծախքերը, կամ նրա արժեքը։ Այդ է գնի հիմնական տնտեսական ֆունկցիան, և թե ինչպես է կատարվում այդ

* Տպագրվում է հարցադրման կարգով—խմբ.։



ֆունկցիան, ամենից առաջ երևում է տնտեսության եկամտաբերությունից։ Գների և եկամտաբերության միջև գոյություն ունեցող անմիջական կապն առանձնապես կարելի է տեսնել կոլտնտեսությունների օրինակով։ Հայտնի է, որ այժմ երկրի կոլտնտեսությունների տարեկան հաշվետվություններում նրանց տարեկան արտադրանքը գնահատվում (արժեքավորվում) է գործող պետական գնման գներով, հայտնի են նաև նույն արտադրանքի վրա ծախսված աշխատանքային և նյութական միջոցները (ինքնարժեքը)։ Այս երկու խումբ տվյալները թույլ են տալիս որոշել ինչպես առանձին ճյուղերում, այնպես էլ ամբողջապես հանրային տնտեսության մեջ ստեղծված զուտ եկամուտը և եկամտաբերության մակարդակը։ Այսպես, 1963 թվականի տվյալներով Հայաստանի կոլտնտեսություններում այգեգործության մեջ եկամտաբերությունը (զուտ եկամտի հարաբերությունը կատարված ծախքերին) հասել է 78 տոկոսի, տեխնիկական կուլտուրաներինը՝ 30, կարտոֆիլինը՝ 2—3, բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 48 տոկոսի, իսկ հացահատիկային տնտեսությունը եկամուտ չի տվել[1]։

Բուսաբուծության ողջ եկամտաբերությունը 1963 թվականին կազմել է 31 տոկոս, որը վերջին տարիներս բնական անբարենպաստ պայմանների հետևանքով խիստ իջել է 1960 թվականի 80 տոկոս եկամտաբերության դիմաց։ Անասնաբուծությունն ամբողջությամբ վերցրած վարվել է վնասով։ Բուսաբուծության զուտ եկամտի բացարձակ գումարը կազմում է 16,3 միլիոն, անասնաբուծության վնասինը՝ 4,0 միլիոն ռուբլի։ Այդ նշանակում է, որ բուսաբուծության եկամուտների մոտ 1/5-ը տրամադրվել է անասնաբուծության վնասների ծածկմանը։ Դրա հետևանքով էլ հանրային գյուղատնտեսության եկամտաբերության միջին նորման ավելի ցածր է, քան բուսաբուծությանը (12 և 31 տոկոս)[2]։

Գյուղատնտեսության տարբեր ճյուղերի եկամտաբերության այսպիսի խայտաբղետությունը հետևանք է առանձին մթերքների արտադրության բարձր ինքնարժեքի, սխալ կամ անբավարար մասնագիտացման և այլ պատճառների։ Սակայն ամենից առաջ այստեղ արտահայտվում է գնագոյացման մեջ իր ժամանակին տեղ գտած այն սխալ սկզբունքը, որի համաձայն անասնաբուծության վնասները պետք է ծածկվեին բուսաբուծության որոշ ճյուղերից ստացվող եկամուտների հաշվին, մի դեպքում՝ տեխնիկական կուլտուրաների, մյուսում՝ այգեգործության և այլն։

Կյանքը ցույց տվեց, որ այդ սկզբունքն իրեն չի արդարացնում։ Նախ՝ գոյություն ունեն գյուղատնտեսական մի շարք գոտիներ, որոնք մասնագիտացված են անասնաբուծական ուղղությամբ և չունեն բուսաբուծական բարձր եկամտաբեր ճյուղեր, որպեսզի նրանց հաշվին ծածկեն անասնաբուծության վնասները։ Երկրորդ (որն ամենակարևորն է) բոլոր դեպքերում և բոլոր գոտիներում այդպիսի գները ոչ մի կերպ չէին կարող շահագրգռել կոլտնտեսություններին ու սովխոզներին՝ ավելացնելու մսի, կաթի և անասնաբուծական

[1] Այս և հետագա հաշվարկների ժամանակ կոլտնտեսականների վարձատրության բնամթերային ֆոնդը մենք գնահատել ենք պետական գնման գներով, որը և համադրելի է դարձնում գյուղատնտեսական արտադրանքի ամբողջական ինքնարժեքը նույն արտադրանքի պետական գնման գների հետ։

[2] Հաշվարկը կատարված է ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 1963 թ. տարեկան հաշվետվության հիման վրա։



digitised by A.R.A.R.@

այլ մթերքների արտադրությունը։ Վերջապես, չմոռանանք և այն, որ արտադրության մեկ ճյուղի վնասները մյուսի օգնությամբ ծածկելու սկզբունքն իրականում փակում է տնտեսական հաշվարկի կիրառման ճանապարհը։

Գյուղատնտեսական մթերքների գնագոյացման ասպարեզում վերջին տարիներս տեղի ունեցան զգալի փոփոխություններ, որոնց էությունը կարելի է բնորոշել հետևյալ կերպ. գները գնալով ավելի ու ավելի են մոտենում արտադրանքի վրա կատարած հասարակական անհրաժեշտ աշխատանքի ծախսերին, այսինքն՝ արժեքին։

Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական արտադրանքի արժեքը որոշվում է ոչ թե նրա արտադրության միջին ծախքերով, այլ բնատնտեսական վատագույն պայմաններում, վատագույն գոտում կատարվող ծախքերով։ Ուստի և գյուղատնտեսական արտադրանքի մթերման գների մասին ճիշտ դատողություններ անելու համար անհրաժեշտ է այս կամ այն մթերքի գինը համեմատել ո՛չ միայն նրա միջին ինքնարժեքի, այլև գյուղատնտեսական տարբեր գոտիներում, հատկապես վատագույն գոտիներում կատարվող ծախքերի կամ ինքնարժեքի հետ։ Օրինակ, մեկ ցենտներ խաղողի միջին ինքնարժեքը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 1962 թվականին (որն ամենաբարձր բերքատվության տարին էր), կազմում էր 12, գնման գինը՝ 32 ռ. այստեղից եկամտաբերությունը՝ 165 տոկոս։ Կարծես թե շատ բարձր է, սակայն, եթե նկատի առնենք, որ ռեսպուբլիկայի նախալեռնային և լեռնային շրջաններում խաղողի ինքնարժեքը հասնում է 18—20 ռուբլու, ապա պարզվում է, որ եկամտաբերությունն այս գոտիներում այնքան էլ բարձր չէ. այն կազմում է ընդամենը 50—75 տոկոս։ Ոչխարաբուծության արտադրանքը միջին հաշվով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում եկամտաբեր է եղել նախքան գների վերջին բարձրացումը, մինչդեռ եթե վերցնենք արտադրության վատագույն պայմանները (որտեղ ինքնարժեքն առավել բարձր է), այնտեղ այդ ճյուղը վնասով էր պահվում։ Տավարաբուծությունն էլ վնասով էր պահվում ո՛չ միայն միջին, այլև նույնիսկ լավագույն պայմաններում։

Ուսումնասիրությունը բերում է այն եզրակացության, որ մինչև վերջերս գործող գնման գները չունեին իրենց գոյացման միասնական հիմքը և միասնական սկզբունքը։ Բուսաբուծության արտադրանքի մեծամասնության գծով գնման գների հիմքում ընկած են եղել նրանց արտադրության վատագույն պայմաններում կատարված ծախքերը, այլ կերպ ասած, գնման գինը հատուցել է ապրանքային արտադրանքի ամենաբարձր ինքնարժեքը և եկամուտներ է ապահովել. միևնույն ժամանակ անասնաբուծական մթերքների մեծ մասի, ինչպես նաև բուսաբուծական որոշ մթերքների (հացահատիկի, բանջարեղենի) գնման գների հիմքում ընկած են եղել (այլ կերպ ասած այդ գները փոխհատուցել են) միայն արտադրության միջին ծախքերը, հաճախ էլ նվազագույն ծախքերը և ոչ թե վատագույն գոտու ծախքերը։

Ասածից հետևում է, որ գյուղատնտեսական մթերքների գնագոյացման հիմնական թերությունն այն է եղել, որ մի շարք մթերքների գնման գները չեն համապատասխանել իրենց տնտեսական հիմքին և, այսպես ասած, շրջանցել են արժեքի օրենքի օբյեկտիվ պահանջները։

Վիճակը էապես փոխվում է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո։ Պլենումի որոշմամբ զգալի չափով 1,5-ից 2 անգամ բարձրացել են հացահատիկի և անասնապահական մթերքների պետական մթերման



գները, ինչպես նաև սովխոզային արտադրանքի հանձնման գները։ Դրա հետ միասին սահմանված է պետական մթերումների կայուն առաջադրանք 5—6 տարով, կատարված է եկամտահարկի սիստեմի արմատական բարելավում։

Կարելի է մոտավորապես հաշվարկել, թե ինչպիսին կլինի հիշյալ մթերքների արտադրության եկամտաբերությունը նոր գների գործողության պայմաններում։ Դրա համար հացահատիկի ու անասնաբուծական մթերքների նկատմամբ սահմանված նոր գները համեմատենք դրանց 1960—1962 թթ. ինքնարժեքի հետ[1]։

Ընդ որում նոր գները հաշվարկված են ելնելով 1962 թվականի փաստացի գներից և դրանց 1965 թվականի այն հավելումներից, որոնք սահմանված են ռեսպուբլիկայի համար։

Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում հացահատիկի և անասնաբուծական մթերքների եկամտաբերության մոտավոր հաշվարկը մթերման նոր գների պայմաններում.

| Արտադրանքի տեսակը | Արտադրանքի 1 ց գնման նոր գինը ռուբլիներով | 1 ց. ինքնարժեքը ռուբ. | | Եկամտաբեր. տոկոսներով | |
|---|---|---|---|---|---|
| | | 1960 | 1962 | 1960 թ. ինքնարժեքի դեպքում | 1962 թ. ինքնարժեքի դեպքում |
| Հացահատիկ . . | 9 | 8 | 8,3 | 13 | 11 |
| Միս տավարի . . | 127 | 71 | 93 | 80 | 37 |
| Միս ոչխարի . . . | 130 | 47 | 57 | 176 | 128 |
| Միս խոզի . . . . | 168 | 113 | 167 | 49 | 0,5 |

Ինչպես երևում է այս թվերից, մթերման նոր գների պայմաններում մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում հացահատիկային տնտեսությունը, ինչպես նաև անասնապահությունը մինչև վերջերս ոչ եկամտաբեր ճյուղերից ակնհայտորեն դառնում են եկամտաբեր։ Ընդ որում եկամտաբերությունն ապահովվում է ոչ միայն միջին հաշվով, այսինքն՝ բնա-տնտեսական միջին պայմաններում աշխատող կոլտնտեսությունների համար, այլև չնչին բացառություններով հանդերձ՝ նաև վատագույն պայմաններում աշխատող և բարձր ինքնարժեք ունեցող տնտեսություններում։

Գյուղատնտեսական մթերքների մթերման նոր գները հնարավորություն են ընձեռում գյուղատնտեսության բոլոր ճյուղերը դարձնելու եկամտաբեր, հրաժարվելու արտադրության մեկ ճյուղի վնասները մյուսի եկամուտների հաշվին ծածկելու պրակտիկայից, վերջին հաշվով կիրառելու տնտհաշվարկի սկզբունքը ո՛չ միայն ընդհանուր առմամբ, այլև գյուղատնտեսության յուրաքանչյուր ճյուղի և յուրաքանչյուր ձեռնարկության նկատմամբ։

Ինչպես հայտնի է, սովխոզային արտադրանքի հանձնման գներն զգալի չափով ցածր են կոլտնտեսային համանման արտադրանքի գնման գներից։ Այդ բացատրվում է, նախ՝ նրանով, որ սովխոզներում աշխատանքի արտադրողականությունն ավելի բարձր է, իսկ արտադրանքի ինքնարժեքը սովորաբար

[1] Այս տարեթվերը վերցված են այն պատճառով, որ ավելի մոտ և բնորոշ են գյուղատնտեսության միջին ցուցանիշներին, քան հաջորդ 1963—64 թթ., որոնք շատ անբարենպաստ էին գյուղատնտեսության համար։



digitised by A.R.A.R.@

ավելի ցածր, քան կոլտնտեսություններում, հետևաբար դա պետք է դրսևորվի նաև գների մակարդակում: Ապա՝ կոլտնտեսությունները, հանդիսանալով տնտեսապես ինքնուրույն, կոոպերատիվ ձեռնարկություններ, իրենց ծախսերը կարող են և պետք է ծածկեն բացառապես սեփական միջոցներով, այսինքն՝ սեփական արտադրանքի իրացմամբ: Մինչդեռ սովխոզները, որպես պետական ձեռնարկություններ, ամբողջ արտադրանքը հանձնում են պետությանը և, բացի դրանից, ստացած շահույթների հիմնական մասը նույնպես կենտրոնացվում է պետական բյուջեում, մյուս կողմից տնտեսության զարգացման անհրաժեշտ բոլոր միջոցները, սկսած բանվորների աշխատավարձից, մինչև կապիտալ ներդրման ծախքերը, ստանում են պետությունից՝ բյուջետային ֆինանսավորման կարգով: Այս պայմաններում մթերման (հանձնման) գները սովխոզային էկոնոմիկայում համեմատաբար փոքր դեր են խաղում:

Մինչդեռ ուշադիր մոտեցման դեպքում պարզվում է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների միևնույն տեսակի արտադրանքի նկատմամբ խիստ տարբեր գների սահմանումը տնտեսագիտական բավարար հիմք չի ունեցել և այժմ այդպիսի տարբերություններն աստիճանաբար հաղթահարվում են: Եվ, իսկապես, սովխոզային արտադրանքն ավելի ցածր գներով ձեռք բերելով, պետությունն առաջին հայացքից կարծես թե շահում է: Բայց իրականում չի շահում, քանի որ այդ գները չեն ապահովում սովխոզների ծախսերն ու կուտակումները. այս պատճառով իսկ պետությունն իր բյուջեից ամեն տարի դոտացիա է տալիս սովխոզներին, նրանց վնասները ծածկելու, հիմնական և շրջանառու ֆոնդերը լրացնելու համար և այլն: Այսպես, 1963 թվականի տվյալներով մեր ռեսպուբլիկայի սովխոզներում գոյացել է 3,8 միլիոն ռուբլու վնաս: Այդ վնասները ծածկելու և տնտեսության զարգացման կարիքները հոգալու համար պետությունը դոտացիայի կարգով սովխոզներին տվել է 20 միլիոն ռուբլի:

Տնտհաշվարկի և նյութական շահագրգռվածության սկզբունքների կիրառման տեսակետից ավելի նպատակահարմար է, որ սովխոզները ոչ թե բյուջետային ֆինանսավորման (դոտացիայի) կարգով հատուցեն իրենց արտադրության զարգացման հետ կապված ընթացիկ ու կապիտալ ծախքերը, այլ սեփական արտադրանքի վաճառքից գոյացող միջոցների հաշվին: Պատահական չէ, որ այս տարվանից զգալիորեն բարձրացել են նաև սովխոզային արտադրանքի հանձնման գները. դա, անշուշտ, կմեծացնի սովխոզների սեփական դրամական միջոցները և հնարավորություն կտա դրանց հաշվին կատարելու սովխոզային տնտեսության զարգացման համար անհրաժեշտ հիմնական ծախսերը:

Սակայն տնտհաշվարկին անցնելու համար անհրաժեշտ են նաև մի շարք այլ տնտեսական ու կազմակերպական միջոցառումներ: Հենց այդ նկատառումներով սովետական մի շարք տնտեսագետներ միանգամայն իրավացի կերպով հարց են հարուցում սովխոզներում ստեղծվող զուտ եկամուտների մեծ մասը թողնել նրանց տրամադրության տակ, որը նյութապես կխրախուսի այդ եկամուտների ավելացմանը, այնուհետև առաջարկվում է սովխոզների ֆինանսավորումը փոխարինել վարկավորմամբ, որպեսզի նրանք սովորական կարգով պետությունից ստանան վարկ, սահմանված ժամկետներին վերադարձնելով այն և վճարելով սահմանված տոկոսները: Այս դեպքում սովխոզը շատ ավելի մեծ պատասխանատվություն կզգա տրված միջոցների առավել նպատակահարմար ու արդյունավետ օգտագործման համար: Կարելի է չկասկածել, որ, չնայած որոշակի դժվարություններին, այս կարգն կհարթի իր ճանապարհը:



Վերջին 10—12 տարիների գնագոյացման պրակտիկայի և առանձնապես ՍՄԿՊ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի միջոցառումների լույսի տակ ավելի պարզորոշ են դառնում նաև գնագոյացման տնտեսական հարցերը, ամենից առաջ այն, թե արդյոք բնատնտեսական ինչպիսի (միջին թե վատագույն) պայմաններում աշխատող տնտեսությունների ծախքերն են ընկած գյուղատնտեսական արտադրանքի արժեքի և գնի հիմքում:

Հայտնի է, որ սովետական ագրարնիկ-տնտեսագետների մի մասը կանգնած է այն տեսակետի վրա, որ սոցիալիզմի պայմաններում գյուղատնտեսական արտադրանքի արժեքը և գինը, իբր, կարգավորվում են միջին պայմաններով, միջին ծախքերով: Տնտեսագետներից ոմանց կարծիքով գյուղատնտեսական արտադրանքի արժեքը որոշվում է վատագույն պայմաններով, իսկ գների հիմքում պետք է դրվեն միջին պայմանները, միջին ծախքերը: Եթե նույնիսկ մի կողմ թողնենք այդ դիրքի անհետևողականությունը, ապա հարց է առաջանում. եթե գինը պետք է համընկնի միմիայն արտադրության միջին ծախքերին, ապա այս դեպքում ի՞նչ պետք է անեն վատագույն պայմաններում աշխատող տնտեսությունները. չէ՞ որ նրանց արտադրանքն անհրաժեշտ է հասարակությանը, մթերվում (գնվում) է նրա կողմից, մինչդեռ ծախքերը, կարծես չեն ճանաչվում որպես հանրորեն անհրաժեշտ և հատուցման ենթակա: Այդ դեպքում ինչպե՞ս, ի՞նչ միջոցների հաշվին նրանք պետք է ապահովեն նորմալ կուտակումներ վերարտադրության համար:

Այս հարցին հիշյալ հեղինակները ոչ մի դրական պատասխան չեն տալիս: Չենք սխալվի, եթե ասենք, որ «միջին պայմանների կարգավորիչ դերի» տեսությունը փաստորեն բխել է գնագոյացման պրակտիկայի՝ ժամանակին թույլ տրված սխալներից ու թերություններից: Գների վերջին կարգավորումից հետո հազիվ թե հարկ լինի ապացուցելու, որ դրանց հիմքում ընկած են ոչ թե միջին, այլ արտադրության վատագույն պայմաններում կատարվող ծախքերը:

Տնտեսագետներից ոմանք այն տեսակետն են հայտնում, որ գյուղատնտեսական որոշ մթերքների գների բարձրացումը պետք է բացատրել ոչ թե արտադրության վատագույն պայմանների կարգավորիչ դերով (որը ժխտվում է նրանց կողմից), այլ պարզապես այս կամ այն ճյուղի արագ զարգացման նյութական խրախուսման նկատառումներով: Մենք համաձայն ենք այս մտքին, այն վերապահումով սակայն, որ նյութական խրախուսման նկատառումները ոչ մի կերպ չի կարելի հակադրել արտադրության վատթարագույն պայմանների կարգավորիչ դերին: Ավելին, կարելի է ասել, որ վատագույն պայմաններում աշխատող տնտեսությունների ծախքերի հաշվառումը և դրանց հատուցումը գնի մեջ ոչ այլ ինչ են, եթե ոչ գյուղատնտեսության բոլոր ճյուղերի նյութական խրախուսման օբյեկտիվ ընդհանուր տնտեսական հիմք:

Հատկանշական է այս տեսակետից, որ վերջին տարիների ընթացքում բարձրացվեցին ո՛չ միայն այն մթերքների գները, որոնց արտադրությունը նվազ եկամտաբեր էր և կամ ոչ եկամտաբեր (ինչպես, օրինակ, անասնապահական մթերքները), այլև մի շարք այնպիսի մթերքների, որոնք ընդհանուր առմամբ բավականին եկամտաբեր էին, օրինակ, տեխնիկական կուլտուրաներ, հացահատիկ և այլն: Օրինակ, մեկ տոննա հացահատիկի գնման գինը Միության կոլտնտեսություններում միջին հաշվով կազմում էր 74 ռուբլի, իսկ նրա ինքնարժեքը կոլտնտեսություններում՝ սովորաբար 37—45 ռուբլուց ոչ ավելի. այստեղից, հացահատիկի արտադրության միջին եկամտաբերությունը երկրի



digitised by A.R.A.R.@

կոլտնտեսություններում հասնում էր 75—100 տոկոսի, որը ցածր համարել չի կարելի, եթե ելնենք միջին ծախքերից։ Այնուամենայնիվ, հացահատիկի գրնման գինը բարձրացվեց։ Նույնը կարելի է ասել նաև տեխնիկական կուլտուրաների մասին (շաքարի ճակնդեղ, ծխախոտ, բամբակ), որոնք միջին ինքնարժեքի համեմատ բավականին բարձր եկամտաբեր ճյուղեր էին և, այսուհանդերձ, դրանց մթերման գները 1962—1963 թթ. բարձրացվեցին։

Գների այդպիսի կարգավորումը հավանորեն դժվար կլինի բացատրել, եթե ելնենք գնագոյացման ասպարեզում արտադրության «միջին ծախքերի կարգավորիչ դերի» տեսությունից։ «Միջին ծախքերի» դիրքերից ելնելով շատ մթերքների գները ո՛չ միայն չպետք է բարձրացվեին, այլև թերևս հարկ էր դրանք իջեցնել... Մինչդեռ գնման գների բարձրացումը միանգամայն հասկանալի և օրինաչափ է, եթե նկատի ունենանք բնա-տնտեսական վատագույն պայմաններում աշխատող տնտեսությունների ծախքերի փոխհատուցման օբյեկտիվ անհրաժեշտությունը, այն պարզ հանգամանքը, որ, ինչպես տեսանք վերևում, գյուղատնտեսական արտադրանքի մի շարք հիմնական տեսակների գծով վատագույն գոտիներում աշխատող տնտեսությունների ծախքերը մինչև վերջերս կամ չէին հատուցվում, կամ հատուցվում էին ոչ լրիվ։

Չափազանց կարևոր է այն հանգամանքը, որ սահմանված է մթերումների կայուն առաջադրանք՝ մինչև 1970 թվականը։ Իսկ արտապլանային վաճառքի համար պետությունը սահմանել է զգալի հավելումներ, որոնք մթերման հիմնական գնից բարձր են 1,5 և ավելի անգամ։ Հասկանալի է, որ դա նյութապես խրախուսում է գյուղատնտեսական արտադրանքի ավելացումը բոլոր տնտեսություններում և, առանձնապես, կարևոր նշանակություն ունի տնտեսապես թույլ կոլտնտեսությունների համար, քանի որ հնարավորություն և իրավունք է տալիս մթերումներից ավելի ստացած արտադրանքը տնօրինելու և օգտագործելու տնտեսության ներքին կարիքների համար՝ կոլտնտեսականների վարձատրության ավելացման, հանրային ֆոնդերի զարգացման համար։ Մյուս կողմից, արտապլանային վաճառքի համար սահմանված հավելումներից խրախուսված կոլտնտեսությունները ձգտում են ավելի ու ավելի շատ արտադրանք հանձնել պետությանը և, քանի որ տնտեսապես հարուստ և լավ պայմաններում աշխատող տնտեսություններն ավելի մեծ հնարավորություն ունեն արտապլանային վաճառքի համար, ապա և պարզ է, որ գյուղատնտեսական արտադրանքի մթերումների ընդհանուր ծավալի մեջ ակնհայտորեն կբարձրանա հենց այդպիսի տնտեսությունների տեսակարար կշիռն ու դերը, և հետզհետե կթուլանա (կնվազի) այժմ ետ մնացող, թույլ զարգացած տնտեսությունների կշիռը։ Դրանով իսկ հնարավորություն կընձեռվի ժամանակին հրաժարվելու այդպիսի տնտեսություններից կատարվող կենտրոնացված մթերումներից, նկատի ունենալով, որ այդ թանկ է նստում հասարակությանը։ Դա ձեռնտու կլինի և՛ այդպիսի տնտեսությունների, և՛ համաժողովրդական շահերի տեսակետից։

Այդ, իհարկե, չի նշանակում, որ նման տնտեսությունները առհասարակ չպետք է մասնակցեն գյուղատնտեսական մթերքների գծով հասարակության պահանջմունքների բավարարմանը։ Քանի որ գյուղատնտեսական հիմնական արտադրամիջոցի՝ հողի և հատկապես լավագույն հողերի քանակը սահմանափակ է, ապա և օբյեկտիվ տնտեսական անհրաժեշտություն է նաև վատթարագույն հողերի վրա աշխատող տնտեսությունների մասնակցությունը գյուղատն–



տեսական մթերքների գծով հասարակության պահանջմունքների բավարարմանը։ Անհրաժեշտ է միայն ավելի ճիշտ որոշել և պլանավորել այդ մասնակցությունը, որը պետք է համապատասխանի և նպաստի տվյալ գոտու ռացիոնալ մասնագիտացմանը։

Ընդհանրապես պետք է ասել, որ հասարակությունը կարգավորում (ազդում) է գյուղատնտեսության զարգացումը ո՛չ միայն գների, այլ մթերումների պլանավորման միջոցով։ Կյանքը ցույց է տալիս, որ եթե այս կամ այն մթերքի մթերման գինը չի հատուցում նրա գոտիական ինքնարժեքը և նորմալ կուտակումները, վերջին հաշվով, հարկ է լինում կա՛մ բարձրացնել գինը և կամ հրաժարվել այդ մթերքի մթերումներից տվյալ գոտում (մարզում, ռեսպուբլիկայում)։ Ընդ որում եթե մի դեպքում որոշ մթերքների գծով անհրաժեշտ և նպատակահարմար էր գների բարձրացումը՝ տվյալ ճյուղի ապրանքային արտադրանքն ավելացնելու նպատակով, ապա մյուս դեպքում պետության և տեղական շահերի տեսակետից ավելի նպատակահարմար կարող է լինել ազատել տվյալ տնտեսական շրջանը այս կամ այն արտադրանքի մթերումների պլանից, քան չափազանց մեծ միջոցներ ծախսել դրա արտադրության և մթերումների վրա։ Մեր ռեսպուբլիկայում այդպիսի մթերքներից են, օրինակ, հացահատիկը, բամբակը։ Բավական է ասել, որ այդ մթերքներից առաջինը նույնիսկ գնման նոր գների պայմաններում շատ գոտիներում հավանորեն կմնա ոչ եկամտաբեր, մյուս կողմից՝ ռեսպուբլիկայի գյուղատնտեսության համար ընդհանուր առմամբ չունի ապրանքային նշանակություն, իսկ երկրորդը չնայած և՛ եկամտաբեր է և՛ ապրանքային, սակայն չի համապատասխանում ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հիմնական մասնագիտացմանը։

Ռեսպուբլիկայի հացահատիկային կուլտուրաների կենտրոնացված մթերումների վերացումը, ինչպես նաև գյուղատնտեսական մի շարք այլ մթերքների մթերումների պլանավորումն ավելի հետևողական կերպով պետք է ենթարկվի և օժանդակի գյուղատնտեսության ավելի խոր մասնագիտացմանը։



Մթերման նոր գների և մթերումների նոր սիստեմի պայմաններում կարևոր, առօրյա նշանակություն է ստանում զուտ եկամուտների և դիֆերենցիալ ռենտայի բաշխման, կարգավորման հարցը։ Չքննելով այստեղ պետության ու կոլտնտեսությունների միջև դիֆերենցիալ ռենտայի բաշխման հարցն ըստ էության, մի փոքր կանգ առնենք նրա այն կողմի վրա, որն անմիջականորեն կապված է գների հետ։

Բանն այն է, որ եթե գները սահմանելիս հաշվի են առնվում գյուղատնտեսության վատագույն պայմաններում կատարած ծախքերը, ապա միջին և, հատկապես, լավագույն պայմաններում աշխատող տնտեսությունները, նույն գներով վաճառելով իրենց արտադրանքը, կիրացնեն և իրացնում են ավել կամ պակաս չափով լրացուցիչ զուտ եկամուտներ (ռենտա), որը չի կարելի լիովին թողնել նրանց տրամադրության տակ, բայց և չի կարելի լիովին վերցնել նրանցից. այդ եկամուտները պետք է բաշխվեն պետության և կոլտնտեսությունների միջև։

Դիֆերենցիալ ռենտայի ճիշտ բաշխումը շատ բանով է կախված այդ բաշխման կոնկրետ եղանակից, որն օբյեկտիվորեն կարող է տեղի ունենալ



digitised by A.R.A.R.@

հիմնականում երկու ուղիով։ Դրանցից առաջինը՝ գների հետագա շերտավորումն է ըստ գոտիների և դրանց ներսում, երկրորդը՝ ռենտային եկամուտների գանձումն է՝ եկամտահարկի միջոցով։ Հայտնի է, որ կոլտնտեսային և սովխոզային արտադրանքի մթերման գներն այժմ շերտավորված են ըստ երկրի զանազան բնա-տնտեսական գոտիների. վերջերս այդ շերտավորումն ավելի է կատարելագործվել։ Այսպես, Ռուսաստանյան ֆեդերացիայում 1964 թվականից գյուղատնտեսական հիմնական մթերքների գծով սահմանված են 23 գոտի։ Հայաստանում այս տարվանից բոլոր մթերքների գծով բոլոր տնտեսությունների համար սահմանված է մեկ միասնական գին, բացառությամբ ոչխարի մսի, որի համար գոյություն ունի երկու գոտի (Արարատյան դաշտ և լեռնային շրջաններ)։ Եվ այդ, մեր կարծիքով, միանգամայն ճիշտ է, համապատասխանում է գների տնտեսական էությանը։ Սակայն որոշ տնտեսագետների կարծիքով, գների այդ շերտավորումը անբավարար է, այն պետք է խորացնել և այնպես անել, որ յուրաքանչյուր գոտու, շրջանի և նույնիսկ յուրաքանչյուր տնտեսության համար սահմանվի մի գին, ելնելով տվյալ տնտեսության անհատական ծախքերից։

Անհատական գների ուղին է այդ։

Մեր կարծիքով, այդ ուղին անընդունելի է, քանի որ սուբյեկտիվիզմի և կամայականության լայն ասպարեզ կարող է բացել։ Կոնկրետ կիրառման դեպքում անհատական գինը նշանակում է՝ որքան ցածր ինքնարժեքով արտադրես, համապատասխանորեն այնքան ցածր է լինելու գինը և, ընդհակառակը, ուստի և ոչ մի տնտեսություն չի ձգտի ինտենսիվացնել արտադրությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Դա նշանակում է, որ նման գների միջոցով հասարակությունը կվերցնի գյուղատնտեսությունից նրա մեջ ստեղծվող դիֆերենցիալ ռենտայի ամբողջ գումարը, մի բան, որն արմատապես հակասում է պարտիայի քաղաքականությանը, պետության և կոլտնտեսությունների շահերի զուգակցման սկզբունքին։ Անհատական գների սահմանման հեղինակները ցանկանում են դիֆերենցիալ ռենտայի բաշխման պրոբլեմի ամբողջ ծանրությունը դնել գների սիստեմի վրա, որը կնշանակեր գների էության և ֆունկցիաների խեղաթյուրում։

Հայտնի է, որ ապրանքի արժեքի և գնի հիմքում ընկած են նրա արտադրության ոչ թե անհատական, այլ հասարակական ծախքերը։ Արտադրության հասարակական ծախքերի հաշվառումն ու հատուցումն էլ կազմում են գնի հիմնական ֆունկցիան։ Իհարկե, իրական կյանքում գինը հաճախ շեղվում է արժեքից։ Ինչ վերաբերում է մթերման գներին, ապա դրանք, որպես կանոն, ցածր են գյուղատնտեսական արտադրանքի արժեքից։ Այդ միջոցով գյուղատնտեսության մեջ ստեղծվող զուտ եկամուտների որոշ մասը վերաբաշխվում է պետության և գյուղատնտեսական ձեռնարկությունների միջև։ Այստեղ մենք արդեն գործ ունենք գների վերաբաշխիչ դերի (ֆունկցիայի) հետ։

Պետք է ասել, որ գյուղատնտեսության եկամուտների բաշխումը և վերաբաշխումը գների միջոցով կարևոր դեր են խաղացել երկրում կամ նրա առանձին շրջաններում այս կամ այն կարևոր մթերքի արտադրությանը զարկ տալու տեսակետից, նրա համար ավելի բարենպաստ նյութական պայմաններ ստեղծելու միջոցով։ Միաժամանակ այժմ արդեն չի կարելի հրապուրվել գների այդ վերաբաշխիչ ֆունկցիայով և չտեսնել, որ իրական կյանքում այն հարուցել է մի շարք բացասական երևույթներ։ Վերջին տարիների գների կարգավորման



փորձը վկայում է, որ տնտեսության զարգացման համար լավագույն պայմաններ են ստեղծվում այն դեպքում, երբ ապրանքի գինը մերձենում է արժեքին, և ոչ թե խիստ տատանվում նրանից։ Գնի այդ հիմնական ֆունկցիան գնալով ավելի է գերիշխում նրա վերաբաշխիչ ֆունկցիաների վրա և դա չափազանց առաջադիմական տնտեսական երևույթ է։ Այդ տեսակետից միանգամայն ճիշտ պետք է համարել այն բանը, որ գները մեզ մոտ սահմանված են ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսությունների համար և կայուն, անփոփոխ են լինելու մի շարք տարիների ընթացքում։ Այդպիսի (և ոչ թե անհատական) գների սահմանումը, մթերումների նոր սիստեմի հետ միասին, կխթանի արտադրության ավելացումը և նրա ծախքերի հարաբերական իջեցումը։

Այժմ ստեղծված նոր պայմանները հնարավորություն են տալիս դիֆերենցիալ ռենտայի բաշխումը կատարել գլխավորապես եկամտահարկի միջոցով։

Պետության նոր որոշման համաձայն այսուհետև (սկսած 1966 թվականից) եկամտահարկը կհաշվարկվի ոչ թե կոլտնտեսությունների համախառն եկամտից, այլ զուտ եկամտից՝ երբ տնտեսության եկամտաբերությունը (այսինքն՝ զուտ եկամտի հարաբերությունը ծախքերին) անցնում է 15 տոկոսից և կոլտնտեսականների վարձատրության ֆոնդից՝ եթե մեկ աշխատողի միջին ամսական վաստակն անցնում է 60 ռուբլուց։ Դա նշանակում է, որ երբ տնտեսության եկամտաբերությունն ու նրա անդամների վարձատրությունը ցածր են նշված հասարակական մակարդակից, տնտեսությունից եկամտահարկ չի գանձվելու։ Այսպիսով, եթե մինչև այժմ եկամտահարկը գանձվում էր բոլոր կոլտնտեսություններից՝ անկախ նրանց շահութաբերության մակարդակից, նույնիսկ անկախ այն բանից՝ զուտ եկամուտ տնտեսությունն ունեցել է թե ոչ, ապա այժմ նախանշվում է զուտ եկամտի և կոլտնտեսականների վարձատրության որոշակի նվազագույն (այսպես կոչված՝ օպտիմալ) սահմանը։ Օպտիմալ չափի կամ դրանից պակաս ստացվող զուտ եկամուտները հարկման ենթակա չեն։ Եկամտահարկ կգանձվի միայն այդ նորմայից ավելի ստացվող, լրացուցիչ զուտ եկամուտներից (ռենտայից)։

Ինչպես տեսնում ենք, լրացուցիչ զուտ եկամուտների կամ դիֆերենցիալ ռենտայի բաշխման խնդիրը այսուհետև հիմնականում դրվում է ոչ թե գների, այլ եկամտահարկի վրա և, կարելի է չկասկածել, որ դա ավելի նպաստավոր պայմաններ կստեղծի հանրային տնտեսության վերելքի համար։ Դա իհարկե, չի նշանակում, որ գների, եկամտահարկի և կոլտնտեսային էկոնոմիկայի մյուս հարցերն այսուհետև պետք է համարել մեկընդմիշտ և լիովին լուծված։ Տնտեսության զարգացման ընթացքում, անշուշտ, կծագեն շատ հարցեր, օրինակ, այն հարցը, թե ո՞րն է տարբեր մթերքների գների ճիշտ հարաբերակցությունը, այնուհետև՝ զուտ եկամտի ո՞ր չափը կամ տոկոսը պետք է համարել հանրորեն անհրաժեշտ (օպտիմալ) և ո՞րը՝ դիֆերենցիալ ռենտա, ո՞րն է կոլտնտեսականի վարձատրության հանրորեն անհրաժեշտ կամ նորմալ մակարդակը։

Սակայն կարևորն այն է, որ այդ հարցերն արդեն դրված են տնտեսական քաղաքականության առաջին պլանի վրա և տրված է դրանց լուծման միանգամայն նոր, տնտեսապես հիմնավոր սկզբունքը, որի կենսագործումը նոր էտապ է պետության և կոլտնտեսությունների միջև տնտեսական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման ասպարեզում։

digitised by A.R.A.R.@

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԳԼԽԱՎՈՐԸ ԿԱՏԱՐՄԱՆ ՍՏՈՒԳՈՒՄՆ Է

Պարտիայի ու կառավարության դիրեկտիվների, ինչպես նաև սեփական որոշումների կատարման սիստեմատիկ ստուգումը յուրաքանչյուր պարտիական կազմակերպության աշխատանքի անհրաժեշտ մասն է, առանց որի աններևակայելի է պարտիայի քաղաքականության կենսագործումը, անհնար կադրերի դաստիարակությունը: Վլադիմիր Իլյիչ Լենինը կազմակերպական աշխատանքում գլխավորը համարում էր մարդկանց ընտրությունը և կատարման ստուգումը. առանց դրա ամեն մի, նույնիսկ լավ որոշում կարող է մնալ թղթի վրա:

Գործելով Վ. Ի. Լենինի ցուցումների համաձայն, պարտիայի Գորիսի շրջանային կոմիտեի բյուրոն հաճախ է անդրադառնում իր ընդունած որոշումների կատարմանը, հետամուտ լինում, որ այն ամբողջապես գործի վերածվի: Նրա պատասխանատու աշխատողներն իրենց ամենօրյա գործունեությամբ օգնում են սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ բարձր հիմքերի վրա դնելու կատարման ստուգումը:

Շրջկոմի բյուրոներում, պլենումներում, ակտիվի ժողովներում հաճախակի քննարկվում է վերադաս օրգանների և սեփական որոշումների կատարման ընթացքը, լսվում են պարտկազմակերպությունների բյուրոների հաշվետվությունները և նշվում միջոցառումներ՝ գոյություն ունեցող թերությունները վերացնելու համար:

Շրջանի պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր լավ է դրված կատարման ստուգումը, գործերը հաջող են ընթանում և հակառակը: Խնածախ գյուղի Դիմիտրովի անվան կոլտնտեսությունը Գորիսի շրջանի մեծ տնտեսություններից է: Ցածր էին նրա արտադրական ցուցանիշները 1963 թվականին: Եվ ահա 1964 թվականի մարտին սկզբնական պարտիական կազմակերպությունը հանգամանորեն քննարկեց այդ հարցը: Կոմունիստների ակտիվ մասնակցությամբ հանգամանորեն վերլուծվեցին անհաջողության պատճառները, բացահայտվեցին չօգտագործված ռեզերվները, կոլեկտիվ կերպով մշակեցին կոնկրետ, գործարար որոշում, ուր որոշակի նշված էին խնդիրները, կատարման կոնկրետ ժամկետները և կատարողները: Պարտիական կազմակերպությունը բոլոր կոմունիստներին ուղարկեց արտադրության վճռական տեղամասերը, աշխուժացրեց պարտիական խմբերի աշխատանքը, բարձրացնելով նրանց պատասխանատվությունը՝ ընդունված որոշման կատարման համար:

Հետագա ամիսներին պարտիական կազմակերպությունն ընթացիկ շատ



հարցերի հետ մեկտեղ, սիստեմատիկաբար զբաղվում էր ընդունված որոշման կատարման ստուգմամբ, երևան բերում առանձին անձանց թերացումներն իրենց պարտականությունների կատարման գործում, օգնում էր նրանց, մոբիլիզացնում կոմունիստներին՝ իրենց լավագույն աշխատանքով օրինակ ծառայելու մյուսներին:

Կատարման ստուգման ընթացքում պարզվեց, որ հացահատիկային կուլտուրաների ցանքերը խիստ տուժել են բնակլիմայական անբարենպաստ պայմաններից, հացաբույսերի մի մասը ցրտահարվել է, մյուս մասն էլ՝ նվազ աճել. վտանգված էր բերքատվության առաջադրանքի կատարումը: Պարտիական կազմակերպությունը նոր միջոցառումներ մշակեց՝ աշնանացան ցանքատարածություններում գարնանացանով վերացանք կատարել, լրացուցիչ քիմիական պարարտանյութեր և հերբիցիդներ օգտագործել: Այդ միջոցառումները կատարվեցին՝ դաշտ տեղափոխվեց 3500 ցենտներ հանքային և 2500 տոննա օրգանական պարարտանյութ: Քիմիական միջոցներով ոչնչացվեցին մոլախոտերը: Ցանքերը լավ աճեցին և երբ տնտեսական տարին ավարտվեց, պարզվեց, որ կոլտնտեսությունը ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 15 ցենտներ հացահատիկ, կամ պլանով նախատեսվածից 5 ցենտներով ավելի:

Կատարման սիստեմատիկ ստուգումից պարզվեց, որ ոչխարաբուծական ֆերմայում ինչպես հարկն է չի կատարվում պարտիական կազմակերպության որոշումը, ֆերմայի վարիչ Սեդրակ Բալասանյանն աշխատանքում իրեն չի արդարացնում: Պարտիական կազմակերպությունն անդրադարձավ այդ հարցին, ֆերմայի վարիչին հեռացրեց աշխատանքից, նրա փոխարեն առաջ քաշեց կոմունիստ, երիտասարդ մասնագետ Սերգեյ Պետրոսյանին: Ջանասիրաբար նվիրվելով գործին, ոգի հանելով ֆերմայի բոլոր աշխատողներին, ընկ. Պետրոսյանը կարողացավ հասնել իրենց առջև դրված խնդիրների լուծմանը: Ավելացավ անասունների գլխաքանակը, բարձրացավ նրանց մթերատվությունը: Այսպիսով, շնորհիվ կատարման ստուգման լավ դրվածքի, Խնածախի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը կարողացավ ապահովել ոչ միայն նշված, այլև ընդունված մյուս որոշումների կատարումը, որով պատշաճ պայմաններ ստեղծեց հանրային ունեցվածքի ավելացման, բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման համար:

Որոշումների կատարման ստուգումը լավ է դրված նաև շրջանի Տեղ, Կոռնիձոր գյուղերի կոլտնտեսությունների, Գորիսի սովխոզի և շատ ուրիշ պարտիական կազմակերպություններում, որոնք ապահովելով պարտիայի ու կառավարության, ինչպես նաև սեփական որոշումների կատարումը, կարողացել են տնտեսությունները դուրս բերել վերելքի ուղի:

Փորձը ցույց է տալիս, որ կատարման ստուգումն այն ժամանակ է գործարար, արդյունավետ, երբ այն հաջորդում է ընդունված որոշմանը, անմիջապես մոբիլիզացնելով կոմունիստների, աշխատավորների ուժերը: Լավ կազմակերպված կատարման ստուգումը բարձրացնում է կադրերի պատասխանատվությունը, մարդկանց դարձնում կարգապահ, գործունյա, նպաստում նրանց աշխատանքի մեթոդների կատարելագործմանը, ապահովում տնտեսական-քաղաքական խնդիրների հաջող լուծումը:

Տեղ գյուղի կոլտնտեսությունը տարիներ շարունակ չէր կատարում ծխախոտի հումքի արտադրության և վաճառքի պետական առաջադրանքները: Հար-



digitised by A.R.A.R.@

մար չէին ծխախոտի մշակության համար առանձնացված հողակտորները: դրանք ժամանակին և պատշաճ ձևով չէին մշակվում: Այս հարցն անցյալ տարվա գարնանը քննարկվեց գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպության ժողովում, որը որոշեց՝ Շորին ջուր կոչվող հանդամասով անօգուտ հոսող ջրերը խողովակներով բերել Խանդակ և Կալուն բլուր կոչվող հանդամասերը, կառուցել ջրամբար և կուտակված ջրով ոռոգել 10 հեկտար հող՝ այն օգտագործելով ծխախոտի մշակության համար:

Որոշումից անմիջապես հետո սկսվեց շինարարությունը: Եվ կատարման ստուգման ճիշտ կազմակերպման շնորհիվ մեկ ամսում ավարտվեց շինարարությունը: Կոլտնտեսությունը ոռոգվող նոր հողամասում մշակեց ծխախոտ. աշնանը յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 22 ցենտներ բերք և պետությանը վաճառեց 220 ցենտներ բարձրորակ հումք՝ առաջին անգամ կատարելով ծխախոտի հումքի արտադրության և վաճառքի պլանները:

Պարտիական կազմակերպությունն այս տարվա հունվարին որոշեց այդ տերիտորիայում նոր, երկրորդ, բայց ավելի մեծ ջրամբար կառուցել, որի շնորհիվ ծխախոտի պլանտացիաները կհասնեն 20 հեկտարի: Կտնկվի նաև 10 հեկտար խնձորի նոր այգի: Որոշումից անմիջապես հետո պարտիական կազմակերպության բյուրոն ձեռնամուխ եղավ դրա կատարմանը: Չնայած ցրտերին, ծավալվեցին շինարարական աշխատանքներ և գարունը բացվելուն պես շահագործման հանձնվեց նոր ջրամբարը: Այդպիսով կկենսագործվի ծխախոտի բարձր բերք ստանալու մասին պարտիական կազմակերպության որոշումը:

Կատարման ստուգումն արդյունավետ է, երբ այն կազմակերպվում է ոչ թե էպիզոդիկ, առանձին որոշումների կատարման ուղղությամբ, այլ սիստեմատիկաբար, իր ոլորտն առնելով տնտեսական, կուլտուրական շինարարության, պարտիական ու սովետական օրգանների աշխատանքի բոլոր բնագավառները: Այնտեղ, ուր խախտվում է այս պահանջը, անտեսվում է կատարման ստուգումը, պարտիական կազմակերպության որոշումները, թեկուզ գրված լինեն շատ գեղեցիկ, վեր են ածվում թղթի դատարկ կտորի: Այսպես, օրինակ՝ Բայանդուր գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպության ժողովը, քննելով ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի (1964 թ.) արդյունքները, որոշել էր՝ գյուղատնտեսության մեջ լայնորեն օգտագործել քիմիական պարարտանյութերը, հացահատիկի դաշտերը պարարտացնել ըստ ագրոքիմիական քարտեզների և դրա շնորհիվ մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել 15 ցենտների: Պարտիական կազմակերպությունը որոշել էր բարձրացնել նաև կովերի ու ոչխարների մթերատվությունը, կատարել գյուղատնտեսական տարվա բոլոր առաջադրանքները: Այս ամենը, անշուշտ, լավ ցանկություն էր: Պարտիական կազմակերպության որոշումը բխում էր ռեալ հնարավորություններից: Բայց ի՞նչ արվեց դրանից հետո: Պարզապես ոչինչ: Պարտիական կազմակերպության բյուրոն (քարտուղար Շ. Ամիրյան) մոռացավ այդ որոշման մասին, գեթ մեկ անգամ չստուգվեց կատարման ընթացքը: Արդյունքը եղավ այն, որ պարտիական կազմակերպության որոշումը մնաց անկատար:

Տնտեսության արդյունքները գոհացուցիչ չէին նաև անասնապահության բնագավառում: Նախորդ տարվա համեմատությամբ ոչխարների թիվը պակասեց հազար գլխով, բրդի արտադրությունը՝ 35, կաթի համախառն արտադրանքը՝ 1200 ցենտներով, յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 321 կիլոգրամով և այլն: Թերակատարվեցին նաև տնտեսության մյուս



ճյուղերի պլանները: Պարտկազմակերպության քարտուղար Շ. Ամիրյանը, կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Ներսիսյանը, կոլտնտեսության ագրոնոմ Գ. Միրզոյանը, դաշտավարության բրիգադավար Ա. Ազարեկյանը, ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Ս. Լալայանը, կովաբուծական ֆերմայի վարիչ Ա. Առաքելյանը և կոլտնտեսության մյուս ղեկավարները՝ բոլորն էլ կոմունիստներ, օգտվելով կատարման ստուգման բացակայությունից, թերացան իրենց պարտականություններում, որի հետևանքով չկատարվեցին պարտիական կազմակերպության որոշումները, իսկ վերջինս պատասխանատվության չենթարկեց թերացողներին:

Նման վիճակ է տիրում նաև Գորիսի փոքր էլեկտրաշարժիչների գործարանի պարտիական կազմակերպությունում: Դեռևս անցյալ տարի այստեղ մի քանի անգամ անդրադարձան արտադրանքի որակին: Հոկտեմբերի 15-ին պարտիական ժողովը որոշեց՝ բաժինների և օժանդակ ցեխերի ուժերի մոբիլիզացման միջոցով մինչև տարվա վերջը բարելավել արտադրանքի որակը, պահանջել դիրեկցիայից՝ վերադաս օրգանների միջոցով լուծել պահեստում կուտակված անորակ շարժիչների արտադրանքի հարցը:

Մեկ ամիս անց՝ նոյեմբերի 16-ին, նորից անդրադառնալով այդ հարցին, պարտկազմակերպությունը որոշեց՝ պարտավորեցնել տեղամասերի վարպետներին ու բանվորներին՝ պայքարել խոտանի վերացման, նյութերի խնայողաբար օգտագործման և որակի բարձրացման համար: Երկու որոշումներն էլ մնացին թղթի վրա, որովհետև դրանց ընդունումից հետո ոչ-ոք չանդրադարձավ դրանց և այդ հույժ կարևոր ու տեղին որոշումները մնացին օդում կախված: Իսկ տարվա վերջին գործարանի պահեստում կուտակվեցին ավելի քան 7 հազար անորակ շարժիչներ, որոնցից մինչև օրս էլ պատվիրատուները հրաժարվում են:

Կատարման ստուգմանը ձևական վերաբերմունք է ցույց տրվում նաև Տաթև գյուղի «Իսկրա» կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում: 1964 թվականին այստեղ բազմիցս անդրադարձել են անասնապահության զարգացման հարցերին: Առաջին անգամ ընդունվեց մեկ էջանոց որոշում, որից հետո կազմակերպվեց, այսպես ասած՝ կատարման ստուգում: Թերությունները արձանագրելուց հետո, պարտիական կազմակերպությունն ընդունեց նոր որոշում, այս անգամ մեքենագրված երկու էջի սահմաններում: Այդ էլ գործին չօգնեց: Հարկ եղավ նորից ստուգել որոշման կատարումը: Նույն խնդրի վերաբերյալ պարտիական կազմակերպությունն ընդունեց երրորդ որոշումը՝ այս անգամ արդեն մեքենագրական չորս էջ: Բայց գործն էլի տեղից չշարժվեց, օրեցօր ավելանում էր անասունների անկումը, պակասում կաթի արտադրությունը: Պարտիական կազմակերպությունը հարկադրված կրկին անդրադարձավ այդ հարցին: Նշանակվեց հանձնաժողով, որը մանրամասն «ուսումնասիրեց» անասնապահության վիճակը և ներկայացրեց 10 էջանոց զեկուցագիր: Պարտիական կազմակերպությունն այն վերածեց նոր որոշման: Եվ այսպես, յոթ անգամ ստուգելով միևնույն հարցի շուրջ ընդունված որոշման կատարման ընթացքը, արդյունքը լինում էր միայն «որոշման» ծավալի մեծացումը, իսկ գործերի վիճակը գնալով վատանում էր:

Կոլտնտեսության խոշոր եղջերավոր անասունների անկումը հասավ 23, ոչխարներինը՝ 50 տոկոսի: Ի՞նչն էր պատճառը: Կովաբուծական ֆերմայի վարիչ Ս. Մանուչարյանը, ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Վ. Խաչատրյանը,



digitised by A.R.A.R.@

կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Մեսրոպյանը՝ բոլորն էլ կոմունիստներ, լավ չէին նախապատրաստել անասունների մսուրային շրջանը, անբավարար էր կերը, ֆերմաներն ապահովված չէին անասնապահներով: Կատարման ստուգման ընթացքում ոչ ոք չէր համարձակվում ցույց տալ նրանց սխալները, նշել դրանց վերացման ուղիները, կամ պատասխանատվության ենթարկել այդ աշխատողներին:

Շրջկոմի բյուրոն քննարկեց նշված կոմունիստների հարցը, նրանց ենթարկեց պարտիական պատասխանատվության, լայն միջոցառումներ մշակեց հետագայում անասունների անկում թույլ չտալու, անասնաբուծության վարման կուլտուրան բարձր հիմքերի վրա դնելու համար: Այդ որոշման մասին տեղյակ պահվեց գյուղի սկզբնական պարտիական կազմակերպությանը: Շրջկոմի աշխատողների միջոցով սովորեցվեց պարտկազմակերպության բյուրոյի անդամներին և քարտուղարներին, թե ինչպես պետք է կազմակերպել որոշումների կատարման ստուգումը:

Անվերջ քննություններն ու ստուգումները, միևնույն բանաձևերի անվերջ արտագրություններն ու դրանք «որպես կատարման ստուգում» ներկայացնելը՝ բյուրոկրատական, ֆորմալ, գրասենյակային աշխատանքի ոճ է: Ստուգել՝ նշանակում է կազմակերպել կատարումը, և ոչ միայն արձանագրել թերությունները, այլև վերացնել այդպիսիք:

Պարտիան սովորեցնում է, որ լավ կազմակերպված կատարման ստուգումը միաժամանակ կադրերին դաստիարակում է իրենց սեփական սխալների վրա, ուղղում դրանք, թույլ չի տալիս նրանց մեծամտանալ առանձին փոքրիկ հաջողություններից դառնալ անկարգապահ և ձախողել գործերը:

Խնձորեսկի «Լենինյան ուղի» կոլտնտեսությունում երկար ժամանակ ոչխարաբուծական ֆերմայի վարիչն էր կոմունիստ Ս. Խաչատրյանը: Նա վատ աշխատող չէր, հասկանում էր իր գործը, խրախուսվում պարտիայի շրջանային կոմիտեի և շրջսովետի կողմից՝ բազմիցս ընտրվելով պարտշրջկոմի պլենումի անդամ, շրջսովետի դեպուտատ, մասնակցում էր ռեսպուբլիկական խորհրդակցություններին, ելույթներ ունենում իր փորձի մասին: Նրա մասին երկարաշունչ հոդվածներ ու ակնարկներ էին գրվում շրջանային ու ռեսպուբլիկական թերթերում: Ցավոք, այդ ամենից հետո Խաչատրյանը դուրս մնաց վերահսկողության ոլորտից, մեծամտացավ, սկսեց հաշվի չնստել պարտիական, սովետական կազմակերպությունների հետ: Ոչխարաբուծության զարգացման կարևոր հարցերն սկսեց միանձնյա լուծել՝ անտեսելով անվանի հովիվների, մասնագետների, գյուղի և շրջանի ղեկավարների գործին օգնող խորհուրդները: Նա թույլ տվեց կոպիտ սխալներ, որի հետևանքով կոլտնտեսության ֆերմայում միայն 1964 թվականին տեղի ունեցավ 3500 գլուխ ոչխարի անկում, մեկ տարում կոլտնտեսությանը փաստորեն հասավ մոտ կես միլիոն ռուբլու վնաս: Շրջկոմի բյուրոն աշխատանքից ազատեց կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. Հ. Ալեքսանյանին, ոչխարաբուծական ֆերմայի վարիչ ընկ. Ս. Խաչատրյանին և նրանց ենթարկեց պարտիական խիստ տույժի: Նրանց փոխարեն առաջ քաշելով մասնագետ, գործունյա կադրերի, որոնք այժմ վատ չեն աշխատում անտեսությունը բարձրացնելու ուղղությամբ:

Դժբախտաբար այսպիսի փաստերը եզակի չեն: Որոշ պարտիական կազմակերպությունների քարտուղարներ կատարման ստուգմանը վերաբերվում են որպես ադմինիստրատոր: Արավուս գյուղի պարտկազմակերպության քարտու-



ղար Մ. Ավագյանը, փոխանակ կոմունիստների և գյուղի բոլոր աշխատավորների ուժերը նպատակամղելու վերադաս օրգանների և իրենց որոշումների կենսագործմանը, ինքն է աշխատում փոխարինել կոլտնտեսության նախագահին, ֆերմայի վարիչին, բրիգադավարին, հաշվապահին, թերթի խմբկոլի նախագահին: Նա համոզված է, որ միայն ինքն իրավունք ունի կարգադրություններ անելու, ցուցումներ տալու: Մ. Ավագյանը մոռանում է, որ պարտիական կազմակերպության քարտուղարը վարչարարելու իրավունք չունի, որ նրա ուժը քաղաքական ղեկավարի հեղինակության մեջ է, նա պետք է կազմակերպի, մոբիլիզացնի կոլեկտիվին՝ իրականացնելու պարտիայի քաղաքականությունը:

Ամեն մի ճիշտ կազմված որոշում, որոշակի կենսափորձի արտահայտությունն է: Ստուգել նման որոշման կատարումը՝ նշանակում է ստորին աշխատողների հետ միասին վերլուծել իրավիճակը, ուսումնասիրել կենդանի փորձը, ուղի գտնել թերությունների վերացման համար, ցույց տալ, թե ինչպես պետք է շտկել գործը. այդ կարելի է անել հենվելով միայն առաջավոր մարդկանց փորձի վրա: Վ. Ի. Լենինը բոլոր կազմակերպիչներին, պրոպագանդիստներին ու ագիտատորներին սովորեցնում էր՝ ավելի մեծ ուշադրություն նվիրել կոմունիստական շինարարության ամենահասարակ, բայց կենդանի, կյանքից առնված, կյանքում ստուգված փաստերին (տե՛ս, երկեր, հ. 29, էջ՝ 512):

Կոռնիձոր գյուղի Կիրովի անվան կոլտնտեսության պարտիական կազմակերպության անդամներից շատերը երկար ժամանակ այն կարծիքին էին, որ իրենց անտեսությունը պետք է մասնագիտանա ոչխարաբուծության ուղղությամբ. նրանց տրվում էին մեծ պլաններ, որոնք, սակայն, չէին կատարվում՝ կոնկրետ պայմաններ չլինելու պատճառով: Մինչդեռ կոլտնտեսությունը լայն հնարավորություններ ուներ հացահատիկի արտադրության և խաղողագործության զարգացման համար, բայց այդ ուղղությամբ ոչինչ չէր արվում, դրան խանգարում էին առանձին ընկերների կենսափորձի պակասությունը և արտադրական ճյուղերի բազում տարիների արդյունքների օբյեկտիվ վերլուծության բացակայությունը: Երբ գյուղի պարտիական կազմակերպության բյուրոն պարտշրջկոմի աշխատողների հետ միասին անցկացրեց նախկինում իր կայացրած որոշման կատարման ստուգումը, զրույցներ կազմակերպվեցին փորձված կոլտնտեսականների հետ, վերլուծեցին մի քանի տարվա աշխատանքի արդյունքները, ուսումնասիրվեց կենդանի փորձը, պարզվեց, որ կոլտնտեսությունն ունի մեքենահարմար ընդարձակ, բերրի վարելահողեր ու խաղողի այգիներ, որոնց յուրաքանչյուր հեկտարից ամեն տարի ստացվում է 16—20 ցենտներ հացահատիկ, 80—90 ցենտներ խաղող: Լավ բերք է տալիս նաև անջրդի պայմաններում տնկված խաղողի 7 հեկտար այգին: Ելնելով կենդանի փորձից և կատարման ստուգման արդյունքներից, պարտիական կազմակերպությունն ընդունեց նոր որոշում, առաջ քաշելով հացահատիկի արտադրության և խաղողագործության զարգացման ու մասնագիտացման հարցերը:

Կատարման ստուգման դրական կողմերից մեկն էլ այն է, որ կադրերը դաստիարակվում են ուղղամտության, շիտակության ոգով, ժամանակին մատնացույց են արվում նրանց սխալները և օգնում այդպիսիք վերացնելու: Այսպես, պարտիայի շրջանային կոմիտեն վերջերս անցկացրեց իր անցյալ տարվա օգոստոսի 6-ի որոշման կատարման ստուգում: Պարզվեց, որ Կուրթկուլաղ գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ի. Սզիմովը կատարել է 40



digitised by A.R.A.R.@

տոննա խոտի հավելագրում: Շրջկոմի բյուրոն նրան ենթարկեց պարտիական տույժի, նախազգուշացնելով, որ կրկնելու դեպքում ավելի խիստ պատասխանատվության կենթարկի. այդ մասին տեղյակ պահվեց շրջանի պարտիական ակտիվին: Միաժամանակ պարտիայի շրջանային կոմիտեն գտավ, որ անհրաժեշտ է բարելավել կադրերի դաստիարակության գործը, նրանց տոգորել բարձր պատասխանատվության զգացումով, ամրապնդել պարտիական, պետական կարգապահությունը, արմատավորել կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի նորմերը:

Կատարման ստուգումը բարձր հիմքերի վրա դնելու գործում կարևոր նշանակություն ունի պարտիական, պետական ղեկավար օրգանների կողմից՝ վերևից իրականացվող և ներքևից եկող մասսաների վերահսկողության զուգակցումը: Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական, առևտրական կազմակերպությունների և սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծված են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող 30 հանձնաժողով, ուր ընդգրկված են 150 կոմունիստներ: Բացի այդ, հիմնարկ-ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում ստեղծվել են պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող 46 խմբեր և 85 պոստեր, ուր ընդգրկված են 665 կոմունիստներ, կոմերիտականներ ու անպարտիականներ: Պարտիական շատ կազմակերպություններ հմտորեն կոորդինացնում են այդ վերահսկող օրգանների գործունեությունը, կազմակերպությունների նորմալ աշխատանքներին նպաստելու նպատակով, սիստեմատիկաբար ստուգում են վերադաս օրգանների և տվյալ կազմակերպության ընդունած որոշումների կենսագործման ընթացքը, պայքար կազմակերպում անտնտեսվարության, հանրային ունեցվածքի շռայլումների, հափշտակումների դեմ:

Պարտշրջկոմն առաջիկայում ևս կկատարելագործի պարտիական ղեկավարության ոճն ու մեթոդները, կբարձրացնի վերահսկողության և կատարման ստուգման մակարդակը:

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Գորիսի շրջկոմի քարտուղար

## ԱՎԵԼԻ ՄՈՏ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆԸ

Կոմերիտմիության պարտիական ղեկավարությունը ճիշտ կարելի է համարել այն դեպքում, երբ այն նպաստում է երիտասարդության ինքնագործունեության ու նախաձեռնության զարգացմանը, երբ բարձր պահանջկոտությունը զուգակցվում է վստահության հետ ո՛չ միայն փոքր, այլև մեծ գործերում:

Մինչև վերջերս պարտիայի Նոյեմբերյանի շրջկոմը ինչպես հարկն է չէր զբաղվում շրջանի կոմերիտական կազմակերպության աշխատանքով: ՀԼԿԵՄ շրջկոմի (նախկին քարտուղար Մ. Վարդամյան) ղեկավարությունը, կոմերիտական կազմակերպությունների մարտունակությունն ու նախաձեռնությունը զարգացնելու փոխարեն, զբաղվում էր աչքակապությամբ ու պարադայնությամբ: Ջեյթունի սովխոզի ԼԿԵՄ կազմակերպությունում ծնունդ առավ «Եթե փարոս ես, մենակ մի մնա» հիանալի շարժումը, որի ծավալման միջոցով կարելի էր արտադրական մեծ նվաճումների հասնել: Բայց ԼԿԵՄ շրջկոմի ղեկավարները ժողովներում, նույնիսկ ՀԼԿԵՄ Կենտկոմի պլենումում ու խորհրդակցություններում այդ մասին ամպագոռգոռ ճառեր էին ասում, իսկ իրականում կազմակերպական աշխատանք չէին կատարում փարոսների փորձն ուսումնասիրելու և նրանց շարքերը համալրելու ուղղությամբ:



Աշխատանքի նման արատավոր ոճը բացասական ազդեցություն էր թողել կոմերիտական կազմակերպությունների գործունեության վրա: Ծիշտ վարվեցին ԼԿԵՄ շրջկոմի անդամները՝ այդ կարգի ղեկավարներից ազատվելով:

Հաճախ կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ պարտիական ղեկավարության թուլացումը լուրջ դժվարություններ է ստեղծում երիտասարդության նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացման գործում: Այսպես, օրինակ, Կալինինոյի շրջանի Սարչապետ գյուղի երիտասարդներն անցյալ տարի պարտավորվեցին իրենց ուժերով կուտակել 1400 տոննա խոտ, 1600 տոննա սիլոս, անասնապահական ֆերմա աշխատանքի գործուղել լավագույն կոմերիտականների: Սակայն անցան օրեր, ամիսներ, ո՛չ պարտիական կազմակերպությունը, ոչ էլ կոլտնտեսության վարչությունը չարձագանքեցին պատանիների կոչին, չօգնեցին նրանց՝ կենսագործելու իրենց ստանձնած պարտավորությունը: Նույնն է վիճակը Ստեփանավանի շրջանի Լիջանի, Յաղդանի կոլտնտեսությունների ԼԿԵՄ կազմակերպություններում:

Երիտասարդության նախաձեռնության և ինքնագործունեության աճի կարևոր ցուցանիշն է նրանց կողմից սոցիալիստական պարտավորությունների կատարումը: Ինչպես անցյալ, այնպես էլ այս տարի Ստեփանավանի և Կալինինոյի շրջանների կոմերիտականներն իրենց շրջանային հավաքում պարտավորվեցին մոբիլիզացնել երիտասարդության ուժերը հանրային անասնապահության կերի կայուն բազա ստեղծելու համար: Պարտիայի շրջանային կոմիտեներն ու սկզբնական կազմակերպություններն աչքաթող չարեցին երիտասարդության այդ նախաձեռնությունը և կոնկրետ օգնություն ցույց տվին, որպեսզի նրանք հաջողությամբ կենսագործեն ստանձնած պարտավորությունները: Արդյունքը դրական եղավ: Դրա համար շրջանի կոմերիտական կազմակերպությունն արժանացավ ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին մրցանակին, իսկ Վարդաբլուրի, Ուռուտի կոլտնտեսությունների կոմերիտական կազմակերպությունները պարգևատրվեցին ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերով: Վերջերս Ստեփանավանի շրջանի կոմերիտականներն իրենց հավաքում դարձյալ կոչ ուղղեցին ռեսպուբլիկայի կոմերիտականներին ու երիտասարդներին հանրային հոտը ձմռանը կերով ապահովելու առթիվ: Այդ կոչին արձագանքեցին Կալինինոյի, Ալավերդու և այլ շրջանների երիտասարդներ:

Պարտիական կազմակերպությունների կողմից երիտասարդության ինքնագործունեության խրախուսումը նրան մղում է նոր նախաձեռնությունների: Վերջերս պարտիայի Նոյեմբերյանի, Ալավերդու, Կալինինոյի, Ստեփանավանի շրջկոմներն օգնեցին կոմերիտականներին՝ անցկացնելու առաջավոր երիտասարդների հավաքներ, ուր նրանք գյուղատնտեսական մթերքների ավելացման նպատակով ստանձնեցին նոր պարտավորություններ, որոնք հաջողությամբ իրագործում են: Ապրիլի վերջերին կոմերիտականներն ունեցան ինտերնացիոնալ հանդիպումներ, որոնց մասնակցեցին նաև եղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի երիտասարդության ներկայացուցիչները:

Կազմակերպված անցավ Նոյեմբերյանի, Վրացական ՍՍՌ-ի Մարնեուլի, Ադրբեջանական ՍՍՌ-ի Ղազախի շրջանների երիտասարդության ինտերնացիոնալ ցերեկույթը՝ Նոյեմբերյանում: Հավաքվել էին 10 ազգությունների ներ-



digitised by A.R.A.R.@

կայացուցիչներ։ Նրանք փոխադարձաբար ծանոթացան գյուղատնտեսական արտադրության առաջավորների փորձին, ստանձնեցին նոր պարտավորություններ, սահմանեցին մրցության մեջ հաղթողի փոխանցիկ դրոշ, անցկացրին սպորտ միջոցառումներ և կազմակերպեցին գեղարվեստական ինքնագործունեության խմբերի ելույթներ։ Այդ հանդիպումը եղբայրական ժողովուրդների երիտասարդության ջերմ բարեկամության վառ արտահայտությունն էր։

Հանրօգուտ աշխատանքում երիտասարդության ակտիվ մասնակցությունը պետք է զուգակցվի նրանց քաղաքական-գաղափարական դաստիարակությանը։ Ճիշտ է, այդ ուղղությամբ որոշ հաջողություններ կան, սակայն կան և լուրջ թերություններ։ Կոմերիտականների ու երիտասարդության քաղաքական ուսուցումը տառապում է ֆորմալիզմով, տաղտկալիությամբ։ Հաճախ կոմերիտական դպրոցների ու խմբակների ղեկավարներ են առաջադրում անհամեմատ թույլ պատրաստականություն ունեցող, անփորձ պրոպագանդիստների։ Մինչդեռ երիտասարդության դաստիարակության գործն ավելի դժվար է, բարդ ու սպեցիֆիկ։ Նրանց գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցերով պետք է զբաղվեն տեսականորեն առավել պատրաստված, մեծ փորձ ունեցող պրոպագանդիստներ, որոնք սիրով են հանձն առնում երիտասարդության գաղափարական դաստիարակության աշխատանքը։ Բայց շատ տեղերում պարտիական կազմակերպությունների տեսադաշտից դուրս է մնացել կոմերիտականների, արտամիութենական երիտասարդների քաղաքական ուսուցումը։ Այդ մասին է վկայում, թերևս, այն փաստը, որ ռեսպուբլիկայի մոտ 20 հազար կոմերիտականներ դուրս են մնացել քաղաքական լուսավորության ցանցից։ Եթե դրան ավելացնենք այն, որ խմբակների մի զգալի մասը կա՛մ տարեսկզբին, կա՛մ տարվա կեսին դադարել է գործելուց, ապա պարզ կդառնա, թե որքան կոմերիտականներ են դուրս մնացել քաղաքական ուսուցումից։ Դա անհանդուրժելի է։

Երիտասարդության կոմունիստական դաստիարակության արդյունքը մեծ է լինում, երբ դրանով զբաղվում են նաև տնտեսական ղեկավարները, որոնք պետք է հավասարապես պատասխանատվություն կրեն թե՛ ժողովրդական տնտեսության պլանների կատարման և թե կոլեկտիվի բարոյական վիճակի համար։ Այնտեղ, ուր կենսագործվում է պարտիայի այս պահանջը, լավ հիմքերի վրա է դրված երիտասարդության դաստիարակության գործը։ Այսպես, Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյուղի կոլտնտեսության նախագահ Ա. Ջանջուղազյանը, Սվերդլովի կոլտնտեսության նախագահ Մ. Սարգսյանը, բարձր հաճախականության սարքավորումների գործարանի դիրեկտոր Ս. Գրիգորյանը, Կալինինոյի սովխոզի դիրեկտոր Գ. Ավդալյանը և շատ ուրիշներ անձամբ են զբաղվում աշխատավորների, հատկապես երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցերով։ Դրա շնորհիվ տեղերում գրեթե վերացել են հակահասարակական երևույթները։

Նույնը չի կարելի ասել, սակայն, Ալավերդու շրջանի Աթանի սովխոզի «Ախթալաշին» տրեստի, Ախթալայի հանքերի և այլ կոլեկտիվների մասին, որտեղ հիմնարկի ղեկավարներին ու պարտիական կազմակերպություններին հետաքրքրում է միմիայն արտադրական ցուցանիշների կատարումը, իսկ կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության կարևորագույն հարցերը մնում են վերջին պլանի վրա։

Առանձին պարտիական կազմակերպություններում անբավարար են զբաղ-



վում երիտասարդության էսթետիկական դաստիարակության ու կուլտուրական հանգստի կազմակերպման հարցերով։ Մինչդեռ հակահասարակական առանձին երևույթների պատճառը երիտասարդության հանգստի անհաջող կազմակերպումն է, այդ գործում ցուցաբերվող անտարբերությունը։ Դեռևս բազմաթիվ գյուղերում ու ձեռնարկություններում անմխիթար ու անհրապույր տեսք ունեն երիտասարդության ժամանցի վայրերը՝ կուլտուրական օջախները, սպորտ բազաները, հրապարակները և այլն։

Ալավերդու շրջանի Ուզունլարի սովխոզը մեր ռեսպուբլիկայի ամենախոշոր արտադրական օբյեկտներից մեկն է։ Այստեղ կա մոտ 200 կոմունիստ, 450-ից ավելի կոմերիտական։ Ավելի քան 600 բնակչություն ունեցող այդ գյուղը չունի հարմարավետ ակումբ, գրադարան և նույնիսկ խաղադաշտ։ Փաստորեն երիտասարդությունն զբաղվելու և հանգստանալու տեղ չունի և, պատահական չէ, որ այստեղ հաճախ ենք հանդիպում հակահասարակական երևույթների, իսկ սովխոզի ղեկավարությունը (դիրեկտոր Ա. Մանթաշյան, պարտկոմիտեի քարտուղար՝ Գ. Շահվերդյան) այդ ուղղությամբ դեռևս լրջորեն չեն մտահոգվում։ Ավելին, Ուզունլարում աշխատում են ավելի քան 150 ուսուցիչներ, գյուղատնտեսության մասնագետներ, ինժեներներ, բժիշկներ, սակայն ինտելիգենցիայի այդ ստվար բանակն անբավարար է օգտագործվում։ Նոր մարդու դաստիարակությանը դեռ բավարար ուշադրություն չի հատկացվում այստեղ։ Նույն վիճակն է Շահնազար, Ղարաքիլիսա (Կալինինոյի շրջան), Գյուլագարակ, Յաղդան (Ստեփանավանի շրջան), Շավարշավան, Ղալաչա գյուղերում, Այրումի պահածոների գործարանում (Նոյեմբերյանի շրջան) և այլուր։

Ղալաչայի, Կողբի, Ջեյթունի, Նոյեմբերյանի կաթնաանասնապահական սովխոզի պարտիական կազմակերպությունները լավ են հասկանում ֆիզկուլտուրայի և սպորտի դերը երիտասարդության դաստիարակության գործում, նպաստավոր պայմաններ են ստեղծել սպորտի զարգացման համար։ Նույնը չի կարելի ասել Ալավերդու շրջանի Սանահինի, Լորուտի, Աթանի սովխոզների և մյուս շրջանների շատ պարտիական կազմակերպությունների մասին։

Կալինինոյի, Ալավերդու, Ստեփանավանի պարտշրջկոմները և շատ սկզբնական պարտկազմակերպություններ վերջերս որոշ չափով ուժեղացրել են ԼԿԵՄ կազմակերպություններին ցույց տրվող օգնությունն ու ղեկավարությունը։ Շրջկոմների պլենումներում, բյուրոներում, պարբերաբար լսում են կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ պարտիական ղեկավարությունն ուժեղացնելու հարցերը, միջոցառումներ նշում երիտասարդության դաստիարակությունը բարելավելու նպատակով։ Այստեղ ևս լուրջ թերություններ կան։ Այսպես, 1964 թվականի սեպտեմբերի 16-ին Նոյեմբերյանի պարտկոմի բյուրոն լսեց «Ղալաչայի կոլտնտեսության պարտիական կազմակերպության ղեկավարությունը կոմերիտական կազմակերպություններում» հարցը։ Ընդունվեց բավականին կոնկրետ որոշում։ Անցել է մեկ տարի, բայց Ղալաչայի պարտիական կազմակերպությունը չի անդրադարձել այդ որոշմանը և շրջկոմից էլ չեն հետաքրքրվել դրա կենսագործման ընթացքով։ Շրջկոմի բյուրոյի որոշումն ստանալուց և ընթերցելուց հետո պարտբյուրոյի քարտուղար ընկ. Հր. Աբովյանը այն հանգիստ խղճով վերադարձրել է շրջկոմ և իր պարտականությունները համարել ավարտած։ Ավելին, 1964 թվականի ընթացքում պարտկազմակերպությունը ոչ մի անգամ չի անդրադարձել կոմերիտական կազմակերպության հարցին։ Դրա հետևանքով այստեղ սիստեմատիկաբար կոմերիտական



digitised by A.R.A.R.@

ժողովներ, կոմիտեի նիստեր չեն գումարվում, շատ կոմերիտականներ չեն մասնակցում ժողովներին, ժամանակին չեն մուծում անդամավճարները։ Թափթփված վիճակում է կոմերիտական տնտեսությունը։ Գյուղում չկան գեղարվեստական ինքնագործունեության խմբեր, որը պատճառաբանում են աղջիկների «պակասով», չնայած գյուղում կան 54 կոմերիտուհիներ։

Վերջին տարիներս կոմերիտական աշխատանքում լայնորեն տարածվել են արտահաստիքային հանձնաժողովները, «կոմերիտական լուսարձակները», «հսկիչ պոստերը» և այլն։ Պարտկազմակերպությունները պետք է խրախուսեն երիտասարդության այդ նախաձեռնությունները, դրանց տան ճիշտ ուղղություն և արդյունավետ գործադրման ասպարեզ։

ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումը սահմանեց գյուղատնտեսության հետագա զարգացման անհետաձգելի խնդիրները։ Պարտիական կազմակերպությունների պարտքն է՝ օգնել կոմերիտականներին ու ողջ երիտասարդությանը՝ հաջողությամբ կատարելու իրենց առաջադրանքներն այդ մեծ, հանրօգուտ գործում։

Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի կազմակերպական պարտիական աշխատանքի բաժնի տեսուչ

## ՄԵՐ ԱՌՕՐՅԱ ԽՆԴԻՐԸ

Դեռևս մարտ ամսին տուֆագործ բանվոր, կոմունիստ Մկրտիչ Զոփիկյանը դիմեց Արթիկի շրջկոմին՝ խնդրելով, որ նա ինչպես հարկն է զբաղվի բանվորների սննդի մատակարարման, կուլտուրական սպասարկման հարցերով։ Ուսումնասիրությունը պարզեց, որ հանքերում իրոք վատ են գործում առևտրական և հասարակական սննդի միավորները, դրանք զուրկ են տարրական հարմարություններից։ Վատ է նաև տուֆագործների կուլտուրական սպասարկումը։ «Մեզնից միայն պլանի կատարում են պահանջում, բայց մեր առօրյա պահանջներին ոչ ոք ուշադրություն չի նվիրում»,— ասում է քարհատ բանվոր Գ. Անանիկյանը։ Նա իրավացի էր։

Շրջկոմի բյուրոն իր հերթական նիստում անդրադարձավ տուֆագործ բանվորների ահազանգին և համապատասխան որոշում ընդունեց։ Ներկայումս անհամեմատ բարելավվել է հանքագործների մատակարարումը, բարձրացել է կուլտուրական սպասարկման մակարդակը. բանվորների կենցաղային պահանջները բավարարվում են առաջին հերթին։ Շրջկոմի աշխատողները նրանց ընդունում, ունկնդրում են հենց հանքերում, արտադրական տեղամասերում։ Այդ հնարավորություն է ընձեռում բազմաթիվ հարցեր լուծելու տեղում, առանց մարդկանց աշխատանքից կտրելու։

Այդպիսի մի ընդունելության ժամանակ պարզվեց, որ մի շարք հանքերում բանվորների արտադրողականության վրա բացասաբար էր անդրադարձել աշխատանքային նորմալ պայմանների բացակայությունը։ Բուլդոզերների պակասի պատճառով ձգձգվում էր հանքախորշերից տուֆամնացորդների մաքրումը։ Մարդիկ ստիպված էին ժամերով պարապուրդ տալ, սպասել, մինչև որ հարևան տեղամասից օգնության կգային մեքենաները։ Այդ հարցն էլ լուծվեց և հիմա մեքենայական պարկը համալրված է նոր բուլդոզերներով։ Հանքախորշերի ու տուֆաստիճանների [?] մաքրումը ներկայումս կատարվում է ժամա-



նակին և դրանով իսկ պայմաններ ստեղծում տուֆագործների աշխատաժամանակի յուրաքանչյուր րոպեի և արտադրական տարածության յուրաքանչյուր մետրի արդյունավետ օգտագործման համար։

Հայտնի է, որ մի ժամանակ դժվարին պայմաններում էր անցնում սարվորների կյանքն ամառանոցներում։ Անասնապահների համար չկային հարմարավետ կացարաններ, վատ էր կազմակերպվում նրանց սպասարկումը՝ առևտրական և կուլտուր-լուսավորական հիմնարկությունների կողմից։ Այժմ միջոցներ են ձեռնարկվում իրար մոտ գտնվող ամառանոցների համար պատրաստել մնայուն էկրաններ՝ կինոցուցադրումների համար։ Ներկայումս շինարարական աշխատանքներ են կատարվում Մեղրաշենի, Պարնիի, Հայրենյացի, Փանիկի կոլտնտեսությունների, Պեմզաշենի, Արթիկի, Լեռնակերտի սովխոզների ամառանոցներում։ Մտեք Փանիկի կոլտնտեսության անասնապահների համար Հարսնաքարի ստորոտում կառուցված սենյակները և դուք չեք դժգոհի։ Լեռնաբնակներն ամենևին էլ կտրված չեն արտաքին աշխարհից, առօրյա կյանքից։ Նրանց հաճախ են հյուր լինում շրջկոմի դասախոսական խմբի անդամները, համերգային խմբերը, շրջիկ կինոները։ Շրջանային սպառկոոպերացիայի ավտոմեքենաները գրեթե ամեն շաբաթ սարվորներին ապահովում են թարմ մրգերով և բանջարեղենով։

Գյուղի աշխատավորներին իրենց շեֆական օգնությունն են ցույց տալիս շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Միայն ընթացիկ տարվա գարնանը կոլտնտեսությունների ու սովխոզների ավելի քան 70 առաջավոր անասնապահներ ու դաշտավարներ պարգևատրվել են ժամացույցներով, հովվական թիկնոցներով, մահճակալներով, դաշտային ռադիոընդունիչներով և այլ թանկարժեք նվերներով։

Առաջին պլանի վրա մղելով աշխատավորների բարեկեցության սիստեմատիկ բարձրացման խնդիրը, շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները լայն թափ են հաղորդում կուլտ-կենցաղային օբյեկտների՝ ակումբների, բաղնիքների, խանութների և հասարակական օգտագործման այլ օբյեկտների շինարարությանը։ Ընդամենը երկու ամիս առաջ շահագործման հանձնվեց Փանիկի կոլտնտեսային ակումբը՝ իր գեղեցիկ ճեմասրահներով, խաղասենյակներով, երեք հարյուր տեղանոց դահլիճով, մշտական կինոսարքերով։ Նրա բեմահարթակի վրա կարող են հաջողությամբ հանդես գալ առաջնակարգ համերգային-թատերական կոլեկտիվները։ Պարտիայի շրջանային կոմիտեն խրախուսեց փանիկցիների լավ քայլը։ Այժմ ակումբներ, բաղնիքներ են կառուցվում Վարդաքարում, Լուսակերտում, Հայրենյացում, Ախուրյանում, Գեղադիրում։

Շրջկենտրոնում և գյուղերում մեծ թափ է ստացել բնակարանային շինարարությունը։ Կոմունալ շենքերից բացի քաղաքում և գյուղերում, քաղաքային և շրջանային սովետների գործկոմների օգնությամբ, այս տարի շահագործման կհանձնվեն ավելի քան 600 տուֆակերտ երկհարկանի ու միհարկանի հարմարավետ առանձնատներ։ Շրջանային սովետի սեսիայի կողմից հայտարարված բարեկարգման միամսյակի ընթացքում կասֆալտապատվեն 30 կիլոմետր երկարությամբ գյուղամիջյան ճանապարհներ, շարք կմտնեն նոր վարսավիրանոցներ, կոշկակարական և հագուստեղենի պատվերի արհեստանոցներ։

Ոչ միայն նորակառույցներ, այլև հաճելի, ակնապարար շրջապատ. այդ է պահանջում մեր օրերի քաղաքացին։ Հենց դա նկատի ունենալով շրջանային



digitised by A.R.A.R.@

կազմակերպությունները նախաձեռնեցին այս տարի ծառազարդելու ճամփեզրյա տարածությունները, ստեղծելու ստվերախիտ պուրակներ՝ մարդկանց հաճելի հանգստի ու ժամանցի համար։ Քաղաքում և գյուղերում տնկվեցին շուրջ երկու հարյուր հազար դեկորատիվ ու պտղատու ծառեր։ Քաղաքային սովետի գործկոմը զբոսայգիներից զատ, մշտական նստարաններ է դրել նաև մայթեզրյա ծառուղիներում, սեղանի թենիսներ՝ բոլոր շենքերի բակերում։

Մտածել մարդու մասին, այդ նշանակում է խորհրդակցել նրա հետ, իմանալ նրա հոգսերն ու կարիքները, պարզել իրավիճակը։ Իրենց հուզող հարցերի մասին աշխատավորները դիմում են վերադաս կազմակերպություններին՝ համոզված, որ նրանք ճիշտ ընթացք կտան իրենց խնդրանքին։ Բայց ոմանց բյուրոկրատական վերաբերմունքը դիմողին այլ համոզմունքի է բերում։ Վերջերս այդպես պատահեց Արթիկ քաղաքի բնակիչ Ս. Վարդանյանի հետ։ Նա դիմել էր քաղաքային սովետի գործկոմին՝ իր բնակարանի թերությունները վերացնելու խնդրանքով։ Այստեղ նրա դիմումն ուղարկվում է կոմունալ սպասարկման գրասենյակի պետ Ս. Կարապետյանին։ Վերջինս դիմումն ուղարկում է բնակկառավարչություն, որտեղից մի նոր մակագրություն ստանալով, այն հասցեագրում է շինվերանորոգման գրասենյակին, որտեղից այն նորից ետ է վերադարձվում կոմունալ սպասարկման գրասենյակ։ Անբարեհոգի մարդկանց մեղքով քաղաքացի Վարդանյանը մոտ երկու ամիս թափառում էր հիմնարկից-հիմնարկ, մինչև որ նրա խնդրանքին ընդառաջում են քաղսովետի գործադիր կոմիտեի ղեկավարները։

Բայց մեզ մոտ քիչ չեն այն ղեկավարները, որոնք իրենց ամբողջ գործունեության ընթացքում ջանում են միայն հրապուրվել արտադրական ցուցանիշներով, մոռանալով այդ ցուցանիշներն ստեղծողներին։ Այդ բանին հաճախ տուրք են տալիս նաև պարտիական կազմակերպությունները, որոնք աշխատանքային արդյունքները դրվատելով հանդերձ, չեն խորանում աշխատավորների կուլտուր-կենցաղային հարցերի մեջ։

Մեր խնդիրն է՝ այսուհետև ավելի շատ զբաղվել մարդկանց կուլտուր-կենցաղային հարցերով և անել ամեն ինչ նրանց նորմալ կյանքի համար։ Այդ խնդիրը բխում է մեր պարտիայի էությունից, նրա ծրագրից։

ԱԼ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿՊ Արթիկի շրջկոմի քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆԵՐԻ ՆՈՐՈԳՄԱՆ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Մեքենա-տրակտորային պարկի նորոգման վրա կատարվող ծախսումները կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական ծախսերի կարևոր մասն են կազմում։ Բուսաբուծությունից ստացվող համախառն արտադրանքի ինքնարժեքի մեջ դրանք կազմում են 13—15 տոկոս։ Այդ իսկ պատճառով նորոգման ձեռնարկությունների բանվոր-ծառայողների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի համար պարզ պետք է լինի, որ գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցումը որոշ չափով պայմանավորված է նաև մեքենաների նորոգման ինքնարժեքով։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի իջեցումը մեր ժամանակներում պայմանավորված է մի շարք գործոններով՝ աշխատանքի արտադրողականության մակարդակով, բանվորների որակավորման աստիճանով, նորոգման լավագույն մեթոդների կիրառմամբ, նորագույն տեխնիկական սարքավորումների օգտագործմամբ, ձեռնարկությունների ճիշտ տեղաբաշխմամբ, նորոգման արտադրության համակենտրոնացմամբ և մասնագիտացմամբ, գիտության ու տեխնիկայի նվաճումների, առաջավոր փորձի ներդրմամբ։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի յուրաքանչյուր տարր որոշակիորեն ազդում է նրա բարձրացման կամ իջեցման վրա։ Ընդ որում մեքենաների նորոգման վրա կատարված առանձին ծախսումները պայմանավորված են միմյանցով։ Հետևապես ինքնարժեքի առանձին տարրերի տնտեսական խոր վերլուծությունն մեծ նշանակություն ունի։

Տրակտորային պարկի նորոգման ինքնարժեքի կառուցվածքը խիստ փոփոխության է ենթարկվել վերջին ժամանակաշրջանում։ Այսպես, եթե ՄՏ կայանների օրոք, 1952—1958 թվականների միջև ընկած ժամանակաշրջանում, աշխատավարձը տրակտորների վերանորոգման ընդհանուր ծախսերում տատանվում էր 22,6—27,2 տոկոսի սահմաններում, ապա ՄՏ կայանների վերակառուցումից հետո՝ 1958—1964 թվականներին՝ միջին հաշվով կազմել է 13,2—16,2 տոկոս։ Դրա հետ մեկտեղ ավելացել են պահեստամասերի վրա կատարված ծախսերը. 1962 թվականին տրակտորների հիմնական նորոգման գծով դրանք հասել են 61,2 տոկոսի։ Մինչդեռ նորոգման նյութերի վրա կատարված ծախսերն այդ թվականին կազմել են ընդհանուր ծախսերի ընդամենը 3—4 տոկոսը (ՄՏ կայանների ժամանակվա 6—7 տոկոսի փոխարեն)։ Այդպիսով, պահեստամասերի վրա կատարված ծախսերի ավելացումն իջեցրել է աշխատավարձի և նորոգման նյութերի վրա կատարվող ծախսումները։ Նորոգման արհեստանոցների վերջին հինգ տարիների աշխատանքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մեքենաների նորոգման փաստացի ինքնարժեքը համեմատաբար բարձր է փոքր արտադրական հզորություն ունեցող արհեստանոցներում, չնայած խոշոր արհեստանոցների ցուցանիշները նույնպես մխիթարական չեն, մի երևույթ, որը հիմնականում բացատրվում է այդ արհեստանոցների արտադրական հզորություն-



digitised by A.R.A.R.@

ների թերբեռնվածությամբ։ Մի շարք արհեստանոցներում մեծ չափերի է հասնում մեքենաների նորոգման ինքնարժեքը։ Այսպես, օրինակ, ДТ—54 մարկայի տրակտորների հիմնական նորոգման ծախսերը 1962 թվականին Վեդիի նորոգման արհեստանոցում կազմել են միջին հաշվով 1014 ռուբլի, ռեսպուբլիկականի 777 ռուբլու (միջին) դիմաց։

Ժամանակակից նորոգման սարքավորումները չօգտագործելու, դետալների վերականգնման պրոգրեսիվ մեթոդներ չկիրառելու և մի շարք այլ պատճառներով նույնիսկ նորոգման համեմատաբար խոշոր արհեստանոցները (ինչպիսիք են՝ Ապարանի, Սիսիանի և Հրազդանի) հաճախ փոխում են մեծ քանակությամբ դետալներ, մինչդեռ դրանց զգալի մասը կարելի է նորոգել հենց արհեստանոցում։ Դժվար չէ նկատել, որ այդպիսի վիճակը բարձրացնում է նորոգման ինքնարժեքը։

Առաջավոր ավտոտրակտորանորոգման գործարանների փորձը վկայում է, որ պահեստամասերի պահանջի մոտ 60 տոկոսը հնարավոր է բավարարել մաշված դետալների որակյալ նորոգման միջոցով։ Օրինակ, ДТ—54 տրակտորի (որը կշռում է 5100 կգ) հիմնական նորոգման ժամանակ խոտանվում են մոտ 1300—1400 կգ մաշված դետալներ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այժմ, ի հաշիվ վերականգնվող դետալների ընդլայնման, բոլոր հնարավորությունները կան այդ թիվը 800—500 կգ-ի հասցնելու։

Հայտնի է, որ գյուղատնտեսական աշխատանքներում զբաղված տրակտորների և ավտոմեքենաների դետալների մեծ մասը խոտանվում է իրենց կշռի չափազանց փոքր կորուստների դեպքում։ Այդ կորուստները, օրինակ, մխոցամատերի մոտ կազմում է 0,03, բլոկի գլխիկի 0,5 տոկոսը։ Տրակտորի առանձին դետալների կշռի կորուստ է միայն հասնում համեմատաբար մեծ չափերի՝ 20—40 տոկոսի (օրինակ՝ հենարանային գլանվակները)։

Այդպես, վերահալվում են բազմաթիվ դետալներ, որոնց վերականգնումը կախված է նյութատեխնիկական արժեքի համեմատաբար փոքր ծախսումների հետ։ Բնական է, որ վերականգնման ժամանակ աշխատանքային և նյութատեխնիկական արժեքների ծախսը անհամեմատ ավելի փոքր է, քան նորի պատրաստման վրա կատարված ծախսերը։ Այդ էլ հենց ցույց է տալիս մեքենամասերի վերականգնման տեխնիկա-տնտեսական նպատակահարմարությունը։

Լավագույն կահավորում ունեցող, անգամ ոչ նեղ մասնագիտացված ավտոտրակտորանորոգման գործարաններում դետալների նորոգման ինքնարժեքը կազմում է նոր դետալների գնի 20—30 տոկոսը։ Հատկապես նպատակահարմար է նորոգել խոշոր, թանկ բազիսային այնպիսի դետալներ, ինչպես՝ գլանների բլոկը, գլանների բլոկի գլխիկը, ընթացքային մասի դետալները և այլն։

Գյուղատնտեսական ձեռնարկությունների մի շարք ղեկավարներ և, ընդհանրապես, մասնագետներ այն սխալ կարծիքի են, թե իբր արտասահմանում չեն նորոգում դետալները։ Բավական է նշել, որ ԱՄՆ-ում առանձին ձեռնարկություններ ամեն տարի նորոգում են տասնյակ հազարավոր ծնկաձև լիսեռներ։ Դետալների կենտրոնացված վերանորոգում են կատարում նաև ԳՖՌ-ում, իսկ սոցիալիստական երկրներում լայնորեն կիրառվում է մեքենամասերի նորոգումը։

Եթե խոշոր ավտոտրակտորանորոգման գործարաններում այս կամ այն չափով լուծված է մաշված և վնասված դետալների նորոգման հարցը, ապա այդպես չէ գյուղատնտեսության սիստեմում գործող նորոգման արհեստանոցներում։ Նորոգման արհեստանոցների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ, եթե արհեստանոցներում կան բավականաչափ պահեստամասեր, շատ հաճախ խոտանվում են դեռ պիտանի պահեստամասերը և, հակառակը՝ դրանց բացակայության դեպքում մեծ մասշտաբներով վերականգնվում են այնպիսի դետալներ, որոնք լիարժեք չեն։

Ինչպես հայտնի է «Հայգյուղտնտտեխնիկայի» շրջանային բաժանմունքներին (որոնց կազմի մեջ են մտնում նորոգման արհեստանոցները) տրված է պա-



հեստամասերի ազատ առևտրի իրավունք։ Ունենալով այդպիսի լայն հնարավորություններ, բաժանմունքների ղեկավարները և ինժեներա-տեխնիկական անձնակազմը պահեստամասերով (հատկապես դեֆիցիտային) ապահովում են առաջին հերթին, այսպես կոչված՝ իրենց տնտեսությունը։ Այդ է պատճառը, որ բազմաթիվ դետալներ ներկայիս նորոգման սիստեմի պայմաններում հաճախ անհարկի խոտանվում են, չնայած նրան, որ դրանք որոշ չափով վերականգնելուց հետո կարելի է նորից աշխատեցնել։

Կարևոր նշանակություն ունի նաև այն հանգամանքը, որ նորոգման շատ արհեստանոցներ մինչև օրս չունեն զանազան դետալների վերականգնման տեխնիկական ցուցումներ, ինչպես նաև կոմպլեկտավորված չեն համապատասխան բարձր որակավորում ունեցող կադրերով։ Մեծ արհեստանոցներում որակյալ պողպատներից դետալներ պատրաստելու ջերմամշակման, մետաղապատման և այլ բարդ օպերացիաների համար չկան անհրաժեշտ սարքավորումներ։ Վերջապես, մեր ռեսպուբլիկայի շատ արհեստանոցներում մեծ մասամբ չկան տեխնիկական պայմաններին համապատասխանող հատուկ պողպատներ, չուգուն և այլ նյութեր։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի իջեցման զգալի ռեզերվներ կան։ Առաջին հերթին անհրաժեշտ է կիրառել մեքենաների նորոգման պրոգրեսիվ մեթոդները, նորագույն եղանակներով վերականգնել դետալների աշխատունակությունը, դետալների խոտանումը կատարել տեխնիկապես հիմնավորված։

Մյուս կարևորագույն միջոցառումը՝ դա դետալների վերականգնման արտադրության համակենտրոնացումն ու մասնագիտացումն է։ Խոշոր ձեռնարկությունները կարող են օգտագործել տեխնիկայի այնպիսի նվաճումները, ինչպես՝ ավտոմատ և կիսավտոմատ եռակցումը, հալապատումը պահպանիչ շերտի ֆլյուսի տակ, կարծր մետաղապատումը, ջերմամշակումը բարձր հաճախականության հոսքով, գազային ցեմենտացումը, պլաստմասսայից և կապրոնից դետալներ պատրաստելը, դրանք էլեկտրոստատիկ դաշտում ներկելը և այլն։ Առանձին դետալների նորոգման մասնագիտացված ձեռնարկությունների ստեղծմամբ մեծ հնարավորություններ են բացվում արտադրության ավտոմատացման համար։ Մինչև անգամ փոքր, բայց մասնագիտացված ձեռնարկություններում հնարավոր է ավտոմատացնել դետալների լվացումը, ստուգումը, տեսակավորումը, մշակումը, վերամբարձ փոխադրական աշխատանքները և այլն։ Վերոհիշյալ միջոցառումների կոմպլեքսի կիրառմամբ հնարավոր կլինի իջեցնել նորոգման ինքնարժեքը և բարձրացնել նրա որակը։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի մյուս տարրը աշխատավարձն է, որի մեջ մտնում է նորոգման արհեստանոցում աշխատող բոլոր կարգի բանվորների ու ծառայողների հիմնական և լրացուցիչ աշխատավարձը։ Աշխատավարձի վրա կատարվող ծախսումները կարելի է իջեցնել մի շարք ճանապարհներով։ Հիմնական արտադրական բանվորների աշխատավարձն առաջին հերթին պայմանավորված է մեքենաների նորոգման աշխատատարությամբ, որի իջեցումը վճռական նշանակություն ունի աշխատավարձի վրա կատարվող ծախսումների իջեցման գործում։

Աշխատավարձի վրա կատարված ծախսերը պետք է իջեցնել միջին աշխատավարձի միաժամանակյա աճի պայմաններում, իսկ դրան կարելի է հասնել աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման, աշխատանքի կազմակերպման բարելավման, նորոգման աշխատանքներում տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաների ներդրման միջոցով։ Ընդ որում միմյանց հետ շաղկապված այս հարցերի լուծման ասպարեզում պետք է գործի հետևյալ սկզբունքը՝ աշխատանքի արտադրողականության աճը պետք է գերազանցի աշխատանքի վարձատրության աճին։ «Հայգյուղտնտտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորման սիստեմում գործող նորոգման արհեստանոցների աշխատանքի վերլուծությանը վերաբերվող ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս, որ վերջին տարիներին աշխատանքի արտադրողականության աճը որոշ չափով գերազանցում է միջին աշխատավարձի աճին, բայց այդպիսի չնչին գերազանցումը չի կարող սահման հանդիսանալ, որովհետև անսպառ են աշխա-



digitised by A.R.A.R.@

տանքի արտադրողականության բարձրացման ռեզերվները։ Աշխատավարձի գծով կատարված ծախսերի իջեցման գործում բացառիկ նշանակություն ունի տեխնիկապես հիմնավորված նորմաների սահմանումը։

Աշխատանքի արտադրողականության աճի հարաբերությունը նորոգող բանվորների միջին աշխատավարձի չափին

| Տարիները | Մեկ բանվորին ընկնող տարեկան արտադրանքը (ռուբ.) | Տոկոսը 1959 թ. նկատմամբ | Բանվորների տարեկան միջին աշխատավարձը (ռուբ.) | Տոկոսը 1959 թ. նկատմամբ |
|---|---|---|---|---|
| 1959 | 3604 | 100 | 725 | 100 |
| 1960 | 4546 | 125 | 881 | 122 |
| 1961 | 4781 | 132 | 955 | 131 |
| 1962 | 5002 | 138 | 963 | 133 |
| 1963 | 1303 | 147 | 1103 | 152 |

Ճիշտ մշակված արտադրական նորմաները աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոնն են։ Արտադրական նորմաների հիման վրա կիրառվում է աշխատանքի վարձատրության սոցիալիստական սկզբունքը, ապահովում աշխատավորների շահագրգռվածությունն հենց իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ։ Ահա թե ինչու տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաների ներդրումը համարվում է օբյեկտիվ անհրաժեշտություն։

Աշխատանքի վարձատրության վրա կատարված ծախսերի իջեցման երկրորդ կարևորագույն պայմանը՝ արտադրությունը լավագույն ձևով կազմակերպելն է, արհեստանոցների արտադրական հզորությունների ճիշտ համապատասխանեցումը նորոգման աշխատանքների ծավալին, որը կհանգեցնի ռիթմիկ աշխատանքի՝ բացասելով կամ մինիմումի հասցնելով արտադրության սեզոնայնությունը։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի իջեցման կարևորագույն ռեզերվներից մեկն էլ վերադիր ծախսերի նվազեցումն է (ընդհանուր արտադրական և ընդհանուր տնտեսական)։ «Հայգյուղտնտտեխնիկայի» ռեսպուբլիկական միավորման շրջանային նորոգման արհեստանոցների վերջին հինգ տարիների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ մեքենաների նորոգման ընդհանուր ծախսերի մեջ մեկ պայմանական նորոգմանն ընկնող վերադիր ծախսերը հասնում են միջին հաշվով 24,6 տոկոսի, ընդ որում 1958 թվականի համեմատությամբ ծախսերը կրկնապատկվել են (տոկոսային հարաբերությամբ)։

Վերադիր ծախսերի մի մասը (էլեկտրաէներգիա, գազ, ջուր, վառելանյութ, օժանդակ նյութեր, գործիքներ և ընդհանուր արտադրական նշանակություն ունեցող այլ ծախսեր) արտադրության ծավալի մեծացման զուգընթաց ավելանում է։

Վերադիր ծախսերի մյուս խումբը արտադրության ծավալի ավելացման դեպքում կարծես թե մնում է անփոփոխ, դրանք պայմանական հաստատուն ծախսերն են, որոնց մեջ մտնում են շենքերի և սարքավորումների ամորտիզացիան, տեխնիկական սպասարկող անձնակազմի աշխատավարձը, գործուղումները և այլն։ Ահա հենց վերադիր ծախսերի այս մասն է, որ կարելի է նվազագույնի հասցնել, դրանով իսկ զգալի չափով իջեցնելով մեքենաների նորոգման ինքնարժեքը։

Դժվար չէ նկատել, որ եթե նորոգման աշխատանքների ծավալը մեծ է, ապա ընդհանուր արտադրական և ընդհանուր տնտեսական ծախսերը կբաշխվեն ավելի մեծ քանակությամբ արտադրանքի վրա, այսինքն՝ համեմատաբար փոքր կլինի նրանց մասնակցությունը արտադրանքի մեկ միավորի ինքնարժեքում։

Այսպես՝ Ապարանի նորոգման արհեստանոցում 1962 թվականին ընդհա-



նուր արտադրական ծախսերը կազմել են ուղղակի ծախսերի 56,2 տոկոսը, որը 3,2 անգամ ավելի է միջին ռեսպուբլիկականից։

Չնայած էջմիածնի շրջանային բաժանմունքի նորոգման արհեստանոցի փոքր արտադրական հզորությանը, ընդհանուր արտադրական ծախսերը նրանց մոտ ավելի փոքր են, քան միջին ռեսպուբլիկականը, մի բան, որն, անշուշտ, արդյունք է նորոգման արհեստանոցի ծանրաբեռնվածության բարձր աստիճանի։ Բավական է նշել, որ էջմիածնի նորոգման արհեստանոցում 1962 թվականին միայն գյուղատնտեսական տեխնիկայի նորոգման գծով (չհաշված այլ աշխատանքները) կատարվել է 111 պայմանական միավոր աշխատանք, մինչդեռ արհեստանոցի նախագծային արտադրական հզորությունը հավասար է 100 պայմանական միավորի։

Արհեստանոցների գերբեռնվածությունը, անշուշտ, ունի իր բացասական կողմերը ևս, սակայն լրիվ բեռնվածությունը պետք է համարել նորոգման ինքնարժեքի ընդհանուր ծախսերի մեջ վերադիր ծախսերի տեսակարար կշռի նվազեցման հիմնական ռեզերվներից մեկը։

Ստորև բերված աղյուսակը ցույց է տալիս «Հայգյուղտնտտեխնիկայի» նորոգման արհեստանոցների խմբավորումը (1962 թ.) ըստ վերադիր ծախսերի տեսակարար կշռի.

| Նորոգման արտադրանքի փաստացի արժեքի մեջ ընդհանուր արտադրական ծախսերի տոկոսը | Արհեստանոցների թիվը | Այդ թվում տիպային №—1657 | Այդ թվում տիպային №—1658 | Այդ թվում տիպային №—1662 | Հարմարեցված |
|---|---|---|---|---|---|
| Մինչև 10 | 6 | 2 | 3 | — | 1 |
| 10—15 | 13 | 6 | 3 | 3 | 2 |
| 15—20 | 9 | 5 | 2 | — | 2 |
| 20—25 | 4 | 4 | 1 | — | 1 |
| 30 և բարձր | 1 | 1 | — | — | — |

Ինչպես տեսնում ենք, չնայած արտադրական մեծ հնարավորություններին, որ ունեն տիպային նորոգման արհեստանոցները, հատկապես № 1662 նախագծին՝ ընդհանուր ծախսերի մեջ ընդհանուր արտադրական ծախսերի տեսակարար կշիռն այդ արհեստանոցներում բարձր տոկոս է կազմում։ Այդպիսի վիճակը այլ, հավասար պայմաններում արդյունք է արտադրական հզորությունների ոչ լրիվ օգտագործման։

Ընդհանրապես «Հայգյուղտնտտեխնիկայի» նորոգման արհեստանոցների վերջին տարիների սիստեմատիկ թերբեռնվածության հետևանքով ավելացել է ընդհանուր արտադրական ծախսերի տեսակարար կշիռը համախառն արտադրանքի կառուցվածքում։ Այսպես, օրինակ՝ եթե 1958 թվականին ընդհանուր արտադրական ծախսերի տեսակարար կշիռը կազմել է 13,2 տոկոս, ապա 1959 թվականին այն եղել է 25,4, 1961 թվականին՝ 26,4, 1962 թվականին՝ 25,2, 1964 թվականին՝ 26,4 տոկոս, ընդ որում մեկ պայմանական նորոգման վերադիր ծախսերը կազմել են 1959 թվականին 102 ռուբլի, 1960 թվականին՝ 147, 1961 թվականին՝ 105, 1962 թվականին՝ 119, 1964 թվականին՝ 261 ռուբլի, այն դեպքում, երբ 1958 թվականին եղել են 82 ռ.

Նորոգման արհեստանոցների թերբեռնվածությունը հանգեցրել է այն բանին, որ ընդհանուր արտադրական ծախսերի աճը վերջին տարիներին զգալի չափով գերազանցել է համախառն արտադրանքի աճը։ Այսպես, օրինակ, եթե համախառն արտադրանքի աճը 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կազմել է ընդամենը 119 տոկոս, ապա ընդհանուր արտադրական ծախսերի աճը, այդ նույն ժամանակաշրջանում, կազմել է 141 տոկոս։

Այսպիսով, նորոգման աշխատանքների ծավալի համապատասխանությունը արհեստանոցների արտադրական հզորությանը, ընդհանուր արտադրական



digitised by A.R.A.R.@

և ընդհանուր տնտեսական ծախսերի կրճատման հուսալի և կարևորագույն ուղիներից մեկն է։

Մեքենաների նորոգման ինքնարժեքի իջեցման նպատակով մի շարք միջոցառումներ են կիրառված «Հայգյուղտնտտեխնիկայի» նորոգման արհեստանոցներում։ Սակայն դրանք գործի սկիզբն են միայն։ Նորոգման ինքնարժեքի հետագա իջեցումը կհանգեցնի այն բանին, որ կոլտնտեսություններն ու սովխոզներն ավելի քիչ կձգտեն իրենց մոտ (այդ նպատակների համար չհարմարեցված արհեստանոցներում) կազմակերպել տրակտորների, ավտոմոբիլների, կոմբայնների և գյուղատնտեսական այդ մեքենաների բոլոր բարդ նորոգումները և ավելի պակաս չափով կխախտվեն մեքենաների նորոգման տեխնոլոգիական և տեխնիկական պայմանները։

Խ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Տեխնիկական գիտությունների դոկտոր

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

---

## ՀԱՍՏԱՏՈՒՆ ՔԱՅԼԵՐՈՎ

Ընդարձակ են մեր սովխոզի մարգագետիններն ու ցանքատարածությունները, խոշոր են անասնապահական ֆերմաները։ Այստեղ մշակվում են մոտ 700 հեկտար հացահատիկ, 134 հեկտար ծխախոտ, 22 հեկտար բանջարեղեն, 21 հեկտար կարտոֆիլ, 20 հեկտար կերի ճակնդեղ, 96 հեկտար խաղողի, 87 հեկտար պտղատու այգիներ. սովխոզն ունի 1500 հեկտար արոտավայրեր, 700 հեկտար խոտհարք։ Անասունների ֆերմաներում կան ավելի քան 1200 խոշոր, 4000 մանր եղջերավոր անասուններ, 700 գլուխ խոզ։

Անցյալ տարի մեր սովխոզը հաջողությամբ կատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու հանձնման պետական առաջադրանքները, տնտեսական տարին փակեց օգուտով։ Բարձր ցուցանիշների հասնելու համար սովխոզի կոլեկտիվն արժանացավ երկրորդ կարգի մրցանակի և պարգևատրվեց 2550 ռուբլով։

Մենք արդեն փորձով համոզվել ենք, որ տնտեսության առաջընթացի համար անհրաժեշտ է գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքենայացում, ցանքատարածությունների պարարտացում, ոռոգելի հողերի ընդարձակում, արտադրության մեջ աշխատողների անձնական շահագրգռվածության բարձրացում։ Այդ ամենի շնորհիվ է միայն հնարավոր ավելացնել բերքատվությունը և անասնաբուծական մթերքների արտադրությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, շահութաբեր դարձնել տնտեսությունը։

Մեր տնտեսության շատ ճյուղերում ձեռքի աշխատանքը փոխարինվել է մեքենայական աշխատանքով։ Եղած հարուստ տեխնիկայի ռացիոնալ օգտագործման շնորհիվ մեքենայացված են արտադրության մի շարք պրոցեսներ։

Մենք լուրջ աշխատանք կատարեցինք ծխախոտի պլանտացիաները պարարտացնելու ուղղությամբ։ Դրա շնորհիվ 1964 թվականին հեկտարից 22-ի փոխարեն ստացանք 28 ցենտներ միջին բերք։ Բայց վատն այն է, որ ծխախոտի մշակումը դեռևս կատարվում է ձեռքով։

Մեր սովխոզի բնակլիմայական պայմաններում կարևոր է ցանքերի և այգիների ոռոգման սիստեմի կազմակերպումը։ Այստեղ էլ մեզ օգնության հասավ տեխնիկան։ Աղստեֆ գետից ջրհան կայանների միջոցով ջուրը բարձրանում է սովխոզի լեռնալանջերն ու դաշտերը։ Միջնահանդ կոչվող հողերում կառուցված է ջրհան կայան, որի շնորհիվ 150 հեկտար հողերը դարձել են ջրարփի։ 1964 թվականին Մակարավանքի գետակի ջուրն անց է կացվել Կածախ կոչվող հողամասը, ուր 50 հեկտարից ավելի հողեր ջրվում են ծխախոտի մշակման նպատակով։ 1964 թ. դաշտավարական առաջին և երկրորդ բրիգադները հեկտարից ստացել են 30—31 ցենտներ ծխախոտ։ Այս տարի նրանք պայքարում են հեկտարից 32—35 ցենտներ ծխախոտի հումք ստանալու համար։ Սովխոզի աշխատավորները օգտագործել են եղած ռեզերվներն ու հնարավորությունները տնտեսության բոլոր ճյուղերը շահութաբեր դարձնելու համար։ 1964 թվականի տնտեսական տարում միայն ծխախոտից ստացել ենք 254 հազար ռուբլու օգուտ։ 1965 թվականին մեզ մոտ արտադրության բոլոր ճյուղերը պլանավորված են օգուտով. կան բոլոր նախադրյալները պլանները կատարելու և գերակատարելու համար։

Ծխախոտագործությունից ստացված շահույթն առաջին հերթին արդյունք է այն բանի, որ մեծ ուշադրություն ենք դարձնում արտադրանքի որակին։ Անասնապահությունից ստացած շահույթն արդյունք է այն բանի, որ բացի կոմբինացված կերից (որն ընդհանուր բալանսում աննշան տոկոս է կազմում) մնացածը մեր սեփականն է։

1965 թվականի առաջին կիսամյակի արդյունքների ամփոփումը ցույց տվեց, որ լավ նախադրյալներ են ստեղծվել տնտեսական տարին բարձր ցուցանիշներով փակելու համար։

Դաշտավարության բնագավառում ավարտված են 186 հեկտար եգիպտացորենի, 14 հեկտար բանջարեղենի ցանքատարածությունների փխրեցումն ու բուժումը, ավարտել ենք 134 հեկտար ծխախոտի պլանտացիաների մշակումը։ Արդեն սկսված է մասսայական քաղը. մեր նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ այս տարի պլանով նախատեսված 300 տոննա ծխախոտի հումքի փոխարեն պետությանը կհանձնենք 350—370 տոննա։ Անասնապահության բնագավառում նույնպես վիճակը բավարար է։ 1240 գլուխ խոշոր եղջերավոր անասուններ և 4000 գլուխ ոչխարներ ժամանակին փոխադրվեցին ամառանոց։ Այժմ ձեռնամուխ ենք եղել կայուն կերի բազայի ստեղծմանը։ Անասնաբուծական մթերքների արտադրության ու վաճառքի առաջին կիսամյակի պլանները կատարված և գերակատարված են. պլանով նախատեսված 28 տոննա մսի փոխարեն արտադրել ենք 33 տոննա, ստացվել է 127 հազար ձու՝ 116 հազարի դիմաց. կատարված են նաև կաթի ու բրդի արտադրության պլանային առաջադրանքները։

ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի որոշմամբ գյուղատնտեսական մի շարք կուլտուրաների և անասնապահական մթերքների գնման ու մթերման գների բարձրացումը եռանդուն աշխատանքի է կոչել մեր սովխոզի ամբողջ աշխատավորությանը։ Բոլորը ոտքի են ելել՝ գյուղատնտեսական տարին բարձր ցուցանիշներով ավարտելու համար։

Թե՛ գյուղատնտեսական մթերքների գնման ու մթերման նոր գները որքան բարերար ազդեցություն կունենան սովխոզի էկոնոմիկայի վրա, երևում է հետևյալից. սովխոզը 1965 թվականին պետությանը պետք է վաճառի 51,2 տոննա տավարի, 38,1 տոննա ոչխարի, 13,4 տոննա խոզի միս, 500 տոննա կաթ, 50 տոննա հացահատիկ։ Մթերման ու գնման նախկին գներով սովխոզը վերոհիշյալ մթերքների վաճառքից պետք է ստանար միայն 21,5 հազար ռուբլի օգուտ, սակայն նոր գներով կաթի ու մսի վաճառքից 50 հազար ռուբլի լրացուցիչ օգուտ կստանա։ Բացի այդ, սովխոզը հացահատիկի սերմնաբուծությանն է տրամադրել 171 հեկտար ցանքատարածություն, որից արտադրելու ու վաճառելու է 354 տոննա սերմ. դրանից ստանալու ենք մոտ 6 հազար ռուբլու օգուտ։

Պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումը կարևոր նշանակություն տվեց նաև սովխոզների ղեկավար աշխատողների, մասնագետների ու գործավարձային կարգով վարձատրվող բոլոր բանվորների ու ծառայողների անձնական շահագրգռվածության բարձրացմանը, որպես գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և նրա որակի բարձրացման կարևորագույն պայման։





digitised by A.R.A.R.@

Բանվոր ծառայողների վարձատրության գործում ղեկավարվում ենք ՍՄԿՊ ծրագրի՝ լավ աշխատանքի, լավագույն արդյունքի համար՝ ավելի շատ վարձատրություն սկզբունքով:

Ներկայումս մեր սովխոզում հիմնականում կիրառվում է վարձատրության գործավարձային սիստեմը՝ տարիֆային դրույքներին և աշխատանքի կարգերին համապատասխան, որոնք սահմանված են տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաներով. այդ ձևն այժմ արդարացնում է իրեն: Սակայն այդ նորմաներն անփոփոխ չեն մնում: Տարին ամփոփելուց հետո, ելնելով նախորդ տարվա փորձից, սովխոզի ակտիվի, մասնագետների, բրիգադավարների ու ֆերմայի վարիչների օգնությամբ ու առաջարկությամբ վերանայվում, անհրաժեշտության դեպքում ճշտվում են հին նորմաները, որոնք բարձրացնում են բանվորների անձնական շահագրգռվածությունը: Անձնական շահագրգռվածության բարձրացմանը նպաստում է նաև լրացուցիչ վարձատրության նոր կարգը:

Սովխոզում այժմ գոյություն ունեն լրացուցիչ վարձատրության մի շարք ձևեր. արտապլանային արտադրանքի համար բուսաբուծության և անասնապահության մեջ աշխատող բանվորներին տրվում է 16 տոկոս լրացուցիչ վարձատրություն՝ արտապլանային արտադրանքի գումարից. ուղղակի ծախսերի տնտեսման գումարից որպես լրացուցիչ վարձատրություն վճարվում է բուսաբուծության և անասնապահության մեջ տնտեսված գումարների 25 տոկոսը:

Մեր նվաճումները նկատելի չափով բարելավել են բանվորների տնտեսական վիճակը. բարձրացել է աշխատավարձը: Անցած տնտեսական տարին բարձր ցուցանիշներով ավարտելու համար 36,6 հազար ռուբլի լրացուցիչ վարձատրության գումարից ծխախոտագործ բանվորներն ստացել են 19 հազար, դաշտավարական առաջին բրիգադան՝ 4000, երկրորդ բրիգադան՝ 4700 ռուբլի, իսկ անասնապահության մեջ արտապլանային արտադրանքի համար լրացուցիչ վարձատրություն ստացան առաջավոր մի շարք կթվորուհիներ:

Արտադրական բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար սովխոզի ղեկավար աշխատողներն ու մասնագետները, բացի աշխատավարձի լրիվ դրույքներից, արտադրության և իրացման պլանների գերակատարման յուրաքանչյուր տոկոսի համար ստացան՝ իրենց աշխատավարձի 10 տոկոսի և գերպլանային օգուտների գումարից՝ 5 տոկոսի չափով լրացուցիչ վարձատրություն: ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումներից ելնելով, սովխոզի ղեկավարությունը մշակել է լրացուցիչ վարձատրության նոր կարգ՝ 1965 թվականի համար:

Մեր առջև դրված խնդիրների լուծման կարևորագույն պայմանն է արտադրության ճիշտ պլանավորումը: Պլանավորման ընթացքում ելնում ենք տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաներից և նրա հիմքում դնում սովխոզի զարգացման խնդիրները և պետությանը վաճառվող գյուղատնտեսական մթերքների արտադրության կոնտրոլ թվերը:

Սովխոզի արտադրական ծրագրի համար հիմք են հանդիսանում նախօրոք կազմվող տեխնոլոգիական քարտերը, որոնցում մանրամասն ցույց են տրվում յուրաքանչյուր կուլտուրայի մշակման ագրոտեխնիկական միջոցառումները՝ ցանքից սկսած մինչև բերքը պահեստ կամ մթերակայան հանձնելը, դրանց համապատասխան էլ նախատեսվում են բանվորական օրվա աշխատավարձի, տրանսպորտի ծախսերը, վերջնականապես ամփոփվում և կազմվում է միասնական արտադրական ֆինանսական պլան, որը տրվում է յուրաքանչյուր արտադրական տեղամասին, բրիգադային և օղակին:

Այս ամենը, սակայն, գործի սկիզբն են միայն: Մենք չենք կարող հանգստանալ ձեռք բերածով: Այգեգործության ու ծխախոտագործության բնագավառներում եղած ակնհայտ նվաճումների հետ մեկտեղ ունենք և լուրջ թերություններ: Ամենից առաջ նշենք, որ տարվելով նոր ծառատեսակներով, բոլորովին մոռացել ենք մեր հին ու արժեքավոր այն տեսակները, որոնք ավելի դիմացկուն են, բերքատու և չեն վարակվում զանազան հիվանդություններով: Այդ ծառատեսակները վերականգնելու և բազմացնելու նպատակով ստեղծելու ենք սեփական տնկարանային տնտեսություն: Բացի այդ, մեր հեռանկարային պլանում նախատեսում ենք նաև մի շարք հազվագյուտ, մերձարևադարձային կուլտուրաների մշակությունը, քանի որ Աղստեֆի հովտում հիանալի աճում են թզենին, նռնենին, ձիթենին, նշենին և ճապոնական խուրման:

Սովխոզի դիրեկցիան ու պարտիական կազմակերպությունն իրենց գլխավոր խնդիրն են համարում առաջիկայում մեքենայացնել ծխախոտի պլանտացիաների միջշարային փխրեցման, շրջանակների փոխադրման, տերևների շարացման, հիվանդությունների դեմ պայքարի պրոցեսները, որի շնորհիվ նկատելիորեն կիջնի արտադրանքի ինքնարժեքը, կաճի տնտեսության շահույթը: Մենք մտահոգված ենք նաև անասնաբուծական ֆերմաներում աշխատատար պրոցեսները, խոտի հնձման ու կուտակման աշխատանքները ևս մեքենայացնելու հարցով: Ճիշտ է, մեր հողային պայմաններում (խիստ թեքությունը) այդ հարցի լուծումը որոշ դժվարությունների հետ է կապված, բայց գյուղատնտեսության մեխանիզացիայի բնագավառում աշխատող գիտնականների և մասնագետների հետ վճռական քայլ պետք է կատարենք այս ուղղությամբ: Առանց դրա, անասնաբուծությունը մեծ օգուտներ չի բերի տնտեսությանը:

Այս կարևոր խնդրին զուգընթաց, մենք ձգտում ենք վերացնել անցյալի այն սխալները, որոնք մեծ հարված են հասցրել ցանքաշրջանառությանը և անասնապահության զարգացմանը: Խոսքը վերաբերում է բազմամյա խոտաբույսերի՝ կորնգանի, առվույտի մշակությանը, որն անցյալ տարիներին գրեթե վերացվել էր, որի հետևանքով զգալիորեն վնասվել էր հողի կառուցվածքը, ընկել բերքատվությունը, պակասել էր կերը: Նման վիճակին վերջ տալու նպատակով, այս տարի սովխոզը կատարել է 25 հեկտար կորնգանի ենթացանք. առաջիկա երկու տարում բազմամյա խոտաբույսերի ցանքը կհասցվի 150 հեկտարի, որը եկամտաբերության հաստատուն աղբյուր կհանդիսանա:

Աչաջուրցիներն իրենց բոլոր ջանքերը լարել են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու, ավելի շատ շահույթ ստանալու համար:

Գ. ՑՈՒՑՈՒԼՅԱՆ

Իջևանի Աչաջրի պտղա-բանջարա-կաթնաանասնապահական սովխոզի դիրեկտոր

---

# ԱՐՄԱՏԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ ԵՆ ՊԵՏՔ

ՀՍՍՌ տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկությունները հասել են որոշակի հաջողությունների: 1958—1963 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է 22 տոկոսով, ընդ որում տրիկոտաժի արդյունաբերությանը՝ մոտ 75 տոկոսով: Այդ նույն ժամանակաշրջանում հիմնական արտադրական ֆոնդերն աճել են համապատասխանորեն 44 և 60,2 տոկոսով:

Եթե 1958 թվականին ռեսպուբլիկայի տրիկոտաժի ձեռնարկությունները թողարկել են 27,8 միլիոն զույգ գուլպա ու նասկի, 20 միլիոն հատ տրիկոտաժե սպիտակեղեն և 1,5 միլիոն հատ տրիկոտաժե վերնազգեստ, ապա 1963 թվականին՝ 40,1 միլիոն զույգ գուլպեղեն (տղամարդու ու կանացի), 26,5 միլիոն հատ տրիկոտաժե սպիտակեղեն և 2,5 միլիոն հատ տրիկոտաժե վերնազգեստ: Ամբողջ տրիկոտաժի արդյունաբերությունը 1964 թվականին համախառն արտադրանքի պլանային առաջադրանքը կատարել է միջին հաշվով 112,2, աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը՝ 108,7 տոկոսով: Թվում է, թե անհանգստանալու ոչինչ չկա: Բայց իրականում այդպես չէ: Ռեսպուբլիկայի տրիկոտաժի ձեռնարկությունների մեծ մասում իջնում է հաստոցային պարկի ակտիվ մասի արտադրողականությունը (բնա-





digitised by A.R.A.R.@

կան արտահայտությամբ), որը, ցավոք, իր արտահայտությունը չի գտնում ձեռնարկության հիմնական ցուցանիշներում և այդ ուղղությամբ գրեթե ոչ մի հետազոտական-վերլուծական աշխատանք չի տարվում։

Ասածս հիմնավորելու համար բերենք տվյալներ մի քանի տիպի հիմնական արտադրական հաստոցների արտադրողականության գծով.

| | Չափի միավոր | Հաստոցների արտադրողականությունը մեկ ժամում | | | |
|---|---|---|---|---|---|
| | | 1961 | 1962 | 1963 | 1964 |
| КАС—14—2-ը հաստոցներով 54/2 ր/թ № 2 արտիկուլ կանացի գուլպաներ . . . . . . . . . | զույգ | 7,8 | 7,7 | 7,6 | 7,7 |
| КАС—22—2с հաստոցներով № 150—200 թելով № 7 արտիկուլի կանացի կապրոնե գուլպաներ . . | » | 3,1 | 3,2 | 2,9 | 2,9 |
| КАС—22—2с հաստոցներով № 200/2 թելով № 467 արտիկուլի կանացի կապրոնե գուլպաներ . | » | — | 4,2 | 3,7 | 3,8 |
| КАС—30 № 73 և № 74 արտիկուլի կանացի կապրոնե գուլպաներ . . . . . . . . . | » | 1,5 | 1,6 | 1,5 | 1,4 |
| ДЧТ—40/2 և 65/2 թելերով № 639 մանկական գուլպաներ . . . . . . . . . . . . . | » | — | 10,3 | 10,1 | 10 |
| МТ—26 դասի հաստոցներով 2/54, 2/60—18/1 խավոր գործվածքներ . . . . . . . | գրամ | — | 955 | 865 | 864,5 |
| «Ինտերլոկ» հաստոցով երկլատիկանի 54/1 բամբակյա գործվածք . . . . . . . . . | » | — | 105 | 102 | 103 |
| МТ—26 դասի բամբակյա հարթ գործվածք . . | » | — | 413 | 410 | 412 |
| «Վերտելկա» հենքագործվածքային СК—54 հաստոցով տրիկո-տրիկո գործվածքի № 120 վիսկոզաթելից . . . . . . . . . . . . . . . . | » | — | 2,7 | 2,68 | 2,67 |

Աղյուսակում բերված տվյալները ցույց են տալիս, որ գլխավորապես գուլպայի և մասամբ էլ տրիկոտաժե գործվածքների արտադրության մեջ հաստոցների օգտագործումը նախորդ տարիների համեմատ վատ է կազմակերպված, որի պատճառով էլ նրանց փաստացի արտադրողականությունը մի շարք արտադրանքների գծով կամ իջել է կամ էլ (լավագույն դեպքում) մնացել նույն մակարդակի վրա։ Իջեցման տատանումները հասնում են 5—20 տոկոսի։ Բացի այդ, ռեսպուբլիկայի տրիկոտաժի ձեռնարկությունները մի շարք կարևոր արտադրական հաստոցների արտադրողականությամբ ետ են մնում Միության առաջավոր ձեռնարկությունների համապատասխան ցուցանիշներից։ Այսպես, օրինակ, եթե կանացի բամբակյա գուլպաներ արտադրող (արտիկուլ № 2 54/2 թելից) КАС—14—2С տիպի հաստոցի արտադրողականությունը մեկ ժամում Վիտեբսկի ԿԻՄ» կոմբինատում կազմում է 9,5 զույգ, Գոմելի տրիկոտաժի կոմբինատում՝ 9,3, Լենինգրադի «Կրասնոե զնամյա» ֆաբրիկայում՝ 9, ապա Լենինականի գուլպայի ֆաբրիկայում այն չի անցնում 8 զույգից։

КАС—30 տիպի հաստոցով կանացի կապրոնե № 73 և № 74 արտիկուլի գուլպաներ թողարկվել են Լենինականի գուլպայի ֆաբրիկայում ընդամենը 1,5 զույգ, մինչդեռ Լենինգրադի «Կրասնոե զնամյա» կոմբինատում՝ 2,7, Սմոլենսկի գուլպայի ֆաբրիկայում՝ 2,6, Ռիգայի «Ավրորա» ֆաբրիկայում՝ 2,4 զույգ և այլն։ Հենքագործվածքային (վերտելկա) հաստոցների արտադրողականությամբ (№ 75 թելով տրիկո-տրիկո տիպի գործվածքի թողարկման ժամանակ) Լենինականի տրիկոտաժի ֆաբրիկան ավելի քան 43,5 տոկոսով ետ է մնում Վիշնեվոլոցկու «Փարիզի կոմունա» կոմբինատի համապատասխան ցուցանիշից։

Տեղակայված դազգահների ոչ լրիվ օգտագործման մասին է վկայում նաև պլանավորված հաստոցաժամերի թերակատարումը։ Այսպես, Ստեփանավանի գուլպայի ֆաբրիկայում տեղակայված հաստոցների փաստացի աշխատաժամերը կազմում են նրանց համար պլանով սահմանվածի 98,0 տոկոսը, Լենինականի գուլպայի ֆաբրիկայում՝ 97,4, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 98,8



տոկոսը և այլն։ Հաստոցային պարկի ոչ բավարար օգտագործումը հասցրել է այն բանին, որ հիմնական արտադրական ֆոնդերի յուրաքանչյուր 1000 ռուբլուն ընկնող համախառն արտադրանքի թողարկումը 1964 թվականին, նախորդ տարիների համեմատությամբ, գրեթե չի աճել, իսկ Ստեփանավանի գուլպայի, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկաներում այն նույնիսկ իջել է։ Դա նշանակում է, որ տրիկոտաժի մի քանի ձեռնարկություններում նվազում է հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը։ Դեռևս ցածր է հաստոցների հերթափոխության գործակիցը։ Այսպես, օրինակ, 1964 թվականին գործվածքային МЅ—1 տիպի հաստոցների հերթափոխության գործակիցը 2,3 է, հենքագործվածքային մեքենաներինը՝ 2,2, գուլպեղեն արտադրող կլոր տիպի հաստոցներինը (круглочулочные) 2,6 և այլն. մինչդեռ Միության մի շարք ռեսպուբլիկաներում հաստոցների նշված խմբերի գծով հերթափոխության գործակիցը հասնում է 2,7—2,9 (Ուզբեկական, Մոլդավական, Ուկրաինական և այլն)։

Ռեսպուբլիկայի տրիկոտաժի արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ մեծ են հաստոցների ու բանվորների պարապուրդները, զգալի չափերի է հասնում բանվորների հոսունությունը, ցածր է կադրերի որակավորման աստիճանը, թերություններ կան աշխատանքի կազմակերպման բնագավառում և այլն։

Հաստոցների պարապուրդների զգալի մասն առաջանում է ժամանակին և անհրաժեշտ որակի հումք չստանալու, ձեռնարկության առանձին արտադրամասերի նորմալ համամասնության բացակայության, հին, ցածր արտադրողական հաստոցների առկայության, աշխատաժամանակի մեծ կորուստների և մի շարք այլ պատճառներով։ Մի քանի ձեռնարկություններում (տրիկոտաժի № 1 և № 2, Գորիսի, Կամոյի տրիկոտաժի ֆաբրիկաներ և այլն) բացակայում է անհրաժեշտ համամասնությունը մանող, ոլորող և գործվածքային արտադրությունների միջև։ Հաճախ գործվածքային ցեխերը մանող արտադրությունից կիսաֆաբրիկատներ չեն ստանում ո՛չ միայն նրա համար, որ թել չկա, այլ այն պատճառով, որ մանող ցեխն իր կարողություններով հնարավորություն չունի լրիվ բավարարելու գործվածքային ցեխի պահանջները։ Այդ պատճառով հաստոցների պարապուրդները տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում կազմում են ամբողջ պարապուրդների մոտ 8, տրիկոտաժի № 2 ֆաբրիկայում՝ 10 տոկոսը և այլն։

Գործվածքային հաստոցների պարապուրդները կրճատելու և հիշյալ երկու արտադրությունների միջև անհրաժեշտ համամասնություն սահմանելու համար պետք է հնարավորին չափ ընդլայնել մանող-ոլորող արտադրությունների կարողությունները, միջոցառումներ մշակել մեկ իլիկի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Ի դեպ, պետք է խոստովանել, որ չնայած մանող-ոլորող հաստոցների (իլիկների) ծանրաբեռնվածությանը, դեռևս զգալի չափերի են հասնում դրանց պարապուրդները։ Իլիկների պարապուրդների ճնշող մեծամասնությունը հումքի ոչ բարձր որակի արդյունք է։ 1964 թվականին Լենինականի, Ստեփանավանի և Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկաների ստացած հումքի մոտ կեսը, գուլպայի ֆաբրիկայի ստացած հումքի ավելի քան 40 տոկոսը եղել է դեֆեկտավոր և անորակ։ Վատորակ հումքի պատճառով թելը հաճախ կտրվում է, այն միացնելու համար բանվորն զգալի աշխատանք է ծախսում (ամբողջ նորմաժամանակի մոտ 30—40 տոկոսը)։ Վատորակ հումքի պատճառով թելի կտրվածության հաճախականությունը ավելի քան 2—2,5 անգամ գերազանցում է նորմալ որակի թելի կտրվածությունը, որի հետևանքով իլիկների անխուսափելի պարապուրդները կրկնապատկվում են։ Մանող-ոլորող հաստոցների արտադրողականությունը բարձրացնելու կարևոր պայմաններից մեկը թելի կտրվածությունը նվազագույնի հասցնելն է։ Դրան կարելի է հասնել ինչպես հումքի որակի բարձրացման, այնպես էլ հիշյալ դեֆեկտը վերացնելու համար պահանջվող բանվորական ժամանակի ծախսումները կրճատելու միջոցով։

Այս տեսակետից խոշոր նշանակություն ունի առաջավոր բանվորների փորձի ուսումնասիրումը, ընդհանրացումն ու այն համանման մասնագիտու-



digitised by A.R.A.R.@

թյան բանվորներին ուսուցանելը: Օրինակ, տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում
ընդհանրացվեց առաջավոր մանող բանվորուհի Ժ. Տերտերյանի աշխատանքա-
յին փորձը, բանվորներն ուսումնասիրեցին և յուրացրեցին այն, որը հնարա-
վորություն տվեց թելի կտրվածությունը վերացնելու համար պահանջվող ժա-
մանակը կրճատելու 20—25 տոկոսով:

Տրիկոտաժի ձեռնարկությունները բարձրորակ հումքով ապահովելու
խնդրով պետք է մտահոգվի ՀՍՍՌ Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության
վարչությունը:

Տեղակայված հաստոցները լրիվ ծանրաբեռնվածությամբ աշխատեցնելու
գործում խոշոր նշանակություն ունի նաև բանվորական աշխատաժամանակի
ռացիոնալ օգտագործումը: Մինչդեռ տրիկոտաժի ձեռնարկությունների մեծ
մասում աշխատաժամանակի ֆոնդը արդյունավետ չի օգտագործվում, աշխա-
տաժամանակի կորուստներն զգալի չափերի են հասնում, որն իր բացասական
ազդեցությունն է թողնում հաստոցների օգտակար գործակցի վրա: Բերենք
տվյալներ. աշխատօրվա բացարձակ կորուստները (գործալքումներ, ամբողջ-
օրյա պարապուրդներ, վարչության կողմից թույլատրված օրեր) 1964 թվակա-
նին ամբողջ տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում կազմե-
ցին մոտ 57000 մարդ-օր, որից գործալքումներ՝ 3914 մ/օր, ամբողջօրյա պա-
րապուրդներ՝ 13185 մ/օր, տրիկոտաժի № 1 ֆաբրիկայում՝ 6000 (որից միայն
գործալքումներ՝ 710 մարդ-օր), Լենինականի գուլպայի ֆաբրիկայում՝ 20000
(որից գործալքումներ 2771, ամենօրյա պարապուրդներ՝ 7840 մարդ-օր), Կի-
րովականի, Կամոյի անվան տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 8000 (որից գործա-
լքումներ 130, ամբողջօրյա պարապուրդներ՝ 2287 մարդ-օր) և այլն:

Մեծ չափերի են հասնում նաև ներհերթափոխային չնախատեսված պա-
րապուրդները. ամբողջ տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություննե-
րում դրանք կազմում են մոտ 160 հազար, Ստեփանավանի գուլպայի ֆաբրի-
կայում՝ 11,2 հազար, Լենինականի գուլպայի ֆաբրիկայում՝ ավելի քան 95
հազար, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ մոտ 68 հազար մարդ-ժամ և
այլն: Աշխատաժամանակի այս զգալի կորուստները ձեռնարկությունների ղե-
կավարությանն ստիպում են դիմել արտաժամյա աշխատանքի: 1964 թվակա-
նին տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում արտաժամյա
աշխատանքները կազմեցին 13700 մարդ-ժամ, այդ թվում, Լենինականի գուլ-
պայի ֆաբրիկայում՝ մոտ 7000, Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայում
2534 մարդ-ժամ և այլն: Մինչդեռ նորմայից դուրս, չնախատեսված բանվորա-
կան ժամանակի կորուստների վերացումը հնարավորություն կտար ստանալու
հարյուր հազարավոր ռուբլիների լրացուցիչ արտադրանք և արտաժամ աշխա-
տանքի կարիք չէր զգացվի: Աշխատանքի ու արտադրության կազմակերպումը
բարելավելու միջոցով աշխատաժամանակի կորուստների վերացումը խոշոր
ռեզերվ է ինչպես բանվորների, այնպես էլ հաստոցների արտադրողականու-
թյունը բարձրացնելու համար:

Աշխատանքային ժամանակի վերոհիշյալ կորուստներն ազդում են նաև
բանվորների՝ արտադրական նորմաների կատարման վրա: Արտադրական նոր-
մաները թերակատարող բանվորների թիվը տրիկոտաժի արդյունաբերության
ձեռնարկություններում 1964 թվականին կազմել է 1700 մարդ, կամ ամբողջ
գործարքային բանվորների 26,9 տոկոսը. Ստեփանավանի գուլպայի ֆաբրի-
կայում այն հասնում է 60, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկայում՝ 35,5 տոկոսի:

1965 թ. առաջին եռամսյակում պլանները թերակատարող բանվորների
տեսակարար կշիռը ամբողջ գործարքային բանվորների ընդհանուր թվում
առանձին փոփոխություն չի կրել, իսկ որոշ ֆաբրիկաներում նույնիսկ աճել է
(Լենինականի գուլպայի, Կամոյի տրիկոտաժի և այլն): Բանվորների աշխա-
տաժամանակի ռացիոնալ օգտագործումը, ինչպես նաև արտադրական նորմա-
ները թերակատարող բանվորների թվի խիստ կրճատումը պետք է գտնվի ձեռ-
նարկությունների տնտեսական ղեկավարների, պարտիական, պրոֆմիութենա-
կան, ԼԿԵՄ կազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Աշխատանքա-
յին օրվա կորուստները կրճատելու և դրա հիման վրա աշխատանքի արտադրո-



ղականությունը բարձրացնելու հարցերը պետք է հանգամանորեն քննարկվեն
տրիկոտաժի մի շարք ձեռնարկություններում: Այդ գործում ֆաբրիկաների դի-
րեկցիային մեծ օգնություն կարող են ցույց տալ ինչպես պարտիական ու հա-
սարակական կազմակերպությունները, այնպես էլ պարտիական ու պետական
վերահսկողության խմբերը:

Արտադրության կազմակերպումը բարելավելու խնդրում խոշոր նշանա-
կություն ունի ռիթմիկ աշխատանքի ապահովումը: Ձեռնարկության, ցեխի հա-
մաչափ արտադրության կազմակերպումը պետք է հնարավորություն ստեղծի
պլանային առաջադրանքները կատարելու ինչպես ծավալով, ասորտիմենտով
ու որակով, այնպես էլ կատարման ժամկետով: Դա նշանակում է պլանները
կատարել ոչ թե միջին հաշվով՝ ձեռնարկության մասշտաբով, այլ ամեն մի ցե-
խում, տեղամասում, բրիգադայում և ամեն մի հաստոցի վրա:

Համաչափ արտադրանքի թողարկման տնտեսական արդյունավետությունը
կայանում է նրանում, որ այն ապահովում է աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացումը, քանի որ տվյալ դեպքում արտադրական կարողությունները
և աշխատուժն օգտագործվում են ռացիոնալ, վերանում է ցածր արտադրողա-
կանություն ունեցող արտաժամյա աշխատանքի անհրաժեշտությունը, արա-
գանում է շրջանառու միջոցների շրջապտույտը, որի շնորհիվ հնարավորություն
է ստեղծվում նույն պլանային արտադրանքները կատարելու ավելի փոքր շըր-
ջանառու միջոցներով:

Չնայած ռիթմիկ աշխատանքի բացահայտ արդյունավետությանը, տրիկո-
տաժի արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ անհամաչափ են աշ-
խատում (Լենինականի գուլպայի, Երևանի գուլպայի, Ստեփանավանի տրիկո-
տաժի և այլ ֆաբրիկաներ): Հիշյալ ձեռնարկություններում արտադրանքի թո-
ղարկման որոշ անհամաչափության պատճառը հիմնականում անհրաժեշտ քա-
նակությամբ հումքի և օժանդակ նյութերի ոչ համաչափ մատակարարումն է:

Մեր տրիկոտաժի ձեռնարկությունների առանձին ղեկավարներ մտա-
հոգված չեն բանվորական որակյալ և կայուն կադրեր ունենալու խնդրով: Մի-
այն 1964 թվականին Ստեփանավանի գուլպայի ֆաբրիկայում աշխատանքից
ազատվել են արտադրական բանվորների ավելի քան 31,0, Երևանի գուլպայի
ֆաբրիկայում՝ ավելի քան 40, ձեռնոցների ֆաբրիկայում՝ մոտ 20 տոկոսը և
այլն: Աշխատուժի հոսունությունը բացասաբար է անդրադառնում բանվորների
որակավորման ընդհանուր մակարդակի վրա: Մի ձեռնարկությունից մի այլ
ձեռնարկություն անցնելու հետևանքով առաջանում է աշխատանքի որոշ ընդ-
հատում, իսկ այդ իջեցնում է աշխատանքի որակը: Նոր ընդունվող բանվորը
որոշ ժամանակաշրջանում ծանոթանում է արտադրության տեխնոլոգիային,
ընտելանում նոր պայմաններին, այդ պատճառով էլ նրա արտադրողականու-
թյունն այդ շրջանում ցածր է:

Ուստի տրիկոտաժի ձեռնարկությունների կոլեկտիվների առաջնահերթ
խնդիրներից պետք է լինի՝ միջոցներ ձեռնարկել բանվորների հոսունությունը
կրճատելու, բանվորների կայուն կադրեր ապահովելու ուղղությամբ: Ցավոք
պետք է ասել, որ տրիկոտաժի գրեթե ոչ մի ֆաբրիկայում խորապես չեն ու-
սումնասիրվում բանվորների՝ աշխատանքից ազատվելու իրական պատճառ-
ները ու կոնկրետ միջոցներ չեն ձեռնարկվում կադրերի հոսունությունը կասեց-
նելու և ապա իսպառ վերացնելու համար:

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

digitised by A.R.A.R.@

# ՊԱՏՇԱՃ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ՈԼՈՐՏԻ ԶԱՐԳԱՑՄԱՆԸ

Մեծ է կենցաղ սպասարկման դերը ժողովրդի բարեկեցության վերելքի գործում. այն ունի բազմակողմանի ազդեցություն հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա։ Կենցաղի վերափոխումը կոմունիստական սկզբունքին համապատասխան՝ կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասն է։

Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ տարեցտարի բարելավվում է սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական սպասարկումը, փոխվում է ժողովրդի կենցաղը։ Այդ հոգատարության վառ ապացույցն են 1964 թվականի հուլիսի 13-ի ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիայում ընդունված՝ Լուսավորության, առողջապահության, բնակարանային-կոմունալ տնտեսության, առևտրի, հասարակական սննդի և բնակչությանն անմիջականորեն սպասարկող այլ ճյուղերի աշխատողների աշխատավարձի բարձրացման, ինչպես նաև կոլտնտեսականների թոշակավորման օրենքները։ Սեսիայի որոշումները ցույց են տալիս, թե մեր երկրում ինչպիսի վիթխարի նշանակություն է տրվում աշխատավորների կենցաղի բարելավմանը, կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Կենցաղի կոմունիստական վերակառուցումը նախատեսում է ո՛չ միայն տնային, կենցաղային, այլև առևտրի, հասարակական սննդի բարելավում, կոմունալ սպասարկման, կուլտուրական ցանցի հետագա զարգացում։

Կենցաղային սպասարկման կատարելագործումը կապված է նաև աշխատավորների արտաաշխատանքային ժամանակն ավելի նպատակահարմար օգտագործելու պրոբլեմի հետ։ Այլ խոսքով, կենցաղային սպասարկման նպատակն է՝ ժամանակ ազատել մարդու հոգևոր զարգացման, պայմաններ ստեղծել նրա աշխատանքի արտադրողականության բարձրացման և կուլտուրական հանգստի համար։

Ճիշտ է, տնային աշխատանքները թեթևացնող մեքենաների և մեխանիզմների արտադրությունը, հասարակական ճաշարանների, լվացքատների, վերանորոգման արհեստանոցների ընդլայնումը նպաստում են կենցաղի ինքնասպասարկման ժամանակի կրճատմանը, բայց այնուամենայնիվ, մարդկային աշխատանքի զգալի մասը, բնակչությանն սպասարկող հասարակական ձևերի ու միջոցների անբավարարության պատճառով, անարդյունավետ կերպով ծախսվում է ամեն տեսակ տնային տնտեսական աշխատանքների վրա։

Արտաաշխատանքային ժամանակի արդյունավետ օգտագործման պրոբլեմը սերտորեն կապված է հատկապես կենցաղում, կանանց տնտեսական ծանր աշխատանքի վերացման հետ։ Պետք է նկատի ունենալ, որ այժմ հիմնարկ-ձեռնարկություններում աշխատելուն զուգընթաց, կինը օրական 3—5 ժամ ծախսում է տնային տնտեսությունը վարելու համար։ Ինչպես ցույց են տալիս համամիութենական մարդահամարի տվյալները, միայն տնային տնտեսության մեջ զբաղվածների թվում կանանց տեսակարար կշիռը հասնում է մոտ 90 տոկոսի։

Աշխատավորներին տնային տնտեսության սակավ արտադրողական աշ-



խատանքից ազատելու և նրանց կենցաղային կարիքները բավարարելու երկու ուղի է ընտրված. առաջին՝ տնային որոշ աշխատանքների մեքենայացում՝ հիմնականում կենցաղային էլեկտրական տարբեր մեքենաների ու սարքերի միջոցով և, երկրորդ՝ բնակչությանն սպասարկող ավելի արդյունավետ, լիակատար կոմպլեքսային ծառայության ստեղծում։

Այդ տեսակետից մեր ռեսպուբլիկայում շատ բան է արված։ Բնակչության կենցաղը գնալով ավելի է ապահովվում կոմունալ ծառայություններով։ Կոմունալ այնպիսի հարմարություններ, ինչպիսիք են՝ էլեկտրականությունը, գազը, ջրմուղը, կոյուղին, ջեռուցումը, բավականին թեթևացրել են բնակիչների տնային աշխատանքը՝ ժամանակ ազատելով մարդկանց զարգացման համար։ Որոշակի առաջընթաց է տեղի ունեցել կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ցանցի ընդլայնման ու զարգացման ուղղությամբ։ Բայց, չնայած դրան, աշխատավորության բեռնաթափումը տնային գործերից մի շարք պատճառներով դեռևս անբավարար է։ Այդպիսի պատճառներից են՝ սպասարկման ոլորտի ձեռնարկությունների և կազմակերպությունների ցանցի անբավարար զարգացումն ու տեղաբաշխումը (որն աչքի է ընկնում ինչպես քաղաքային և գյուղական բնակավայրերի միջև, այնպես էլ մեծ քաղաքների ներսում տերիտորիալ տեղաբաշխման մեծ անհավասարաչափությամբ) և սպասարկման ցածր կուլտուրայի հետևանքով տնտեսության այդ ճյուղի հնարավորությունների ոչ լրիվ օգտագործումը։

Վերջերս, պլանավորող օրգանների հանձնարարությամբ, ռեսպուբլիկայի ԳԱ աշխարհագրության սեկտորն ուսումնասիրեց սպասարկման ոլորտի մի քանի բնագավառներ և կազմեց քարտեզ, որն արտացոլում է քաղաքների ու գյուղական շրջկենտրոնների ապահովվածությունը սպասարկման ոլորտի ձեռնարկություններով։ Ուսումնասիրությունները և դրանց հիման վրա կազմված քարտեզը ցույց տվեցին, որ ոչ մի քաղաքի և գյուղական շրջկենտրոնի բնակչություն այժմ գործող նորմաների չափով ապահովված չէ առևտրի, հասարակական սննդի, կոմունալ և կենցաղային սպասարկման այլ ձեռնարկություններով։ Այդ բնակավայրերը խանութներով (արդյունաբերական ապրանքներինը ներառյալ) ապահովված են 75, ճաշարաններով (ներառյալ ռեստորանները, բուֆետները և նույնիսկ ֆաբրիկաների ու գործարանների տերիտորիաներում գտնվողները, որոնցից բնակչության լայն մասսաները չեն կարող օգտվել), 66, հյուրանոցներով՝ 65, բաղնիքներով՝ 35, լվացքատներով՝ 7,4, լվացքատների ընդունման կետերով՝ 13,5 և կենցաղ սպասարկման այլ ձեռնարկություններով՝ 10 տոկոսով։ Ընդ որում Երևան քաղաքի ապահովվածությունը հասնում է հյուրանոցներով՝ 36, լվացքատներով՝ 8, իսկ լվացքատների ընդունման կետերով ու կենցաղ սպասարկման այլ ձեռնարկություններով՝ 14 և 6 տոկոսի։

Ինչպես ցույց են տալիս բերված թվերը, անհանդուրժելիորեն ցածր է սպասարկման ոլորտի հիմնարկ-ձեռնարկություններով ապահովվածության մակարդակը։ Բայց մյուս կողմից էլ՝ սպասարկման ցածր կուլտուրայի պատճառով բնակչությունը լրիվ չի օգտվում առկա կարողություններից։ Այսպես, 1963 թվականին լվացքատների կողմից ընդունված 1543 տոննա սպիտակեղենից բնակիչների հավանությանն է արժանացել ընդամենը 113 տոննան, կամ 7,3 տոկոսը։ Ռեսպուբլիկայի 50 քաղաքային բնակավայրերից ընդամենը 11-ն ունեն լվացքատներ։ Այնպիսի քաղաքներ, ինչպիսիք են՝ Դիլիջանը, Կամոն, Գորիսը, Էջմիածինը, Սևանը, Իջևանը, Հրազդանը և այլն մինչև այժմ լվացքատներ չունեն։

Բնակչության սպասարկման կարևոր բնագավառներից մեկը հասարակական սննդի օրինակելի կազմակերպումն է։ Ինչպես արդեն նշվեց, քաղաքային բնակավայրերը խիստ անբավարար չափով են ապահովված ճաշարաններով։ Բայց միաժամանակ, եղածներն էլ դեռևս արդյունավետ չեն օգտագործվում։ Բնակչությունը հաճույքով չի օգտվում ճաշարաններից, այլ կերակուրները պատրաստում է տանը, քանի որ ճաշարաններում պատրաստվածներն անորակ են, իսկ սպասարկման կուլտուրան՝ խիստ ցածր։

Զափազանց անբավարար է զարգացած նաև կենցաղային սպասարկման



digitised by A.R.A.R.@

ձեռնարկությունների ցանցը: Մի շարք քաղաքներում, չխոսելով արդեն քաղա-
քատիպ ավանների և գյուղական վայրերի մասին, չեն կազմակերպված քիմիա-
կան մաքրման ու ներկման, վերանորոգման արհեստանոցներ և այլն: Այսպես,
օրինակ, ռեսպուբլիկայի 23 քաղաքներից 9-ը (Ալավերդի, Դիլիջան, Ղափան,
Կամո, Գորիս, Ջերմուկ և այլն) չունեն քիմիական մաքրման, 11-ը՝ կոշիկի,
հագուստի և տնտեսական իրերի վերանորոգման ձեռնարկություններ: Բնակ-
չությանն սպասարկող այլ ձեռնարկություններ և կազմակերպություններ, հատ-
կապես, տնային կահույքի վերանորոգման և վարձով տրվող կուլտուր-կենցա-
ղային ապրանքների կետերը անբավարար զարգացած լինելու հետ մեկտեղ
ապահովված չեն բնակչության բարձր պահանջարկ ունեցող ապրանքներով:
Անմխիթար է գյուղական բնակչության կենցաղային սպասարկման վիճա-
կը: Այժմ ռեսպուբլիկայի ամբողջ բնակչության մոտ 48 տոկոսը բնակվում է
գյուղական վայրերում, որտեղ գրեթե չկա կենցաղ սպասարկման որևէ ձեռ-
նարկություն: Մարդիկ ստիպված դիմում են մասնավոր տնայնագործների ծա-
ռայությանը: Գյուղական բնակչության կենցաղային սպասարկման բարելավու-
մը և արագ աճը գյուղի և քաղաքի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր
կենցաղային տարբերությունների վերացման հիմնական գործոններից են:
Կենցաղ սպասարկման ետ մնալու գլխավոր պատճառներից են արհեստա-
նոցների, կոմբինատների և այլ ձեռնարկությունների հիմնական և վերանո-
րոգման աշխատանքների մեքենայացման դանդաղ տեմպերը, ինչպես նաև
տրանսպորտի միջոցներով ապահովված չլինելն ու նյութա-տեխնիկական մա-
տակարարման անբավարար կազմակերպումը:
Լուրջ թերություն է և այն, որ շատ դանդաղ են ընդլայնվում կենցաղ սպա-
սարկման գործող ձեռնարկությունները և կառուցվում նորերը: Դա մասամբ
բացատրվում է նրանով, որ այդ նպատակին հատկացվող կապիտալ ներդրում-
ները հաճախ նախատեսվում էին ոչ կենտրոնացված, այլ ֆինանսավորման
տարբեր աղբյուրներից: Այժմ պլանավորման մեջ մտցված են արմատական
փոփոխություններ: Այդ կապիտալ ներդրումների չափերը պետք է որոշեն միու-
թենական ռեսպուբլիկաների Մինիստրների սովետները՝ ժողտնտեսական տա-
րեկան պլաններում:
Կենցաղային սպասարկման ձեռնարկությունների խնդիրների լուծման
գործում կարևոր դեր են խաղալու բնակչության սպասարկման արագ զարգա-
ցումը, որակի բարելավումը, ինքնարժեքի իջեցումը, ինչպես նաև պրոգրեսիվ
ձևերի ու մեթոդների արմատավորումն ու արագ տարածումը: Բայց ներկա-
յումս գործող օրենքները և խրախուսման ձևերը պատշաճ չափով հաշվի չեն
առնում կենցաղի ծառայության ձեռնարկությունների աշխատանքի սպեցիֆիկ
բնույթը, չեն խթանում բնակչության պատվերները կատարող աշխատողների
նյութական շահագրգռվածությունը: Նյութական շահագրգռվածությունը բարձ-
րացնող ներկա սիստեմի կատարելագործման և այլ միջոցառումների հետ մեկ-
տեղ անհրաժեշտ է գործադրել տնտեսական ու կազմակերպչական մի շարք
այլ միջոցներ: Ամենից առաջ պետք է ընդլայնել տեղական սովետների իրա-
վունքներն ու պատասխանատվությունը կենցաղային սպասարկման ձեռնար-
կությունների զարգացման գործում:
Բնակչության սպասարկման ոլորտի զարգացումն ու կատարելագործումը
կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ ծրագրի բաղկացուցիչ մասն
են և ունեն սոցիալ-քաղաքական և ժողտնտեսական մեծ նշանակություն: Այդ
կարևոր խնդրի լուծումը հնարավորություն կտա ո՛չ միայն տնտեսելու և ար-
դյունավետ օգտագործելու նյութական ու աշխատանքային ռեսուրսները, այլև
նշանակալից չափով կմեծացնի աշխատավորների ազատ ժամանակը: Կենցաղ
սպասարկման ձևերի զարգացման շնորհիվ աշխատանքային ռեսուրսները տնա-
յին սակավ արտադրողական տնտեսությունից կուղղվեն արդյունաբերության
կամ տնտեսության այլ ճյուղեր:

Ռ. ՀՈՎՀԵՍՅԱՆ



# ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Սոցիալական արդարության և հավասարության հարցը մարդկությանը հուզել և պայքարի է կոչել դեռևս այն ժամանակներից, երբ մասնավոր սեփականության և դասակարգերի առաջացման հետ միասին հասարակության մեջ բույն դրեցին սոցիալական անարդարությունն ու անհավասարությունը: Բայց այդ հարցը երբեք էլ այնպիսի խոր հուզումներ ու սուր բախումներ չի առաջացրել, ինչպես մեր ժամանակներում: Ո՞րն է հասարակական առաջընթացի ճշմարիտ և արդարացի ուղին: Այս հարցին պատմությունն արդեն տվել է իր պատասխանը: Նա, ով կույր չէ և աշխարհին չի նայում իր սեփականատիրական շահերի նեղ ճեղքերից, չի կարող չտեսնել, որ եթե կապիտալիզմն ամրապնդում և ուժեղացնում է սոցիալական անհավասարությունը, ապա կոմունիզմը կատարում է բոլոր մարդկանց սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից փրկելու պատմական միսիան, աշխարհում հաստատում է Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն ու Երջանկություն բոլոր ժողովուրդների համար: Կոմունիզմը կյանքում գործնականորեն մարմնավորում է մարդկության լավագույն մտածողների երազանքը սոցիալիստական լիակատար հավասարության և արդարության մասին:

Այդ երազանքն ամենից վառ կերպով արտահայտվեց ուտոպիստ-սոցիալիստների գործերում, որպես օրինաչափորեն խորացող և ընդլայնվող կապիտալիստական ճնշման ու շահագործման դեմ բանվորների և կիսապրոլետարական մասսաների տարերային բողոքի գաղափարական ռեֆլեքս: Ուտոպիստ-սոցիալիստները պահանջում էին վերացնել ոչ միայն դասային արտոնությունները, այլև դասակարգային տարբերությունները: Սոցիալական ազատությունն ու հավասարությունը նրանց իդեալն էր: Նշելով այդ մտածողների ազգային յուրահատկությունները, Էնգելսն ասում էր, որ անգլիացիները ուտոպիական սոցիալիզմին հանգեցին «...պրակտիկ ճանապարհով, սեփական երկրում աղքատության, բարոյալքման և պաուպերիզմի արագ աճի հետևանքով. ֆրանսիացիները՝ քաղաքական ճանապարհով, ելնելով քաղաքական ազատության և հավասարության պահանջից, բայց համոզվելով, որ այդ անբավարար է, նրանք իրենց քաղաքական պահանջներին միացրեցին սոցիալական ազատության և սոցիալական հավասարության պահանջը. գերմանացիներն էլ կոմունիստներ են դարձել փիլիսոփայական ճանապարհով, հիմնական սկզբունքների մասին դատելու ճանապարհով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, с.



digitised by A.R.A.R.@

525—526)։ *Բայց սահմանափակված լինելով իրենց դարի շրջանակներով, նրանք չկարողացան բացահայտել կապիտալիզմի էությունը, նրա զարգացման օրենքները և այն ուժը, որը կոչված էր տապալելու հինը և ստեղծագործաբար կառուցելու հավասարների հասարակությունը։ Ահա թե ինչու ուտոպիստ-սոցիալիստների բոլոր պլանները, թեև գեղեցիկ էին, բայց նման էին միրաժի, որը ցույց չէր տալիս ճնշման ու շահագործման լծից ազատագրվելու ճշմարիտ ուղին։ Այդ պատմական մեծագույն խնդիրը կատարեց միայն գիտական սոցիալիզմը։*

*Հավասարության մարքսիստական-լենինյան ըմբռնման գիտականությունը կայանում է նրանում, որ նա ելնում է հասարակության զարգացման սոցիալ-տնտեսական պայմաններից, բացահայտում է նրա կոնկրետ բովանդակությունը և ցույց է տալիս ռեալ հավասարության հասնելու ուղիները։*

*Սոցիալական հավասարության պրոբլեմն ունի երեք գլխավոր կողմ՝ տնտեսական, քաղաքական և կուլտուրական։ Հավասարության պրոբլեմի տնտեսական կողմն ընդգրկում է նյութական բարիքների արտադրության, բաշխման և սպառման հարաբերությունների բնագավառը, քաղաքականը՝ դասակարգային ազգային, միջպետական հարաբերությունների, իսկ կուլտուրականը՝ հոգևոր բարիքների արտադրության և բաշխման բնագավառը։*

*Գիտականորեն վերլուծելով պատմության օբյեկտիվ ընթացքը, մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրներն առաջինը հայտնագործեցին, որ վերջին հաշվով տնտեսական հարաբերություններն են որոշում հասարակական մյուս բոլոր հարաբերությունները։ Մարքսիզմը լիակատար սոցիալական հավասարությունն առնչում է շահագործողական դասակարգերի, այնուհետև դասակարգային տարբերությունների վերացման հետ։ Իսկ այդ ընդգրկում է երկարատև պատմական մի դարաշրջան, որի սկիզբը ազդարարվում է սոցիալիստական ռևոլյուցիայով։*

*Եվ ահա այսօր, մեր աչքերի առջև են երկու հակադիր աշխարհ, սոցիալական հավասարության երկու հակադիր պատկեր։*

## ՈՏՆԱՀԱՐՎԱԾ ԻԴԵԱԼՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԸ

*Ինչպես հայտնի է, բուրժուական հասարակարգը պատմական թատերաբեմ իջավ ազատություն, հավասարություն և եղբայրություն հրապուրիչ լոզունգներով։ Իր վերելքի ճանապարհին փշրելով ֆեոդալից աշխատավորի անձնական գամվածության շղթաները, կապիտալիզմը, ինչպես որ անհատին դրեց «...շուկայի վերաբերմամբ ինքնուրույն հարաբերությունների մեջ, դարձնելով նրան ապրանքատեր (և որպես այդպիսին նրան հավասար դարձնելով ամեն մի այլ ապրանքատիրոջ) և ստեղծեց անձի զգացմունքի բարձրացում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 1, էջ 527)։*

*Այդ հավասարության զգացմունքն իր վառ արտահայտությունը գտավ բարձրացող բուրժուազիայի գաղափարախոսների գործերում։ Նրանք գտնում էին, որ բոլոր մարդիկ բնությունից հավասար են։ Բայց նրանց քարոզած հավասարությունը մտքի խաբկանք էր, որովհետև այն ենթադրում էր միայն իրավական հավասարություն՝ գոյության բոլոր միջոցներից զուրկ, իր աշխատուժը վաճառքի հանած բանվորի ու սեփականատեր կապիտալիստի միջև։*

*Թերևս այնքան ժամանակ, քանի դեռ բուրժուական հասարակության հո-*



*րիզոնի վրա չէին հայտնվել ամենակուլ մոնոպոլիստական տրեստներն ու կոնցեռնները, շատ-շատերը կարող էին որոշ պատրանք տածել «ազատ շուկայի» նկատմամբ, ուր թվում է ամեն ոք հավասար է։ Սակայն կապիտալիզմի սերընթաց զարգացումը հօդս ցնդեցրեց այդ պատրանքը, ցույց տվեց, որ չկա և չի կարող լինել հավասարություն այնտեղ, որտեղ իշխում է արտադրության միջոցների ու գործիքների մասնավոր սեփականությունը։ Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ մոնոպոլիաների մի շարք բացահայտ գովերգուներ այսօր մերժում են այն սկզբունքները, որ առաջադրել էր բուրժուազիան իր գոյության արշալույսին։ Այս տեսակետից հատկանշական է ֆրանսիացի ականավոր փաստաբան Ժ. Կոլմե Դաժի կողմնորոշումը։ 1959 թվականին Փարիզում հրատարակված «Բուրժուազիայի դասակարգը, նրա ծագումը, գոյության օրենքները և հասարակական դերը», իր գրքում նա գրում է, որ «երրորդ դասի» ամենամեծ սխալը, 1789 թվականի ռևոլյուցիայի նախօրյակին և նրանից հետո, քաղաքական ազատության և իրավական հավասարության լոզունգների առաջադրումն էր, այն դեպքում, երբ բուրժուական ազատությունն ու հավասարությունն անխզելիորեն կապված են փողի ու նրա անվտանգության հետ։ Ֆրանսիացի փաստաբանը աներկմտորեն պահանջում է բուրժուազիայի կողմից հռչակված՝ «Ազատություն, Հավասարություն և Եղբայրություն» լոզունգներն այսօր արդեն փոխարինել «Ազատություն, փող և անվտանգություն» լոզունգներով։ Դեռ ավելին, Ժ. Կոլմե Դաժը քաղաքակրթության միակ հատկանիշը համարում է ունեցվածքների և վիճակների տարբերությունը, որը նրա պատկերացմամբ «.. այնքան ավելի ուժեղ և գեղեցիկ է, որքան ավելի մեծ է խզումը առանձին մարդկանց գույքային վիճակների միջև»։*

*Իսկ ինչպիսին է այդ «ուժեղ» և «գեղեցիկ» քաղաքակրթության իրական պատկերը կապիտալիստական գովաբանված երկրում՝ ԱՄՆ-ում, հենց իրենց՝ ամերիկացիների անկեղծ խոստովանությամբ։*

*Անցած տարվա հունվարին ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրի հրատարակված զեկուցման մեջ նշվում էր, որ ամերիկյան գործազուրկների ընդհանուր թվի մեջ 1 միլիոն 700 հազարն ընտանիքի կերակրողներ են։ Եթե նկատի ունենանք, որ ամերիկյան ընտանիքը միջին հաշվով կազմված է չորս անձից, նշանակում է երկարատև գործազրկությունից տուժում է մոտավորապես յոթ միլիոն մարդ։*

*Ահա թե ինչպես է նկարագրում երկար ժամանակ աշխատանք չունեցող գործազուրկների վիճակը ամերիկյան ժուռնալիստ Ֆրենկ Պորտերը. «Վերջերս, ես ուղևորություն կատարեցի երկրում, որը պրեզիդենտ Ջոնսոնի խոսքերով «ընկած է հույսի սահմաններից այն կողմ» և պետք է ասեմ, որ այն բոլորովին էլ գրավիչ երկիր չէ։ Ես տեսա զառամած ու տխուր, մռայլ ու ջղային, վրդովված ու հույսը կորցրած թշվառների դեմքեր։ Ես առա աղքատության՝ կեղտոտ սպիտակեղենի, քրտինքի, նավթի և մգլած սննդի ոչ այնքան էլ նուրբ հոտը։ Ես լսեցի աղքատության պատմություններ՝ խրոնիկական ձախորդությունների, հիվանդությունների, կարիքի և հուսահատության մասին»։*

*Ինչ խոսք, բուրժուական գաղափարախոսների և քաղաքագետների մոտ նման խոստովանություններն այնքան էլ շատ չեն։ Սովորաբար, նրանք կաշվից դուրս են գալիս տարածելու այն առասպելը, թե իբր ժամանակակից կապիտալիզմը «վերածնվել է», որին խորթ են Մարքսի ժամանակների հասարակության արատները, թե իբր իրագործելով համընդհանուր բարեկեցության.*



digitised by A.R.A.R.@

հավասարության և անհատի ազատության իդեալները «կապիտալիզմը նոր շունչ է առել», ստացել է նոր իմաստ ու բովանդակություն։ Որպես այս բանի գլխավոր փաստարկ, վկայակոչվում է խոշոր մոնոպոլիստական ընկերություն-ների բաժնետոմսերի մի մասի վաճառքը բանվորներին։ Եվ չնայած բաժնե-տոմսերի այդուծի բաժինն առաջվա նման հասնում է մոնոպոլիստներին, վար-ձու գրչակները ջանք չեն խնայում թմբկահարելու «սեփականության ցրման», «բոլորի համար սեփականության» մասին, որն իբր «գերակշռող» է դառնում ժամանակակից կապիտալիստական հասարակության մեջ։ Սակայն, ինչպես ասում են, ստի ոտքերը կարճ են։

Այսօր, առավել քան երբևէ, աշխատավորների համար ակնառու է այն փաստը, որ կապիտալիզմը ոչ թե վերացրել, այլ ավելի է խորացրել սոցիա-լական ու տնտեսական անհավասարության անդունդը։ Այդ բանն ի վիճակի չեն թաքցնելու նաև բուրժուական մի շարք գիտնականներ։ «Կառավարողների դասակարգը» գրքում Ս. Ահարոնովիչը նշում է, որ Անգլիայի բնակչության մեկ տոկոսը տիրապետում է մասնավոր կապիտալի 43 տոկոսը։

Սոցիալական խոր շերտավորման մի ողբերգական պատկեր է ներկայաց-նում նաև կապիտալիստական գյուղը։ Ամերիկյան ժուռնալիստ Մ. Հարինգտոնը «Մի այլ Ամերիկա» գրքում գրում է. «Գյուղատնտեսական հասարակության վերին աստիճանին գտնվում է փոքրամասնությունը՝ կորպորատիվ և խոշոր ֆերմաների տերերը։ Նրանց համար տեխնիկական ռևոլյուցիան նշանակում էր հսկայական եկամուտներ և մթերքների արտադրության ֆանտաստիկ աճ։

Ամերիկյան գյուղատնտեսության ստորին աստիճանի վրա են ավելի քան մեկ միլիոն ֆերմաներ։ Նրանք կազմում են ԱՄՆ-ի առևտրային բոլոր ֆեր-մաների 40 տոկոսը, բայց նրանց բաժին է ընկնում շրջանառության միայն 7 տոկոսը։ Նրանց ողբերգական վիճակը նման է դեռնախորշերի բնակիչների վիճակին, որոնք չունեն բավականաչափ կրթություն։ Այն չափով, որ հզոր ֆեր-մաները դառնում են ավելի արտադրողական ու ժամանակակից, ներդնում են նորանոր սարքավորումներ, չունևորներն այնքան ավելի ետ են մնում»։ Գյու-ղացիական մասսաների տնտեսական ծանր վիճակը անհեռանկար կյանքի հոր-ձանուտն է նետում նորանոր միլիոնների նաև կապիտալիստական մյուս եր-կրներում։ Այսպես, 1949—1955 թվականներին ԳՖՌ-ում օրական անհետա-նում էր 48 գյուղացիական տնտեսություն, իսկ 1960—1961 թվականներին՝ 204 տնտեսություն։ Գյուղացիական տնտեսությունների սնանկացման պրոցեսը մեծ չափեր է ընդունել Իտալիայում։ Վիճակագրական կենտրոնական ինստի-տուտի տվյալներով, միայն մեկ տարում՝ 1963 թվականի հուլիսից մինչև 1964 թվականի հուլիսը գյուղից հեռացել է 400 հազար մարդ։ Տնից ու հողից զրկ-ված, քաղաքային մասնագիտություն չունեցող հողի մշակները դառնում են բախտի քմահաճույքի զոհը։

Կապիտալիստական հասարակությանը ներհատուկ սոցիալ-տնտեսական անհավասարությունը հանգեցնում է բուրժուական կոնստիտուցիաներով հռչակված քաղաքական և իրավական հավասարության ոտնահարմանը։ Ամերիկ-յան պրոֆեսոր Ռոբերտ Մակայվերը ներկայացնում է հասարակության իրա-վական շերտավորման մոտավորապես այսպիսի մի պատկեր. ամերիկյան հա-սարակության վերին աստիճանին կանգնած է հարյուր տոկոսանոց ամերիկա-ցին։ Նրանից ցած՝ Լեհաստանից, Չեխոսլովակիայից, Հունգարիայից, Հու-նաստանից գաղթած 11 միլիոն քաղաքացիներն են։ «Երրորդ տեսակի» կնիքը



դրված է հինգ միլիոն իտալացիների վրա, այնուհետև գալիս են միլիոնավոր հրեաները, ասիացիները, մեքսիկացիները և լատինա-ամերիկյան մյուս երկրը-ների մարդիկ։ Այդ բուրգը եզրափակում են նեգրերը, որոնք իրենց վրա կրում են ոչ լիարժեք քաղաքացու պիտակը։

Իսկ ինչ վերաբերում է ընտրական սիստեմին, ապա այն շարունակ վերա-ձևվում ու հարմարեցվում է մոնոպոլիստների այն խմբի շահերին, որ վերա-հսկում է ամերիկյան կյանքի բոլոր կողմերը։ Բավական է հիշեցնել, որ Ամե-րիկայի Միացյալ Նահանգների կոնգրեսի 529 անդամներից և ոչ մեկը բանվոր կամ գյուղացի չէ։ Այսպիսին է իրականության մեջ կապիտալիստական «Ազատ աշխարհը», որը հենվում է սոցիալական ու ազգային ճնշման, մարդու կողմից մարդու շահագործման վրա։

## ԼԻԱԿԱՏԱՐ ՀԱՎԱՍԱՐՈՒԹՅԱՆ ՃԱՄՓԱԲԱԺԱՆՈՒՄ

Մարքսիզմ-լենինիզմը գտնում է, որ կապիտալիզմից կոմունիզմին ան-ցումը, որքան էլ անխուսափելի, բայց միանգամյա պրոցես չէ։ Այդ երկուսի միջև ընկած է մի շրջան, երբ առաջինը ռևոլյուցիոն եղանակով փոխակերպվում է վերջինին։ Այս նկատառումով էլ Լենինը գրում է. «Ջախջախելով Լասսալի մանրբուրժուական մութ ֆրազը «հավասարության» ու «արդարության» մասին ընդհանրապես, Մարքսը ցույց է տալիս կոմունիստական հասարակության զարգացման ընթացքը, հասարակություն, որն ստիպված է նախ ոչնչացնել միմիայն այն «անարդարությունը», որ արտադրության միջոցները հափշտակել են առանձին մարդիկ, և որն անկարող է միանգամից ոչնչացնել նաև հետագա անարդարությունը, երբ սպառման առարկաները բաշխվում են «ըստ աշխա-տանքի» (և ոչ թե ըստ պահանջմունքների)» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 606—607)։ Այստեղից հետևում է, որ լիակատար հավասարության պրոբլեմի լուծումը կարող է տեղի ունենալ պատմական երեք էտապով։ Առաջին շահա-գործողների տիրապետության տապալում, երկրորդ՝ սոցիալիզմի կառուցում, և վերջապես, երրորդ՝ կոմունիստական հասարակարգի կառուցում։

Սովետական ժողովուրդը թեև մեծ դժվարությունների ու զոհողությունների գնով, կոմունիստների իր պարտիայի գլխավորությամբ, հաջողությամբ լուծել է լիակատար հավասարության անցնելու առաջին և երկրորդ էտապի խնդիր-ները։

Սոցիալիզմն այսօր ռեալ իրականություն է։ Այդ նշանակում է, որ մեր երկրում մեկընդմիշտ վերացված են շահագործող դասակարգերը, վերացված է նաև մարդու կողմից մարդու շահագործման սոցիալական բազան։ Հասարա-կության կենսագործունեության հիմքում դնելով՝ «Ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքը, սոցիալիզմը վերջ տվեց ազգային եկամտի անարդարացի բաշխմանը։ Երկրում մնացին երկու բարեկամ դասակարգեր՝ բանվոր դասա-կարգը և գյուղացիությունը։ Ընդ որում, փոխվեցին հենց իրենք՝ այդ դասա-կարգերը։ Գյուղացիության կամավոր սոցիալիստական կոոպերացման և կու-լակության վերացման շնորհիվ գյուղում հաղթանակեց կոոպերատիվ, սոցիա-լիստական սեփականությունը։ Սոցիալիստական սեփականության երկու ձևերի ընդհանրությունն իրար մոտեցրեց բանվոր դասակարգին ու կոլտնտեսային գյուղացիությանը. արագորեն անհետանում է քաղաքի և գյուղի դարավոր հա-կադրությունը։ Աճեց ժողովրդի ծոցից ելած և սոցիալիզմին նվիրված նոր ին-



digitised by A.R.A.R.@

տելիգենցիա: Միլիոնավոր աշխատավորներ հաղորդակից դարձան կուլտուրայի և գիտության նվաճումներին, այս հողի վրա անհետանում է նաև մտավոր ու ֆիզիկական աշխատանքի հակադրությունը: Հասարակության մեջ մարդկանց դիրքային տարբերություններն այստեղ արդեն որոշվում են ոչ թե սոցիալական, ռասայական ծագմամբ կամ ունեցվածքի չափով, այլ նրանց անձնական ունակություններով ու աշխատասիրությամբ, համընդհանուր գործում նրանց ունեցած մասնակցությամբ:

Սոցիալիզմի մեծագույն նվաճումներն են հանդիսանում խոսքի, մամուլի, միտինգների ու ժողովների ազատությունը, ընտրելու և ընտրվելու իրավունքը, աշխատանքի, հանգստի, ձրի կրթության, բժշկական սպասարկման, ծերության, հիվանդության, կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում նյութական ապահովության իրավունքը. սոցիալիզմը հռչակեց բոլոր ռասաների ու ազգությունների քաղաքացիների իրավահավասարություն. տղամարդկանց հետ կանանց համահավասար իրավունքներ պետական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում: Սոցիալիզմն ապահովում է հասարակության բոլոր անդամների իրավական հավասարություն: Միայն սոցիալիզմի օրոք է հնարավոր սոցիալական և ազգային լիարժեք հավասարություն, ստեղծագործության իրական ազատություն, անձնական և հասարակական շահերի ներդաշնակ զուգակցում:

Բայց արդյո՞ք այստեղից հետևում է, որ սոցիալիզմը լիակատար լուծում է տալիս հավասարության պրոբլեմին: Սոցիալիստական հավասարությունը լիակատար չի կարող համարվել ոչ միայն այն պատճառով, որ հասարակությունը դեռևս նյութական հնարավորություններ չունի իր անդամներին բավարարելու ըստ նրանց պահանջմունքների, այլև այն պատճառով, որ լիովին վերացված չէ մարդկանց հպատակումն աշխատանքի բաժանմանը, որի բազայի վրա դեռևս պահպանվում են գյուղի և քաղաքի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունները: Ուրեմն, սոցիալիստական հավասարությունից կոմունիստական հավասարության անցնելու կարևոր նախադրյալներից մեկն էլ բանվորների և գյուղացիների միջև դասակարգային, և այդ երկու դասակարգերի ու ինտելիգենցիայի միջև սոցիալական տարբերությունների հաղթահարումն է:

Ելնելով հասարակական առաջընթացը պայմանավորող այն իրողությունից, որ բոլոր ժամանակներում էլ սոցիալ-տնտեսական հարաբերությունների բարենորոգման հիմքը եղել ու մնում է արտադրողական ուժերի զարգացումը, մեր պարտիայի ծրագիրը սոցիալիզմից կոմունիզմին անցման սոցիալ-տնտեսական, այդ թվում նաև լիակատար հավասարության պրոբլեմների լուծումն անխզելիորեն առնչում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ: Լիակատար հավասարության պրոբլեմը կարող է լուծվել և աստիճանաբար կլուծվի արտադրության ոլորտում, աշխատանքի բնույթի փոփոխման և նյութական ու հոգևոր բարիքների լիակատար առատության ստեղծմանը զուգընթաց:

Բանն այն է, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում լայն հնարավորություններ են ստեղծվում բարձր արտադրողական մեքենաներին ու ավտոմատներին հանձնելու ոչ միայն ծանր ֆիզիկական աշխատանքը, այլև մարդկանց ազատել մոնոտոն, հոգեմաշ աշխատանքային գործողություններին միակողմանի գամվածության սոցիալական ծանր հետե-



վանքներից: Այդ էլ կհանգեցնի մտավոր ու ֆիզիկական, արդյունաբերական ու գյուղատնտեսական աշխատանքների միջև եղած էական տարբերությունների վերացմանը:

Սովետական իշխանության տարիներին մերձեցում տեղի ունեցավ նաև գյուղի և քաղաքի կուլտուր-կենցաղային պայմանների միջև: Սոցիալիստական շինարարության տարիներին կուլտուր-լուսավորական, կրթական, գիտական, առողջապահական հաստատությունների ցանցի ստեղծմանն ու ընդլայնմանը համեմատ գյուղում կազմավորվեց և արմատակալեց գյուղական ինտելիգենցիան: Գյուղական բնակչության բարեկեցության և կուլտուրայի բարձրացման հետ, գյուղական ապրելակերպի մեջ սկսեցին արագորեն ներթափանցել քաղաքային կենցաղի տարրերը:

Բանվոր դասակարգի և գյուղացիության միջև դասակարգային տարբերությունների վերացման պրոցեսն ընթանում է ոչ միայն գյուղատնտեսական և արդյունաբերական աշխատանքի բնույթի, գյուղի և քաղաքի կուլտուր-կենցաղային պայմանների մերձեցման, այլև Սովետական Միության բնակչության մեջ այդ երկու դասակարգերի քանակական հարաբերակցության փոփոխման ճանապարհով: Այդ բանը երևում է հետևյալ աղյուսակից:

ՍՍՌՄ բնակչության դասակարգային կազմը * (տոկոսներով)

| | 1913 | 1928 | 1939 | 1959 | 1964 |
|---|---|---|---|---|---|
| Ամբողջ բնակչությունը (ներառյալ ընտանիքի չաշխատող անդամները) | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| այդ թվում՝ | | | | | |
| բանվորներ և ծառայողներ | 17,0 | 17,6 | 50,2 | 68,3 | 75,1 |
| Կոլտնտեսային գյուղացիություն և կոոպերացված արհեստավորներ | — | 2,9 | 47,2 | 31,4 | 24,8 |
| Մենատնտես գյուղացիներ և չկոոպերացված արհեստավորներ | 66,7 | 74,9 | 2,6 | 0,3 | 0,1 |
| Բուրժուազիա, կալվածատերեր, առևտրականներ և կուլակներ | 16,3 | 4,6 | — | — | — |

Ինչպես վկայում են վիճակագրական տվյալները, մեր երկրում գյուղացիության քանակական նվազեցմանը զուգահեռ աճում է բանվոր դասակարգի տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր կազմում, որը, մի կողմից պայմանավորված է Սովետական Միությունում արդյունաբերության հուժկու վերելքով, իսկ մյուս կողմից գյուղատնտեսական արտադրության մեքենայացմամբ ու ինտենսիվացմամբ: Այդ մի պրոգրեսիվ և օրինաչափ երևույթ է, որը բոլորովին հակադիր սոցիալական հետևանքների է հանգեցնում սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում:

Կապիտալիզմի պայմաններում գյուղացին քաղաքի ճանապարհն է բռնում մրցակցության ավար թողնելով իր հողակտորը և արտադրության իր սեփական գործիքները: Իսկ մեզ մոտ գյուղացին դառնալով բանվոր, դադարում է կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության տերը լինելուց, բայց դառնում է սոցիալիստական համաժողովրդական ունեցվածքի բաժնետերը: Առաջին դեպքում կատարվում է ունեզրկվածների կենտրոնացում հասարակու-

* Տե՛ս, СССР в цифрах в 1964 году, статистика 1965, стр. 12.:



digitised by A.R.A.R.@

թյան մի բևեռում, երկրորդ դեպքում գյուղացին ինչպես եղել էր, այնպես էլ մնում է նույն հարաբերության մեջ արտադրության միջոցների նկատմամբ։

Կապիտալիստական երկրներում քաղաք շպրտված գյուղացին ամբողջովին կախման մեջ է ընկնում կապիտալիստական շուկայում աշխատուժի արժեքի տարերային տատանումներից, իսկ սոցիալիզմի պայմաններում քաղաքում աշխատանք գտնելը պրոբլեմ չէ, ինչպես գյուղում այնպես էլ քաղաքում աշխատավորն ստանում է ըստ իր աշխատանքի քանակի և որակի։ Առաջին դեպքում մարդը կորցնում է իր հենարանը կյանքում և հավատը վաղվա օրվա նկատմամբ, իսկ երկրորդ դեպքում ոչինչ չի կորցնում։

Կապիտալիզմի պայմաններում գյուղացին հայտնվում է քաղաքում առանց մասնագիտության և լավագույն դեպքում լրացնում է ցածր վարձատրվող, ոչ որակյալ բանվորների շարքերը։ Սոցիալիզմի օրոք մասնագիտություն ձեռք բերելը մտահոգության առարկա չէ։ Այդ մասին հոգ է տանում պետությունը՝ աշխատավորների տրամադրության տակ դնելով պրոֆտեխնիկական ուսումնարանների, ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցների լայն ցանց։

Ինչպես նշվում է մեր պարտիայի ծրագրում, կոմունիզմին անցնելը ենթադրում է նաև կոմունիստորեն գիտակից և բարձր կրթված մարդիկ, որոնք ընդունակ են ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր աշխատանքի՝ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Այս նկատառումներով էլ, մեր երկրում ժողովրդական կրթության սիստեմը կառուցվում է այնպես, որ աճող սերնդի ուսուցումն ու դաստիարակությունը սերտորեն շաղկապված լինի կյանքի, արտադրողական աշխատանքի հետ, որ չափահաս բնակչությունը կարողանա արտադրության ոլորտում կատարած աշխատանքը զուգորդել ուսումն ու կրթությունը շարունակելու հետ՝ անձնական հակումներին ու հասարակության պահանջներին համապատասխան։ Բավական է հիշատակել, որ 1964—1965 ուսումնական տարվա տվյալներով ուսուցման բոլոր ձևերում (բացառությամբ քաղաքական լուսավորությունը) ընդգրկված էր 68 միլիոն 386 հազար մարդ։ Այս ամենը նպաստում են սոցիալական ամենակարևոր պրոբլեմներից մեկի լուծմանը՝ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացմանը։

Սովետական հասարակության մեջ ինտելիգենցիայի հիմնական մասսան աճել է սոցիալիզմի կառուցման տարիներին։ Այն դուրս է եկել ժողովրդի ծոցից և հավատարմորեն ծառայում է ժողովրդին։ Ինտելիգենցիան սոցիալիստական հասարակության ամենից ավելի արագ աճող խավն է։ Այսպես, եթե 1926 թվականին, երբ սովետական ժողովուրդը դեռ նոր էր ավարտել ժողովրդական տնտեսության վերականգնումը, մեր երկրում հաշվվում էր 2,5 միլիոնից ավելի մտավոր աշխատանքի մարդիկ, 1959 թվականին նրանց թիվը կազմում էր 20,5 միլիոն, իսկ 1965 թվականի սկզբներին 25 միլիոն մարդ։ Ինտելիգենցիայի տեսակարար կշիռը աշխատող բնակչության կազմում այսուհետև ևս կաճի, որովհետև այն բխում է տեխնիկայի և կուլտուրայի զարգացման արդի պահանջներից։ Միաժամանակ տեղի կունենա ինտելիգենցիայի և բանվորների ու գյուղացիների մերձեցում, վերջիններիս աշխատանքի բնույթի փոփոխման և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման միջոցով։

Ավելորդ է ապացուցել, որ արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը նոր պահանջներ են ներկայացնում արտադրության աշխատողների նկատմամբ։ Այսօր արդեն տեխնիկական բազմակողմանի գիտե-



լիքներ ու հմտություններ չունեցող բանվորը չի կարող ի հայտ բերել ու կարգի գցել ժամանակակից մեքենաները, որոնց աշխատանքի հիմքում դրված են էլեկտրոնիկայի, մեխանիկայի ու պնևմատիկայի վերջին նվաճումները։ Եվ պատահական չէ, որ արտադրության շատ ճյուղերում դժվար է որոշել՝ որտեղից է սկսվում ինժեների և գիտնականի և որտեղ է վերջանում բանվորի աշխատանքը։ Այդ բանի ցայտուն վկայությունն է արտադրության աշխատողների շրջանում գյուտարարության և նորարարության աննախադեպ ծավալումը։

Սոցիալիստական հասարակության մեջ սոցիալական տարբեր խավերի մերձեցումն իր վառ արտահայտությունն է գտնում նաև բանվորի ու գյուղացու, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի որակական տարբերությունների աստիճանական վերացման և աշխատանքի արտադրողականության ընդհանուր աճի հիման վրա, բաշխման բնագավառում դեռևս գոյություն ունեցող անհավասարության հաղթահարման մեջ։

Մեզ մոտ բաշխման ոլորտում գոյություն ունեցող անհավասարությունը պայմանավորված է ոչ թե դասակարգային շարժառիթներով, այլ աշխատանքային տարբեր պայմաններով ու եղանակներով, իսկ երբեմն էլ գործի նկատմամբ ոչ միանման վերաբերմունքով։ Բացի այդ, պետք է նկատի ունենալ, որ մարդիկ միմյանցից տարբերվում են նաև իրենց ունակություններով, ֆիզիկական տվյալներով ու ընտանեկան դրությամբ։ Հասկանալի է, որ «ըստ աշխատանքի» բաշխման սոցիալիստական սկզբունքը ենթադրում է որոշակի տարբերություններ մարդկանց տնտեսական վիճակների միջև։

Նյութական բարիքների առատության ստեղծումը և աշխատանքի բնույթի փոփոխումը լիակատար հավասարության անցնելու հիմնական նախադրյալներն են։ Բայց նոր հասարակությունը չի կարելի պատկերացնել նաև առանց նոր մարդու։ Որպեսզի հասարակությունը հնարավորություն ունենա իր անդամներին բավարարել ըստ իրենց պահանջմունքների, աշխատանքը պետք է դառնա հասարակության յուրաքանչյուր անդամի ներքին պահանջմունքը։ Սոցիալիզմի պայմաններում արդեն ծնունդ է առնում ու ծավալվում ընդհանուրի համար աշխատելու անհրաժեշտության գիտակցությունը, որն իր մարմնավորումն է գտնում սոցիալիստական մրցության բազմաթիվ ձևերում, կոմունիստական աշխատանքի բրիգադների ու հարվածայինների շարժման մեջ։ Բայց այդ ճանապարհին դեռևս սուբյեկտիվ կարգի քիչ խոչընդոտներ չկան։ Այդ խոչընդոտներից են դեռևս որոշ մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկները, որ իրենց զգացնել են տալիս պորտաբուծության, աշխատանքի նկատմամբ աղայական վերաբերմունքի, գործամոլության ու բյուրոկրատիզմի և հակահասարակական մի շարք այլ երևույթների մեջ։

Ինչպես լիակատար հավասարության նյութական և հոգևոր նախադրյալները միանգամից չեն ստեղծվում, այնպես էլ միանգամից չի կարող անցում կատարվել սոցիալիստական բաշխումից կոմունիստական բաշխման։ Այդ խնդիրը կլուծվի՝ առաջին, անհատական, ըստ աշխատանքի քանակի և որակի վարձատրության բարձրացման, և, երկրորդ՝ սպառման հանրային ֆոնդերի ընդլայնմամբ, որը նախատեսում է հասարակության անդամների պահանջմունքները բավարարել անկախ նրանց աշխատանքի քանակից ու որակից, այսինքն՝ ձրի։ Այսօր արդեն սովետական պետությունը հասարակական ֆոնդերի հաշվին վճարում է՝ բնակարանային ծախսերի երկու երրորդը, կրթության՝ այդ թվում նաև բարձրագույն կրթության, բնակչության բժշկական սպասարկ-



digitised by A.R.A.R.@

ման, ծերունիների և անաշխատունակների նյութական ապահովության հետ կապված բոլոր ծախսերը, մանկամսուրներում և մանկապարտեզներում երեխաներին պահելու արժեքի մեծ մասը և այլն։ Ըստ որում այդ ֆոնդերը տարեցտարի աճում են։ Այսպես, եթե 1940 թվականին բնակչությունը տարբեր վճարումների ու արտոնությունների ձևով ստացել է ընդամենը 4,6 միլիարդ ռուբլի, ապա 1958 թվականին՝ 23,8, 1963-ին՝ 34,3, իսկ 1964 թվականին՝ 36,6 միլիարդ ռուբլի։

Կոմունիզմին մոտենալու համեմատ անձնական պահանջմունքներն ավելի ու ավելի մեծ չափով կբավարարվեն սպառման հանրային ֆոնդերի հաշվին։ Ինչպես կանխատեսում է մեր պարտիայի ծրագիրը, կոմունիստական բաշխմանն անցնելը կավարտվի այն բանից հետո, երբ ըստ աշխատանքի բաշխման սկզբունքն իրեն ամբողջովին սպառի, այսինքն՝ երբ կստեղծվեն նյութական ու կուլտուրական բարիքների առատություն, և աշխատանքը հասարակության բոլոր անդամների համար կդառնա առաջին կենսական պահանջմունք։ Այստեղից հետևում է, որ անցումը լիակատար հավասարության չի կարող տեղի ունենալ ոչ սոցիալիզմի «սկզբունքների» կամայական անտեսման, և ոչ էլ մանրբուրժուական հավասարարության միջոցով։

Կառուցելով կոմունիզմ, մենք գնում ենք դեպի լիակատար հավասարության հասարակությունը։ Կոմունիստական հավասարությունը ենթադրում է ոչ թե մարդկանց միջև անհատական տարբերությունների, այլ հասարակության սոցիալական անհավասարություն ծնող պատճառների ու պայմանների վերացումը՝ անհատի բազմակողմանի զարգացման, նրա հոգեկան և ֆիզիկական ունակությունների ծաղկման համար։

— Կոմունիզմը,—հռչակում է մեր պարտիայի ծրագիրը,— անդասակարգ հասարակարգ է արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականությամբ, հասարակության բոլոր անդամների սոցիալական լիակատար հավասարությամբ, որտեղ մարդկանց համակողմանի զարգացման հետ մեկտեղ շարունակ զարգացող գիտության ու տեխնիկայի հիման վրա կաճեն նաև արտադրողական ուժերը, հասարակական հարստության բոլոր աղբյուրները լիառատ կհորդեն և կիրագործվի «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ



# ԵՐԿՐՈՐԴ ՔԱՅԼԸ

## ԱՄՆ-Ը ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐ ԵՆ ԱՎԵԼԱՑՆՈՒՄ ՀՆԴԿԱՉԻՆՈՒՄ։ ՆՊԱՏԱԿԸ՝ ՌԵՎԱՆՇՆ Է ԱԳՐԵՍԻԱՅՈՒՄ ԿՐԱԾ ԱՌԱՋԻՆ ՊԱՐՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Եվ այսպես, Վաշինգտոնը վիճակ է գցել։ Այն, ինչ ենթադրություններ էին, այժմ վճռի ձև են ընդունել։ Միացյալ Նահանգները զգալիորեն ընդլայնում են պատերազմը վիետնամական ժողովրդի դեմ։ Մարիոնետային բանակի, ինչպես նաև ամերիկյան ավիացիայի ու նավատորմի ուժերով մղվող պատերազմի պատժիչ փուլը ցանկալի արդյունքներ չտվեց։ Նոր փուլ է սկսվում. այսուհետև պատերազմական գործողություններում գլխավոր դերը խաղալու են ամերիկյան զորքերը։ Եվ, բնական է, եթե մինչև այժմ ամերիկացիները Վիետնամում սպանվում էին հարյուրներով, ապա այսուհետև հաշիվը հազարներով կլինի։ Տանուլ տալով առաջին քայլը, նրանք կատարում են երկրորդ, ավելի խոշոր քայլը։ Իսկ դա ավելի հեռուն կտանի։

Պրեզիդենտ Ջոնսոնը և նրա խորհրդականները ամերիկյան ժողովրդին մխիթարում են այն պատրանքներով, թե իբր, ոչ մի սարսափելի բան չի լինի, թե «ազգի պատիվը» փրկելու համար հսկայական ջանքեր չեն պահանջվի, միայն հարկավոր է սպասել արևադարձային հորդ անձրևների սեզոնի ավարտմանը, իսկ այնուհետև ամերիկյան դիվիզիաները իրենց գործը կտեսնեն։ Հանգստացնում, բայց տեղն ու տեղը բարբաջում են «պատերազմ մինչև վերջը» բառերով։ Նախ՝ կամաց-կամաց, իսկ այժմ՝ ավելի բացահայտորեն, ժողովրդին ընտելացնում են «անխուսափելի» զոհեր տալու մտքին։ Դեպի վատթարը բարոյական նախապատրաստությունն սկսվեց




Հարավ-Չինական ծովի Հարավ Վիետնամական ծովափին ափ են իջեցվում ծովային հետևակի դիվիզիաներով ու ավիոդեսանտային բրիգադներով ուժեղացված ամերիկյան զորքեր։ Նրանց ընդհանուր թիվն արդեն հասնում է մոտ 80 հազարի։ Քարտեզի վրա նշանակված վեց շրջանակներում արագ թափով կառուցվում են ավիացիոն և ծովային բազաներ։





digitised by A.R.A.R.@

Լոջի՝ ռեսպուբլիկական պարտիայի մարտաշունչ օպոզիցիոն ֆրակցիայի ներկայացուցչի, Սայգոնում հյուպատոս նշանակումով: Այնուհետև, հուլիսի երկրորդ կեսին, Հարավային Վիետնամ գործուղեցին պաշտպանության մինիստր Մակնամարային՝ խորհրդականների մի ամբողջ շքախմբով:

Քանի դեռ նա «տեղում դրությունը պարզում էր» (թեև դրությունն առանց այն էլ պարզ էր), իսկ ավելի ճիշտ, հինգ օր շարունակ թղթակիցների միջոցով իր երկրի ժողովրդին համոզում էր մարդկային և նյութական ռեսուրսների մոբիլիզացման անհրաժեշտությունն այն բանի համար, ինչը որ այսօր կոչվում է ամերիկյան պատերազմ, Վաշինգտոնը պրոպագանդիստական բնույթի լրացուցիչ միջոցներ ձեռնարկեց: Ջանում էին ամերիկյան հասարակայնությանը խաբել ռազմական հատկացումների կարծեցյալ կրճատման, տարբերությունը սոցիալական կարիքներին տրամադրելու վերաբերյալ աղմուկով: Բայց այդ բոլոր խոստումները հօդս ցնդեցին օճառի պղպջակի պես: Վերջին պահին բեմ ելած բյուջետային վարչության ղեկավար Չարլզ Շուլցին տրամալիորեն ձեռքերը թափահարեց՝ «Վիետնամում կատարվող իրադարձությունները տապալեցին այդ ենթադրությունները: Ռազմական ծախսերը ակնհայտորեն ավելի մեծ կլինեն, քան պրեզիդենտը ենթադրում էր հունվարին»: Պետական քարտուղար Դին Ռասկը, իր հերթին, հայտարարելով, թե «ստեղծվել է վտանգավոր և դժվար իրադրություն», կոչ արեց «անբասիր կերպով պարտականությունները կատարել» Սայգոնի կլիկի հանդեպ, որը ոչ ոքի չի ներկայացնում և ոչ ոքի կողմից լիազորված չէ:

Այդ խոսքերն արտասանվել էին Մակնամարայի վերադառնալուց կարճ ժամանակ անց: Կարելի է կարծել, թե նա իր հետ ինչ-որ մի նոր բան է բերել, որը չգիտեին: Ոչ, պարզապես հերթական մի ֆարս խաղացվեց: Դա հաստատում է «Վաշինգտոն պոստ» թերթը. «Համեմատ այն բանի, թե ինչպես էր ամերիկյան զորքերի քանակության սպասվող ավելացումը գնալով ակնհայտ դառնում, կառավարության մեկնաբանությունները համարյա թե սցենարի բնույթ են ընդունում: Վաշինգտոնից մեկնելուց առաջ Մակնամարան փաստորեն խոսում էր հենց նույն բանի մասին, ինչը որ նա ավելի ուշ կրկնում էր Հարավային Վիետնամում»: Այստեղից կարելի է եզրակացնել, որ նույն բանը կրկնվել է պրեզիդենտի մոտ տեղի ունեցած այն փակ խորհրդակցություններում, որոնք սկսվեցին վեց ժամ անց այն պահից, երբ ինքնաթիռը հուլիսի 21-ի առավոտյան պաշտպանության մինիստրին հասցրեց մայրաքաղաք: Դա երկրորդ գործողությունն էր, բայց արդեն ողբերգության ոճով:

«Պրեզիդենտ Ջոնսոնը իշխանության գլուխ անցնելու պահից սկսած այժմ ամենալուրջ որոշումն է ընդունում միջազգային ասպարեզում: Այդ լրջության մասին է վկայում այն հանգամանքը, թե ինչ կազմի ու մեծության գործիչներ են հանդիպում նրա հետ: Այդ խմբի մեջ մտնում են Ռ. Մակնամարան, Դ. Ռասկը, ազգային անվտանգության հարցերով պրեզիդենտի խորհրդական Մ. Բանդին, Կենտրոնական հետախուզական վարչության դիրեկտոր, ծովակալ Ու. Ռայբորնը»— առաջին խորհրդակցություններն այդպես գնահատեցին թերթերի ռեպորտյորները, ելնելով մամուլի հարցերով սպիտակ տան քարտուղարի խոսքերից և ավելացրին՝ «Քննարկման հետևանքով, հավանաբար, լույս աշխարհ կգա մի քաղաքականություն, որը նոր աստիճանի կբարձրացնի ԱՄՆ-ի ռազմական ջանքերը... Նոր կոնտինգենտների թիվը, դրանց փոխհարաբերությունները հարավվիետնամական հրամանատարության հետ, և ինչ չափով, հնարավոր է, հարկ կլինի մոբիլիզացնել պահեստի և ազգային գվարդիայի զորամասերը՝ մարտական ստորաբաժանումները համալրելու համար: Ահա այն հարցերը, որոնց պատասխանը կստացվի, ըստ երևույթին, մոտ օրերին... Պրեզիդենտը առաջիկա օրերին մշտապես հանդիպելու է հիշյալ անձանց հետ և, հավանաբար, իր մեկնումը Տեխաս կհետաձգի շաբաթվա վերջը:

Լրջմիտ գլուխները զգաստացան: «Իսկ Ջոնսոնն ի՞նչ է հանձնարարելու ամերիկյան այդ հսկա բանակին», «Նյու-Յորք հերալդ տրիբուն»-ի էջերից հարց տվեց հայտնի մեկնաբան Ու. Լիպմանը, նախազգուշացնելով, որ վիետնամական հողում մղվող պատերազմը ամերիկացիներին մոտեցնում է ճակատագրական սահմանին: Դատապարտելով ագրեսիայի ծավալման պլանները, պատկառելի «Նյու-Յորք թայմս»-ը հանդես եկավ խմբագրական հոդվածով. «Կոնֆլիկտը հղի է կոմունիստական Չինաստանի հետ պատերազմի վտանգով, համաշխարհային պատերազմի վտանգով... Ավելի լավ է քաղաքականության մեջ խուսափել ծայրահեղություններից: Լրջմտության կողմնակիցներին փորձեցին սաստել «դաժան կուրսի» քարոզողները, որոնք փորձում են չարաշահել հանգուցյալ պրեզիդենտ Քենեդիի անունը, որն իր ժամանակին փառաբանում էր վտարանդիների զինված տականքի հարձակումը Կուբայի վրա Կոչինոսի ծոցում:

Առաջին խորհրդակցությանը հաջորդեց երկրորդը, երրորդը, չորրորդը: Մասնակիցների շրջանակը ընդարձակվեց երեք մինիստրների (ռազմական, ծովային և ավիացիայի), շտաբների պետերի և մի շարք գերատեսչությունների ղեկավարների ներգրավման շնորհիվ: Նիստերն ընթանում էին փոքր ընդմիջումներով մինչև ուշ երեկո: Ջոնսոնը հաճախ վերցնում էր հեռախոսափողը, զանգահարում էր իրեն հարկավոր մարդկանց: Ինչ որ մի բանի մասին խոսեց Էյզենհաուերի հետ: Հերթական պրես-կոնֆերանսների վերաբերյալ պրեզիդենտի հաշվետվություններում երևում էին հետևյալ տողերը՝ «Խաղաթղթի վրա ավելին է դրված, քան Հարավային Վիետնամում ամերիկյան զորքերի առաջադրանքների սպասվող ընդարձակումն է կամ պահեստայինների նախատեսվող զորակոչումն ու իսկական ծառայության ժամկետի մեծացումը: Կառավարությունը քննարկում է ապագա ռազմաօդային գործողությունները Հյուսիսային Վիետնամի դեմ... Ընդհանուր դրությունը շատերը ավելի մռայլ տոնով են նկարագրում, քան ինքը Մակնամարան»: Եվ հենց այդ պահին, մինչև դրության հիմնավոր և խոր ձգձգված տեսության» արդյունքները հայտարարելը, մամուլում տպագրվեցին հաղորդագրություններ Սայգոնից այն մասին, որ հարավվիետնամական ափերին ամերիկյան զորքերի ավելացմանը զուգահեռաբար Միացյալ Նահանգները զբաղվում են իրենց բազաների ընդարձակմամբ, նախ և առաջ Դա-Նանգում, որը, Նյու-Յորքի «Դեյլի-Նյուսի» թղթակցի վկայությամբ, նույնպես ծառայելու է որպես ելման կետ Լաոսի վրա ամերիկյան օդային հարվածների համար:

Վաշինգտոնի խաղաղասիրական հայտարարությունների և գործերի միջև եղած աղաղակող անհամապատասխանությունը քննադատության նոր ալիք առաջացրեց աշխարհում, ստիպեց խոսել նույնիսկ նրանց, ովքեր սովորաբար գերադասում են լռություն պահպանել: Հոլանդիայի բուրժուական պառլամենտականները իրենց կառավարությունից պահանջեցին ամերիկյան մայրաքաղաքին շշպռել այն բանի համար, որ նա կապվել է Հիտլերի սայգոնյան երկրպագուի հետ և վտանգի տակ է դնում մարդկության անվտանգությունը: Իտալիայի արտաքին գործերի մինիստր Ֆանֆանին ի պատասխան դեպուտատների հարցումների հայտարարեց, որ, իհարկե, հարկավոր է պրոբլեմների այլ լուծում փնտրել, քանի որ ամերիկացիները ուժով ոչ մի բանի չեն հասնի: Անհանգստացան մյուս երկրների պառլամենտներն ու կառավարությունները: Ճիշտ է, ամենևին էլ ոչ բոլորը: Լոնդոնը, որ դեռ երեկ թմբկահարում էր իր մտահոգության մասին, այսօր լռել է, գայթակղված այն բանից, որ Պենտագոնը խոստացել է գնել մեծ քանակությամբ անգլիական զենք:

Մի քանի օր անընդհատ Սպիտակ տունը ճզմվում էր պսիխոզից, նրանում տեղի ունեցող ամեն ինչ պարուրելով գաղտնիությամբ: Բայց գաղտնիքը շուտ թե ուշ հայտնի է դառնում: «Պատերազմն ընդարձակելու, լրացուցիչ դիվիզիաների ու ավիամիավորումների, ռազմամթերքների ու տրանսպորտի համար ընթացիկ տարում կպահանջվի 1—2 միլիարդ դոլար: Հունվարի վերջին Հարավային Վիետնամում կհաշվվի 250, իսկ գուցե և 400 հազար զինվոր ու սպա... Լինդոն Ջոնսոնը, որն իր ժամանակին վարում էր ռազմական պատրաստականության հարցերի սենատային ենթահանձնաժողովի աշխատանքը, որպես ինչ-որ խիստ սերժանտ, ուզում է այս անգամ ևս խուսափել չափից դուրս տարփողումից... Երկրին կվիճակվի հաշտվել այն բանի հետ, որ ամերիկյան ուժերն ավելի մեծ չափով կօգտագործվեն ցամաքային պատերազմում»: Հաղորդելով այդ, Նյու-Յորքի և հենց մայրաքաղաքի թերթերը կառավարության մտադրությունները նմանեցնում են հենց իրեն՝ կառավարության ստեղծած այն հրեշին, որը կարող է դուրս գալ հնազանդությունից և անհամար աղետներ թափել երկրի վրա:

Ամերիկյան ժողովրդի համար որպես իսկական ողբերգություն է դառնում այն, որին մամուլը կնքել է ողբերգական վճիռների տասնօրյակ անունով: Դրանք դեռ լիովին չեն ժողովրդականացվել: Բայց առանց այդ էլ պարզ է, որ է՛լ ավելի մեծ թեքում է կատարված դեպի երկրի պատմության մեջ չտեսնված ռազմական ծախսերի մեծացումը, էկոնոմիկայի ռազմականացումը, ռազմական պոտենցիալի ավելացումը: Միացյալ Նահանգները, պատկերավոր ասած, զենք ու զրահ են վերցնում:

Վաշինգտոնն իր գործողություններով նորից է սրում միջազգային իրադրությունը:

Կ. ՌՈՄԱՆՈՎՍԿԻ

«ЗА РУБЕЖОМ» № 31, 1965 г.





digitised by A.R.A.R.@

# ՄԵԾ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

## ԻՐՈՔ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆԸ

*(Լ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*



ԼԵՎՈՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ: Կես դարից ավելի այս անունը փայլատակում է հայ բժշկության երկնակամարում՝ իր մեջ ամփոփելով անսահման հայրենասիրություն, անխոնջ աշխատասիրություն, ժողովրդայնություն, գիտնականի խորաթափանց միտք: Երկար տարիներ այս անունը միաձուլվել է «հայ բժշկություն» բառերի հետ, անքակտելիորեն կապվել դրանց և այժմ, հիրավի, դժվար է պատկերացնել հայ բժշկության վերջին ավելի քան կեսդարյա պատմությունն առանց Լևոն Հովհաննիսյանի անվան, ժողովրդական առողջապահության բնագավառում նրա կատարած պրակտիկ գործի, գիտական հսկայական ժառանգության:

Դժվար է զուգահեռներ տանել, մի կողմից՝ արվեստի, գրականության, մյուս կողմից՝ բժշկության միջև: Լևոն Հովհաննիսյանը հայ բժշկության մեջ այն մեծությունն ու արժեքն ունի, ինչ Ավետիք Իսահակյանը՝ հայ պոեզիայում: Մարտիրոս Սարյանը՝ հայ գեղանկարչության, Արամ Խաչատրյանը՝ երաժշտության մեջ և էլի շատերը՝ իրենց բնագավառներում:

Ավելի քան կես դար Լևոն Հովհաննիսյանը եղել է Հայաստանի առողջապահության և բժշկական գիտական մտքի ամենաբուռն ոլորտներում: Եվ այսօր դժվար է հիշատակել Հայաստանում բժշկական որևէ բնագավառ, որն այս կամ այն չափով չառնչվի Լևոն Հովհաննիսյանի անվան հետ:



ԴԱՐԵՐԻՑ է սկիզբ առնում բժշկության պատմությունը Հայաստանում: Եթե, Պիրոգովի արտահայտությամբ, «բժշկությունը մարդկության հասակակիցն է», ապա հայ բժշկության ակունքները պետք է փնտրել մարդկային կյանքի ամենախոր հորձանուտներում: Իր ժամանակից վեր կանգնած, հիվանդությունների առաջացումն ու ընթացքը բնորոշող, ախտորոշման և բուժման մասին պարզամանահրաշ գիտելիքներ կան հայ մտավոր կյանքի ամենավաղ շրջաններում: Իսկ այնուհետև, որպես բժշկական մտքի վեհ ռահվիրաններ, վեր խոյացան այնպիսի գիգանտներ, ինչպիսիք էին՝ Մխիթար Հերացին, Ամիրդովլաթը, Գրիգորիսը և ուրիշներ: «Ես հայոց լեզուն սովորեցի թեկուզ միայն այն բանի համար, որ բնագրում կարդամ Մխիթար Հերացուն,— գրում է գերմանացիականավոր բժիշկ-գիտնական Զեյդելը: Վերջինս թարգմանում է Հերացու «Ջերմանց մխիթարություն» հռչակավոր տրակտատը, մեկնաբանում այն, հրատարակում և արժանանում բժիշկ-պատմաբանների համաշխարհային մրցանակի:

Հարուստ էր հին և միջին դարերի հայ բժշկական միտքը: Սակայն անծայր մթության մեջ փայլատակող այդ պայծառ աստղերն անզոր էին ցրելու խավարը: Օտարազգի նվաճողների սրի ու թրի տակ հեծող ժողովրդին մյուս կողմից էլ խոլերան, ժանտախտը, բնական ծաղիկը և այլ համաճարակներն էին ջարդում: Ամեն կերպ փըրկել հարազատ ժողովրդին, թեթևացնել նրա վիճակը, օգնել նրան՝ ետ մղելու վարակը. այս ամենամարդասեր ձգտումներն էին համակել ժողովրդի ցավերով ապրող հայ առաջավոր բժիշկների հայրենանվեր սրտերը: Ժողովրդի առողջության պահպանման առաջավոր տրադիցիաներն առանձնապես ցայտուն դրսևորվեցին XIX դարի վերջին և XX դարի սկզբին, երբ ռուսական հասարակական բժշկության բովում թրծված, համալսարանավարտ հայ բժիշկներից շատերը վերադառնում էին մայր հայրենիք, ծառայում ժողովրդին: Այդպիսիներից մեկն էր և Լևոն Անդրեասի Հովհաննիսյանը: 1909 թվականին նա արդեն ավարտել էր Խարկովի համալսարանի բժշկական ֆակուլտետը և ստացել բժշկի դիպլոմ: Զուր էին նրա «ինտելիգենտ» դասընկերների խորհուրդները՝ մնալ «եվրոպական կենտրոններում», «գիտական շրջաններում»: Հովհաննիսյանին սպասում էր խավարի մեջ տառապող իր հայրենիքը, որտեղ անցել էր նրա մանկությունը, որտեղ թողել էր նա դժբախտ շինականին, ուր բժշկի նկատմամբ տածվող ակնածանքը պաշտամունքի էր հասնում:

Եվ նա վերադարձավ Կովկաս:

Նա ոգևորվեց իր նախորդների՝ իրենց անձը, կյանքը հարազատ ժողովրդին նվիրաբերած հայ բժիշկների հայրենանվեր գործերով: Բժիշկ Գևորգ Հախվերդյանը թողեց Պետերբուրգը. ռազմական մինիստրի անձնական բժիշկն էր նա: Մինիստրի հարցին՝ «Ի՞նչ կխնդրեիք ձեր բարձր վարպետության դիմաց», Հախվերդյանը պատասխանեց՝ «Թույլ տվեք գնալ ու ծառայել մեր հասարակ խալխին»: Հախվերդյանը եկավ Թիֆլիս, ուր խալխին բուժելուց բացի, Սայաթ-Նովայի գործերի առաջին հավաքողը, մեկնաբանողը, հրատարակողը դարձավ, մոռացումից փրկելով ու դարերին հանձնելով հանճարեղ մարդու մտքի ու սրտի անմեռ ստեղծագործությունը: Բժիշկ Մարգար Առուստամյանը Զանգեզուրում և Շուշիում ժողովրդի դատը պաշտպանելու համար աքսորվեց Աստրախան, բայց այստեղ էլ ձկնարդյունաբերության բանվորների պաշտպանը դառնալով՝ իր դեմ հանեց միլիոնատերերի ոհմակը և ընկավ անհավասար գոտեմարտում:

Այդ նրա մասին էր ռուս ականավոր գրող Վ. Կորոլենկոն գրել իր հռչակավոր «Ինը ֆունտանոց ռեյդի կարանտին» պատմվածքը: «Բժիշկ Առուստամյանի և այդ ամբողջ խմբի կատարած գործն ամեն մի գովասանքից վեր է»,— կարդում ենք այդ պատմվածքում: Եվ հետո՝ «...բժիշկ Առուստամյանի և նրա ընկերների անունները որպես իսկական խիզախության օրինակներ կանցնեն հասարակության պատմության մեջ»,— շարունակում է Կորոլենկոն:

Իսկական խիզախության օրինակ է տալիս նաև հարազատ ժողովրդին նվիրված Լևոն Հովհաննիսյանը, որը վերադառնալով Կովկաս, աշխատանքի է անցնում խոլերայի դեմ պայքարող ջոկատներում: Դժվարին, ինքնամոռաց, խիզախություն պահանջող աշխատանք էր դա: Հակահամաճարակային ամենատարրական միջոցների բացակայության պայմաններում անհրաժեշտ էր ուժերի մեծ լարում, հնարամտություն: Ախտահանման, կարանտինների կազմակերպման հարցերը կապված էին մեծ դժվարությունների հետ: Այստեղ երիտասարդ Հովհաննիսյանը կարողացավ իրեն դրսևորել որպես նախաձեռնող, ժողովրդի ցավերով ապրող, էնտուզիաստ բժիշկ, որի վրա հենվում, որին վստահում էին հակահամաճարակային գործը կազմակերպող կարմիր խաչի, կովկասյան բժշկական ընկերության և մյուս ժողովրդական կազմակերպությունները:

Դրանք այն տարիներն էին, երբ ավելի բուռն էր դրսևորվում ռուսական հասարակական բժշկության առաջավոր տրադիցիաներով դաստիարակված հայ բժիշկների ժողովրդասեր գործունեությունը: Եվ պատահական չէր, որ Լևոն Հովհաննիսյանը ոչ միայն թողեց եվրոպական գիտական կենտրոնները, այլև չմնաց նույնիսկ Թիֆլիսում, աշխատանքի մեկնեց լեռնագործների մոտ՝ Ալավերդի: Այստեղ նա աշխատում էր որպես գործարանային բժիշկ՝ սպասարկելով լեռնահանքերում և պղնձաձուլական գործարանում աշխա-



digitised by A.R.A.R.@

տող բազմազգ աշխատավորությանը: Այդ տարիներին Լևոն Հովհաննիսյանը Կովկասի բժշկական շրջաններում արդեն ճանաչված էր իր ինքնատիպ գիտական աշխատություններով, որոնք մեկը մյուսի հետևից տպագրվում էին կովկասյան բժշկական ընկերության գիտական ժողովածուներում, դրանց մասին զեկուցվում այդ ընկերության, ինչպես նաև բժիշկների համառուսաստանյան համագումարների նիստերում:

●

ՈՐՔԱՆ մեծ էին Լևոն Հովհաննիսյանի՝ ժողովրդին ծառայելու ձգտումները, որքան հոյակապ էին նրա ցանկություններն ու պլանները, այնքան մեծ էին դրանց իրականացման արգելքները: Լևոն Հովհաննիսյանին և նրա կոլեգաներին այդ տարիներին հատկապես հուզում էին երկրում անարգել մոլեգնող մալյարիան, որը քամում էր ժողովրդի կենսական ուժերը, անհաշիվ կոհերի պատճառ դառնում: Դեռևս 1913 թվականին Լևոն Հովհաննիսյանը կովկասյան հակամալյարային կոմիտեի քարտուղարն էր և ջանք չէր խնայում այդ կոմիտեի արդյունավետ գործունեության համար: Մեծ դժվարությամբ նրան հաջողվեց հրատարակել «Մալյարիա» անունով հատուկ հանդես՝ այդ մեծ չարիքի դեմ պայքարելու նպատակով: Ժամանակի դժվարին պայմաններում, երբ հետապնդվում էր ամեն մի պայծառ մտահղացում, խիստ պակասում էին նյութական հնարավորությունները, առաջավոր գործի իրականացման ամեն մի այսպիսի քայլը համառ ու անձնազոհ պայքարի արդյունք էր:

Լևոն Հովհաննիսյանը հայ առաջավոր ինտելիգենցիայի հրաշալի համաստեղությունից էր, որն առաջին բերքատու հունդերը նետեց սովետական կարգերի շնորհիվ ստեղծված ստեղծագործ վերաշինության պարարտ հողում:

Սովետական Հայաստանում բացվեց պետական համալսարան, որտեղ ի թիվս այլ բաժինների, գործում էր նաև բժշկական ֆակուլտետը: Այդ կարևորագույն գործում Վահան Արծրունու, Քեչեկի, Գրիգոր Արեշյանի, Աբգար Իսահակյանի և ուրիշների հետ միասին իր ստեղծարար ջանքերն է գործադրել և՛ Լևոն Հովհաննիսյանը: Նա այդ ֆակուլտետի (հետագայում բժշկական ինստիտուտի) առաջին դասախոսներից էր, և ահա շուրջ 45 տարի անընդմեջ նա ղեկավարում է ներքին հիվանդությունների պրոպեդևտիկայի ամբիոնը: Այդ երկար տարիների ընթացքում ամբիոնը դարձել է մեր ռեսպուբլիկայում ներքին հիվանդությունների գծով գիտական մտքի կարգացման, այդ բնագավառի կադրերի պատրաստման մեծ տրադիցիաներ ունեցող իսկական կենտրոն: Ամբիոնն ստեղծել է գիտական իր յուրօրինակ ուղղությունը, ներքին հիվանդությունների ախտորոշման և բուժման իր սկզբունքները, իր դպրոցը, որի հեղինակության հետ հաշվի են նստում Միությունում հռչակված գիտական հաստատությունները: Լևոն Հովհաննիսյանի ղեկավարած այդ ամբիոնից տարիներ շարունակ գիտության հորիզոններն են թևածել շատ հմուտ գիտնականներ:

Առանձնապես մեծ են Լևոն Հովհաննիսյանի ծառայությունները սրտաբանության բնագավառում:

Սրտի օրգանական հիվանդությունների, հատկապես արատների առաջացման առեղծվածը վաղուց էր հուզում մեծ գիտնականին: Նրա երկարատև աշխատանքի արդյունքն էր՝ «Սրտի օրգանական աղմուկների ծագման մասին» աշխատությունը, որի համար 1937 թվականին Լևոն Հովհաննիսյանն արժանացավ բժշկական գիտությունների դոկտորի աստիճանի:

Մինչ այդ, գիտության մեջ գոյություն ուներ այն թյուր կարծիքը, թե սրտային արատների ժամանակ աղմուկն առաջանում է արյան անկանոն հոսքից: Ժխտելով այդ, Հովհաննիսյանը միանգամայն նոր տեսություն ստեղծեց սրտային արատների ժամանակ ախտորոշիչ նշանակություն ունեցող սրտային աղմուկների առաջացման մեխանիզմի բացահայտման հարցում: Նա վերջնականապես հաստատեց այն տեսությունը, ըստ որի սրտային աղմուկների առաջացման ռեալ պատճառը համարվում են սրտի փականների կազմվածքի փոփոխությունները, որոնք իրենց հերթին նեղացնում են արյան հոսքի լուսանցքը: Ըստ Հովհաննիսյանի, սրտի աղմուկներն առաջանում են ոչ թե փոփոխված հոսքի կողմնային մասերում, որտեղ առաջանում են արյան պտուտաձև հոսանքներ, այլ արյան հոսքի կենտրոնական մասում՝ վերջինիս արագացման պատճառով: Սա արդեն բոլորովին նոր հարցադրում էր:

Սրտաբանության մեջ Լևոն Հովհաննիսյանի և նրա ղեկավարած կոլեկտիվի մյուս կարևոր նորամուծությունը վերաբերում է սրտանոթային նևրոզների էտիոլոգիային (պատճառաբանությանը) և պաթոգենեզին (առաջացման մեխանիզմին): Առանձնապես մեծ նշանակություն ունեցավ սրտային նևրոզների այն նոր դասակարգումը, որը մշակվեց Լևոն Հովհաննիսյանի ղեկավարած կլինիկայի ու ամբիոնի կողմից և կիրառման քաղաքացիական իրավունք ստացավ բժշկական գիտական շրջաններում ու պրակտիկ հիմնարկներում:

Բացի վերոհիշյալից, գիտական բոլորովին նոր տեսանկյունից բացահայտվեցին մինչ այդ չլուսաբանված այնպիսի խրթին հարցեր, ինչպիսիք էին նևրոզների ժամանակ յատրոգեն վիճակները, կարդիոպատների (սրտային հիվանդների) հոգեբանությունը, սրտային նևրոզների կլինիկական ընթացքը, բուժումը և այլն: Ախտաբանության



վերաբերյալ պավլովյան ֆիզիոլոգիայի լույսի տակ կատարված այդ աշխատանքները նոր էջեր էին բացում սրտային հիվանդությունների ուսումնասիրման բնագավառում: Այստեղ պետք է հիշատակել նաև հիպերտոնիայի ամենավաղ ստադիաների բուժման վերաբերյալ Լևոն Հովհաննիսյանի կատարած խիստ արժեքավոր ուսումնասիրությունները:

Սրտային հիվանդությունների երկարամյա ուսումնասիրությունների արդյունքը հանդիսացան Լ. Հովհաննիսյանի մի քանի ստվարածավալ աշխատությունները, որոնցում ամփոփված են այդ ասպարեզում գիտնականի կուտակած հարուստ նյութերը: «Ներքին հիվանդությունների կլինիկայում հոգեկան և սոմատիկ ոլորտների փոխհարաբերությունների մասին» (1961 թ.) և «Սրտային հիվանդի հոգեբանական կերպարի մասին» (1963 թ.) մեծածավալ մենագրությունները խոշոր ներդրում էին սրտաբանության համաշխարհային գանձարանում: Մինչ այդ, դեռևս 1943 թվականին, Լ. Հովհաննիսյանը, պրոֆեսորներ Ա. Սիմոնյանի, Վ. Ավագյանի և իր մյուս աշխատակիցների հետ միասին, ռուսերեն հրատարակել էր «Ներքին հիվանդությունների ախտաբանություն» դասագիրքը, որը սեղանի գիրք է դարձել մեր Միության բժշկական ինստիտուտների ուսանողների և թերապևտ-բժիշկների համար:

Բժշկական ինստիտուտի դասախոսներն այսօր կատակով «դժգոհում են», որ մալյարիայի և ոչ մի դեպք չի հանդիպում՝ ուսանողներին ցույց տալու համար: Սակայն 2—3 տասնյակ տարի առաջ Հայաստանի բնակչության զգալի մասը տառապում էր մալյարիայով: Այդ բառը հնչում էր ամենուրեք՝ գիտական կոնֆերանսներում, պարտիական, սովետական օրգանների կողմից հրավիրված խորհրդակցություններում: Ոտքի հանվեցին բոլորը՝ յուրաքանչյուրն իր գծով, իր ասպարեզում մալյարիայի դեմ տարվող պայքարին մասնակցելու համար: Պլանային աշխատանքներ ձեռնարկվեցին ճահիճների ու առուների չորացման, մոծակների ոչնչացման ուղղությամբ: Բնականաբար, Սովետական Հայաստանում բժշկական գիտական հիմնարկների առաջնեկը եղավ 1923 թվականին կազմակերպված տրոպիկական հիվանդությունների գիտահետազոտական ինստիտուտը Երևանում: Վերջինս դարձավ այդ գործի ղեկավարման գիտա-պրակտիկ հզոր կենտրոն, որը մեծ ծառայություններ ունի մալյարիայի դեմ տարվող պայքարի գործում: Երկար տարիներ այդ ինստիտուտի կոնսուլտանտը լինելով, Լևոն Հովհաննիսյանն իր մեծ լուման մտցրեց մալարիաբանության բնագավառում:

Դեռևս նախասովետական տարիներից, մեծ փորձ կուտակելով այդ հիվանդության ախտորոշման և բուժման հարցերում, պրոֆեսոր Ա. Սիմոնյանի, դոցենտ Ա. Ֆարմանյանի և Լ. Դանիել-Բեկի հետ Հովհաննիսյանը պարզում է բիոքիմիական այն փոփոխությունները, որոնք տեղի են ունենում մալերիկների օրգանիզմում: Այնուհետև Հովհաննիսյանի ղեկավարած գիտնականների կոլեկտիվը (Վ. Սադոյան, Լ. Իստամանյան, Ռ. Կարապետյան, Վ. Հեղնարյան) մշակում է մալյարիայի կլինիկական այն դասակարգումը, որը կարևոր նշանակություն ունեցավ մալյարիայի ախտորոշման և բուժման գործում: Պակաս կարևոր չէր նաև մալյարիայի հետևանքով առաջացած հյուծվածության և սակավարյունության բուժման մեթոդը՝ փայծաղային դիոթերապիայի միջոցով:

Բոլորը չես թվարկի: Սակայն անհրաժեշտ է հիշատակել, այսպես կոչված, «վեցօրյա տենդի» առեղծվածի վերաբերյալ Հովհաննիսյանի ուսումնասիրությունները, որոնք նա կատարեց պրոֆեսոր Վ. Ավագյանի հետ: Հիվանդագին այդ երևույթները, որոնք մինչ այդ շփոթվում էին մալյարիայի հետ, շնորհիվ Հովհաննիսյանի ջանքերի, առանձնացվեցին որպես նոզոլոգիական առանձին միավոր՝ պայմանականորեն ստանալով «հայկական հիվանդություն» անվանումը: Այժմ համաշխարհային բժշկական շրջաններում շարունակվում են բուռն բանավեճեր այդ հիվանդության առաջացման պատճառների, կլինիկական ախտանիշների և բուժման առանձին հարցերի վերաբերյալ, հիվանդություն, որը «հայտնաբերելու» պատիվը պատկանում է Հովհաննիսյանին:

●

ՎԱՂ ժամանակներից մարդիկ էմպիրիկ ձևով զգացել էին Հայաստանի տարբեր վայրերում երկրի ընդերքից բխող հանքային ջրերի բուժական հատկությունները: Այդ են վկայում Արզնիի հանքային աղբյուրների հատակից հորատման ժամանակ հայտնաբերված տարբեր երկրների և դարերի պատկանող մետաղյա դրոշմանիշները, որոնք որպես «երախտագիտության» նշան, հանքային աղբյուրների մեջ են նետել ապաքինված հիվանդները: Չնայած դրան, մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում չկար ոչ մի առողջարան:

...Ջերմուկում, սանատորիաներից մեկի պատին այժմ էլ փակցված է մի նկար. ամայի տարածության վրա հորատանցքից ջուր է ժայթքում, որի շուրջը խմբված մի քանի մարդկանց մեջ նշմարվում է երիտասարդ բժիշկ Լևոն Հովհաննիսյանը: Հայաստանում սովետական իշխանության առաջին տարիներին էր: Երևանից եկած գիտնականների էքսպեդիցիան ուսումնասիրում էր Ջերմուկի հանքային ջրերը՝ այստեղ առողջարան ստեղծելու համար:

Մի պահ թեքում ես հայացքդ այդ նկարից և



digitised by A.R.A.R.@

սանատորիայի պատուհանից դիտում շրջապատդ: Դիմացը մի ամբողջ քաղաք է՝ առողջարանների, կուլտուր-կենցաղային հիմնարկների վեհակերտ շենքերով, ասֆալտապատ ծառուղիներով: Ջերմուկը դարձել է մեր Միության առաջնակարգ առողջարաններից մեկը, որի հավվագրյուտ ջրերը մրցում են Չեխոսլովակիայի Կարլովո-Վարիի հանքային աղբյուրների հետ:

Բայց երբ Ջերմուկի հանքային ջրերը տակավին չէին ուսումնասիրված, երբ այնտեղ ամայի տարածություն էր միայն, անհրաժեշտ էր գիտական խիզախություն, համբերատար հետամտություն՝ ապացուցելու համար այստեղ հարյուրավոր միլիոններ ներդնելու, խոշոր առողջարան ստեղծելու անհրաժեշտությունը:

Նույնը կարելի է ասել նաև Արզնիի մասին: 1925 թվականին Հովհաննիսյանը հայտնի երկրաբան Լ. Այվազյանի, քիմիկ-ֆարմակոլոգ, պրոֆեսոր Գ. Մեղնիկյանի և այլոց հետ մանրակնին ուսումնասիրեց Արզնու հանքային ջրերի քիմիական բաղադրությունը, ջրի պաշարները, նրա բուժական հատկությունները: Դրա արդյունքը հանդիսացավ կոմպլեքսային ուսումնասիրությունների վերաբերյալ գիտական հաշվետվությունը, որի հիման վրա Հայաստանի նորաստեղծ սովետական կառավարությունը որոշեց Արզնիում առողջարաններ հիմնել: Այդ նույն տարին արդեն, Արզնիում սկսեցին բուժել հիվանդներին, իսկ 1926 թվականին այստեղ լայն թափով ծավալվեց շինարարությունը: Այժմ Արզնին դարձել է մեր Միության մեջ սրտային հիվանդությունների բուժման հանրահայտ առողջավայրերից մեկը: Հովհաննիսյանը երկար տարիներ Արզնի առողջարանի գիտական կոնսուլտանտն էր: Նրա երկարատև ուսումնասիրությունների շնորհիվ վերջնականապես պարզվեց առողջարանի պրոֆիլը՝ ի թիվս այլ հիվանդությունների, շեշտը հիմնականում դրվեց սրտային հիվանդությունների բուժման վրա:

Սակայն կուրորտաբանության գործում Հովհաննիսյանի գործունեության շրջանակները միայն Արզնիով ու Ջերմուկով չբավարարվեցին: Հայաստանի առժողկոմատը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին կազմեց ռեսպուբլիկայի հանքային բուժիչ ջրերի հայտնաբերման և ուսումնասիրման հատուկ հանձնաժողով՝ Հովհաննիսյանի նախագահությամբ: Բեղմնավոր էր այդ հանձնաժողովի գործունեությունը: Հաջողվեց հայտնաբերել Հանքավանի, Արարատի (Դավալու), Դիլիջանի և այլ վայրերի իսկապես ունիկալ հանքային ջրերը, հիմնավորել դրանց օգտագործման անհրաժեշտությունը, այնտեղ առողջարաններ հիմնելու հեռանկարները: Ինչպես հայտնի է, այժմ Հանքավանում նույնպես կառավարության որոշմամբ հիմք է դրվել առողջարանի: Մասսայաբար օգտագործվում է նաև Դիլիջանի հանքային աղբյուրների ջուրը:

Հայաստանը գնալով դառնում է առողջարանների երկիր, լայն թափ է ստանում դրանց շինարարությունը, ավելի մեծ թվով հիվանդներ են բուժվում շարք մտնող սանատորիաներում: Այս հիանալի գործում իր արժանի ավանդն ունի Լևոն Հովհաննիսյանը:

«ԵՍ չգիտեմ մի այլ ժողովուրդ, որն իր բժշկության պատմությունն այնպես խնամքով ուսումնասիրած, այնպես խոր մեկնաբանած և ստվարածավալ հինգ հատորներով հրատարակած լինի, ինչպես արել է Հայաստանում Լևոն Հովհաննիսյանը»,—իր մի հոդվածում գրել է բժշկության պատմության համաշխարհային ակադեմիայի իսկական անդամ, պրոֆեսոր Բ. Դ. Պետրովը: Տարիներ շարունակ նրա պրպտող միտքը փնտրել, ժամանակի փոշիներից մաքրել և ի տես ամբողջ աշխարհի հրապարակել է հին դարերից եկող հայ բժշկության գանձերը: Տասնյակ աշխատություններ է հրապարակել Հովհաննիսյանը հայ բժշկության պատմության տարբեր հարցերի վերաբերյալ: Դեռևս նախասովետական շրջանում հայտնի էին հայ բժշկական մամուլում լույս տեսած նրա ուսումնասիրությունները՝ Հայաստանում բժշկական մտքի կարգացման էտապների, բուժական և ախտորոշման շատ հարցերում հայ բժիշկների առաջնության և այլ թեմաների շուրջ: Այդ բոլորը վերջնական ձև ու բովանդակություն ստացան նրա կապիտալ հինգհատորյակում, որը կրում է «Բժշկության պատմությունը Հայաստանում» վերնագիրը: Հայ բժշկության այդ գանձարանում տեղ են գտել Ամիրդովլաթին ու Հերացին, Մագիստրոսցին ու Մարգար Առուստամյանը, շատ ու շատ հայ ականավոր բժիշկներ: Բացահայտված են հայ բժշկության պատմության բազմաթիվ հանգուցային հարցեր: Հովհաննիսյանի խոշոր ծառայությունը հայ բժշկության պատմությանը նախ և առաջ այն է, որ նա կարողացավ սպառիչ խոսք ասել և վերջնականապես պարզել հայ բժշկության ինքնատիպության՝ մինչև այդ վիճելի հարցը: Հայ բժշկության շատ ուսումնասիրողներ (Բասմաջյան, Սյուքրյան և ուրիշներ) անհիմն կերպով այն կարծիքն էին պաշտպանում, թե հայ բժշկությունն ամբողջովին «փոխ է առնված» արաբական և հելլենական բժշկական մտքից: Արաբական և հունական տերմինաբանության ատաղձ գտնելով հայ բժշկական ոչ քիչ թվով արտահայտություններում, նրանք, չգիտես ինչու, անտեսում էին այն մնացած շատը, որը ոչ մի առնչություն չունի օտար բժշկական մտքի հետ, ինքնուրույն է միանգամայն և բնորոշ՝ միայն մեր կուլտուրայի համար: Լևոն Հովհաննիսյանն ապացուցեց, որ մինչև արաբների տիրապետությունը արաբական բժշկությունը վաղուց արդեն կորցրել էր իր վաղեմի փառքը և զգալիորեն ետ էր մնացել համաշխարհային բժշկական մտքի կարգացումից: Հայաստանում, մինչև արաբական տիրապետությունը ստեղծվել էր մատերիալիստական որոշակի հիմք ունեցող բժշկական մտածելակերպ:

Հովհաննիսյանը տարիների ընթացքում քայլ առ քայլ խորացրեց, բազմաթիվ նոր փաստերով հարստացրեց այդ թեզը, որն իր կարգացումն ստացավ Գ. Հարությունյանի, Ա. Կծոյանի, Խ. Մելիք-Փարսադանյանի, Ա. Լալայանի և ուրիշների հոգեբուժության, վիրաբուժության, մալարիաբանության, ֆիզիոլոգիայի և այլ բնագավառներում կատարած պրպտումներով:

Բացի հայ բժշկության պատմության մեծարժեք հինգ հատորյակից, Հովհաննիսյանը գրել է նաև ժուռնալային տասնյակ հոդվածներ, զեկուցումներով հանդես եկել բժիշկ-պատմաբանների ռեսպուբլիկական, համամիութենական և Իսպանիայում, Ֆրանսիայում հրավիրված միջազգային համաժողովներում, համագումարներում, կոնգրեսներում: Բարձր գնահատելով Հովհաննիսյանի ծառայությունները բժշկության պատմության ուսումնասիրման բնագավառում և նրա մեծ էրուդիցիան, նրան ընտրել են բժշկության պատմության միջազգային ակադեմիայի իսկական անդամ:

Քանի որ խոսք եղավ Հովհաննիսյանի գիտական տիտղոսների մասին, չմոռանանք նշել, որ նա իսկական անդամ է և՛ ՍՍՌՄ բժշկական գիտությունների, և՛ Հայաստանի գիտությունների ակադեմիաների, գիտության վաստակավոր գործիչ է, գիտությունների դոկտոր-պրոֆեսոր, թերապևտների համամիութենական գիտական ընկերության պատվավոր անդամ: Ժողովուրդը, պարտիան և կառավարությունը, բժշկական հասարակայնությունն ըստ արժանվույն են գնահատել անխոնջ գիտնականի ու բժշկի մեծ ծառայությունները:

Բժիշկը և հասարակական գործիչը, ակտիվ սովետական քաղաքացին սերտորեն միաձուլվել են Լևոն Հովհաննիսյանի հարուստ կերպարում: Կոմունիստ գիտնականի խրոխտ ձայնը հաճախ է հնչել խաղաղության պաշտպանների ռեսպուբլիկական և համամիութենական կոնֆերանսներում:

Հայաստանի բժշկական աշխարհի նահապետ Լևոն Հովհաննիսյանի կյանքի ուղին հարազատ ժողովրդին ծառայելու մի հիանալի օրինակ է:

**ՌԱՖԱՅԵԼ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ**
Դոցենտ, Հայկական ՍՍՌ վաստակավոր բժիշկ





digitised by A.R.A.R.@

# Գիտությունը և կյանքը

Ս. ԳԱԼՍՏՅԱՆ
դոկտոր-պրոֆեսոր
Գ. ԴԱՆԻԵԼՅԱՆ
Ավագ գիտաշխատող

## ՔԱՂՑԿԵՂԻ ՊՐՈԲԼԵՄՆ ԱՅՍՕՐ

Չարորակ նորագոյացությունների պատճառների հայտնագործման, արդյունավետ պրոֆիլակտիկայի և արմատական բուժման հարցերը արդի բժշկագիտության կարևորագույն խնդիրներն են: Այդ պրոբլեմի լուծման անհրաժեշտությունը թելադրվում է կյանքի հրատապ պահանջներով: Բավական է նշել, որ վիճակագրական տվյալներով աշխարհում ամեն տարի քաղցկեղից վախճանվում են մոտ 2 միլիոն մարդ: Եթե նկատի ունենանք այն, որ այս հիվանդությամբ տառապելու միջին տևողությունը 2—3 տարի է և ներկայումս կիրառվող բուժական միջոցառումները հաճախ զգալի չափով երկարաձգում են հիվանդների կյանքը, ապա ստացվում է, որ քաղցկեղով տառապող հիվանդների թիվը հասնում է ավելի քան 5 միլիոն մարդու:

Վերջին տասնամյակներում վիճակագրական տվյալների համաձայն, զգալի չափով աճել է ինչպես քաղցկեղով հիվանդների, այնպես էլ մահացությունների թիվը: Ճիշտ է, քաղցկեղով տառապող հիվանդների բացարձակ թվական աճը մասամբ կարելի է բացատրել հիվանդության ախտորոշման եղանակների անընդմեջ կատարելագործմամբ, սակայն հնարավոր է, որ այդ աճը պայմանավորված է նաև այլ հանգամանքներով, որոնք դեռևս ճշտման կարիք են զգում:

Քաղցկեղի զանազան տեսակների ընդհանուր աճին համապատասխան բարձրացել է և մահացությունը: Այսպես, օրինակ, միայն Անգլիայում և ԱՄՆ-ում վերջին 50—60 տարիների ընթացքում թոքերի քաղցկեղից մահացությունն աճել է 12—14 անգամ: Ավելի կամ պակաս չափով հաճախակի են դարձել նաև ստամոքսի, կերակրափողի, կաթնագեղձի, արգանդի և այլ օրգանների քաղցկեղային հիվանդությունները:

Չնայած ուռուցքաբանության պատմությունը կապված է Հիպոկրատի և Ցելսի անունների հետ, այնուամենայնիվ, ներկայումս, ավելի քան 2000 տարի անց, ուռուցքների զարգացման էական կարևորություն ներկայացնող հարցերն իրենց սպառիչ լուծումը չեն ստացել: Հավանաբար այս պրոբլեմի բարդությամբ պետք է բացատրել ուռուցքաբանության (օնկոլոգիայի) հիմնադիրներից մեկի՝ գերմանական հռչակավոր գիտնական Ռ. Վիրխովի կողմից մոտ 100 տարի առաջ հայտնած այն թյուր կարծիքը, թե «Ես չեմ կարծում, որ գտնվի մեկը, որը կարողանա պատասխանել այն հարցին, թե, ըստ էության, ի՞նչ բան է ուռուցքը»:

Մ. Ա. Նովինսկին, 1876 թվականին անգնահատելի ծառայություն մատուցեց գիտությանը, առաջին անգամ հաջողությամբ ուռուցքային հյուսվածք պատվաստելով կենդանիներին, հիմք դրեց էքսպերիմենտալ ուռուցքաբանությանը, որի օգնությամբ շատ անհայտ հարցեր իրենց արժանի լուծումն ստացան:

Ուռուցքների կենսաբանական ընդհանուր հատկությունը, նրանց սեփական հյուսվածքների բջիջների հարաբերական ավտոնոմ աճն է, որը կարող է տեղի ունենալ և սոված օրգանիզմում, մինչդեռ նորմալ հյուսվածքներն այդպիսի պայմաններում ետ են անում:

Նորագոյացություններից շատերի և, մանավանդ, չարորակ նորագոյացությունների համար բնորոշ է այն, որ նրանք դրսևորում են պրիմիտիվ տիպի ձևաբանական հատկանիշներ և զուրկ են նորմալ հյուսվածքներին հատուկ այս կամ այն ֆիզիոլոգիական ֆունկցիա կատարելու հատկությունից: Չարորակ ուռուցքները ներանելով շրջակա առողջ հյուսվածքների և օրգանների մեջ՝ վերջիններս քայքայում և կյանքի համար լուրջ բարդությունների տեղիք են տալիս:

Ուռուցքային հիվանդության առավել չարորակ հատկանշական կողմը բնորոշվում է հեռավոր օրգանների և հյուսվածքների մեջ նրանց տարածմամբ (մետաստազներ), որն ուռուցքի բնույթին համապատասխան կարող է օրգանիզմում տարածվել ինչպես արյունատար, այնպես էլ ավշային ճանապարհներով:

Կենդանի օրգանիզմներում չարորակ նորագոյացությունների զարգացման համար գոյություն ունեն ֆիզիկական, քիմիական և բիոլոգիական՝ վիրուսային բնույթի ուռուցքային ազդակներ: Այս կամ այն ժամանակամիջոցում այդ ազդակների առանձին կամ զուգակցված ներգործությամբ սկզբնավորվում է ուռուցքային պրոցեսի զարգացումը:

Ուռուցքածին ակտիվությամբ են օժտված նաև երկար ժամանակ և անթույլատրելի չափերով օգտագործված ուլտրամանուշակագույն և ռենտգենյան ճառագայթները, ինչպես նաև իոնիզացնող ճառագայթման (ռադիացիայի) բոլոր տեսակները:

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ուռուցքածին ազդակների ներգործման պահից մինչև ուռուցքային հյուսվածքի առաջացումը անցնում է բավական երկար թաքնված շրջան, որի ընթացքում հյուսվածքներում առաջանում են նախաուռուցքային փոփոխություններ: Այս դեպքում կարևոր նշանակություն ունի գրգիռ ընդունող օրգանիզմի ռեակտիվ հատկությունը: Ենթադրվում է, որ գաղտնի շրջանի մինիմալ ժամանակաշրջանը զանազան կենդանիների մոտ տարբեր է: Մարդկանց մոտ, պրոֆեսիոնալ վնասակար ազդակներն ուռուցք կարող են առաջացնել միջին հաշվով 15—25 և ավելի տարիների ընթացքում:

Նորագոյացությունների առաջացման պատճառների և ախտածին գործոնների վերաբերյալ մոտ 30 տարի առաջ իշխում էին երկու գիտական տեսություններ՝ Վիրխովի գրգռման և Կոնհեյմի սաղմնային բջիջներից ծագելու տեսությունները:

Ըստ Վիրխովի գրգռման տեսության (որը հեղինակն առաջարկել է մոտ 100 տարի առաջ) ուռուցքների զարգացման պատճառ են հանդիսանում տևականորեն ներգործող ֆիզիկական և քիմիական զանազան ազդակները: Այս տեսության թերի կողմն այն է, որ բավական հաճախ ուռուցքները զարգանում են նաև այնպիսի հյուսվածքների մեջ, որոնցում ֆիզիկական կամ քիմիական տևական գրգիռների փաստը ապացուցել հնարավոր չէ:

Դեռևս անցյալ դարում Կոնհեյմը ենթադրում էր, որ բարդ, իսկական ուռուցքներն առաջ են գալիս սաղմնային թերթիկների այն բջիջներից, որոնք ներարգանդային հասունացման և ձևավորման շրջանում ինչ-ինչ պատճառներով այդ պրոցեսին չմասնակցելով տարիներ կամ անգամ տասնյակ տարիներ պահպանվելով օրգանիզմի տարբեր մասերում, այնուհետև ներքին կամ արտաքին գրգիռների ազդեցության ներքո գերազանցելով սաղմնային շրջանին հատուկ իրենց ինտենսիվ աճը, ուռուցքային բնույթ են ձեռք բերում: Այս տեսությունը նույնպես լիարժեք համարվել չի կարող, քանի որ չի լուսաբանում այն կարևոր հարցը, թե ինչո՞ւ սաղմնային բջիջները նորմալ հասունացման և աճի փոխարեն հիվանդագին ուռուցքային աճ են դրսևորում:

Ներկայումս ուշադրության արժանի են նորագոյացությունների առաջացումը բացատրող երկու համեմատաբար նոր հայացքներ, որոնցից մեկը, այսպես կոչված՝ տրանսֆորմացիոն կամ քիմիական, մյուսը՝ վիրուսային (ինֆեկցիոն) տեսությունն է: Համաձայն քիմիական տեսության, ուռուցքների առաջացումը բացատրվում է նորմալ բջիջների սպիտակուցային կառուցվածքի խոր փոփոխություններով, որոնք և հիվանդագին աճի տեղիք են տալիս: Քանի որ հիվանդագին վիճակը կապված է բջիջների բիոքիմիական վերափոխումների հետ, ուստի այն միաժամանակ կոչվում է տրանսֆորմացիոն տեսություն:

Վիրուսային տեսության կողմնակիցներն ուռուցքային հիվանդությունը համարում են վարակիչ հիվանդությունների տարատեսակը, որոնց առաջացումը պայմանավորված է օրգանիզմի մեջ ուռուցքածին մանրէների (վիրուսների) կամ վիրուսանման ազդակների մուտք գործելով: Ըստ այս տեսության, չարորակ ուռուցքների առաջացումը պայմանավորված է մի քանի գործոնների զուգակցված ազդեցությամբ, որոնցից մեկը՝ վարակի մուտքն է օրգանիզմի մեջ՝ արտաքին աշխարհից, մյուսները՝ գտնվում են իր իսկ օրգանիզմի մեջ:

Վերջին տասնամյակի ուսումնասիրությունները ցույց տվին, որ ուռուցքների մի շարք տեսակներ զանազան կենդանիների մոտ առաջանում են վիրուսներից: Հետաքրքիր է հիշատակել, որ վիրուսների ազդեցության հետևանքով բջիջները ժառանգաբար փոխում են իրենց հատկությունները, ձեռք բերելով չարորակ աճի հատկություններ, բայց ուռուցքի հետագա աճի նկատմամբ վճռական դեր չեն խաղում:

Վիրուսներն անսահման բազմազան են, արտաքին միջավայրի պայմաններին համապատասխան խիստ փոփոխական և կարող են առանց նկատելի նշանների օրգանիզմում գոյություն ունենալ անորոշ երկար ժամանակ: Վիրուսների այդ աննկատելի՝ գաղտնի գոյության ժամանակաշրջանը զանազան ազդակների (քիմիական նյութերի, ճառագայթման) ներգործության հետևանքով կարող է խախտվել և դրսևորվել ուռուցքածին ակտիվության ձևով: Սակայն պետք է նշել, որ եթե կենդանիների մոտ չարորակ ուռուցքների որոշ տեսակների զարգացման մեջ ախտածին վիրուսները վճռական դեր են կատարում, ապա մարդկանց մոտ այդպիսի պարզությամբ դրսևորվող ապացույցներ արձանագրված են միայն բարորակ ուռուցքների մի քանի տեսակների նկատմամբ:

Վերջին տարիների ընթացքում հայտարարվել



digitised by A.R.A.R.@

են զգալի թվով քիմիական նյութեր, որոնց ներգործությունը օրգանիզմների վրա նույնպես քաղցկեղի առաջացման պատճառ է դառնում: Առավել լրիվ չափով ուսումնասիրված են նիտրոմիացությունների, ածխաջրատների և ամինոազոմիացությունների ուռուցքածին հատկությունները: Փորձագիտությունը ցույց է տալիս, որ օրգանիզմի մեջ մտցվող ուռուցքածին ակտիվությամբ օժտված քիմիական նյութերը, թափանցելով բջիջների մեջ, ազդում են նրա սպիտակուցների վրա և քիմիական լուրջ փոփոխություններ առաջացնելու ճանապարհով ուռուցքային պրոցեսի զարգացման դրդապատճառ դառնում:

Վերջին ժամանակները մեծ գործ է արվել ոչ միայն քաղցկեղի դրդապատճառները, այլև նրա ներքին էությունը պարզելու ուղղությամբ: Այսօր արդեն անվիճելի է, որ ուռուցքի առաջացմանը նախորդում են բջջի սպիտակուցային նյութի քիմիական փոփոխությունները և որ անկախ քացկեղ ծնող պատճառներից չարորակ ուռուցքի բջիջները օժտված են միևնույն հատկություններով:

Ներկայումս ընդունելի է դարձել այն կարծիքը, որ չարորակ հյուսվածքների կազմափոխման կարևոր պատճառներից մեկը բջիջների ժառանգական հատկությունների փոփոխումն է, որ տեղի է ունենում ուռուցքածին ազդակների՝ օրգանիզմի վրա ներգործելու հետևանքով: Բջիջների ժառանգական հատկությունների փոփոխման հավանական պատճառ է համարվում ուռուցքածին գործոնների և բջջի սպիտակուցային նյութերի փոխազդեցությունը, որի հետևանքով փոփոխվում են բջիջների սպիտակուցային բաղադրությունն ու նրանց կառուցվածքը: Վիճակագրական տվյալների վերլուծությունը հիմք է տալիս ենթադրելու, որ ժառանգական նախատրամադրությունը առավել տարածված չարորակ ուռուցքների հաճախականության պատճառներից մեկն է:

Միաժամանակ կարելի է ենթադրել, որ այդպիսի պարագայում ևս պակաս կարևոր դեր չեն խաղում արտաքին միջավայրի գործոնները ընդհանրապես և կենցաղային պայմանները մասնավորապես:

Պետք է նշել, որ նորագոյացությունների զանազան տեսակների տարածումը տարբեր է ոչ միայն տարբեր աշխարհամասերում, այլև միևնույն երկրի տարբեր վայրերում: Ուռուցքային և նախաուռուցքային հիվանդությունների բնույթը պայմանավորված է ոչ միայն աշխարհագրական միջավայրով, այլև կենցաղով ու ապրելակերպով, աշխատանքի ու սննդի բազմազան պայմաններով: Այս գործոնների վերլուծությունը հնարավորություններ է ընձեռում մշակելու քաղցկեղի կանխման միջոցառումներ:

Անվիճելի է ծխախոտի, գրգռող սննդամթերքների, ինչպես նաև անկանոն սնվելու և ոգելից խմիչքների չարաշահման դերը թոքերի, ստամոքսի քաղցկեղի, ուլտրամանուշակագույն ինտենսիվ ճառագայթման դերը մաշկի քաղցկեղի զարգացման մեջ և այլն: Ճշտված է, որ կաթնագեղձերի ու արգանդի քաղցկեղի զարգացման հաճախականության խնդրում որոշակի բացասական դեր են խաղում ինչպես այդ օրգանների խրոնիկական բորբոքային հիվանդությունները, այնպես էլ նրանց աննորմալ գործունեության հետ կապված ներքին սեկրեցիայի գեղձերի ֆունկցիոնալ խանգարումները: Որոշ պրոֆեսիայի աշխատողների մոտ քաղցկեղի հայտնի տեսակների հաճախականությունը հիմք է ծառայել մտածելու նաև պրոֆեսիոնալ բնույթի քաղցկեղների հնարավորության մասին: Այսպես, օրինակ, մաշկի քաղցկեղն ամենից հաճախ նկատվում է պարաֆինի հետ գործ ունեցող մարդկանց, իսկ միզափամփուշտի քաղցկեղը՝ անիլինային արդյունաբերության աշխատողների մոտ և այլն:

Հետազոտություններով ապացուցվել է, որ քաղցկեղային ուռուցքի առաջացմանն ու զարգացմանը գրեթե միշտ նախորդում է այս կամ այն (երբեմն շատ երկարատև) նախաքաղցկեղային հիվանդագին վիճակը:

Նախաքաղցկեղային վիճակից քաղցկեղային ուռուցքի բջիջների առաջացման համար բնորոշ է այն կրիտիկական շրջանը, երբ սկսվում և ընթացքի մեջ է մտնում քաղցկեղային սպեցիֆիկ նուկլեոպրոտեիդների սինթեզման պրոցեսը, որը հանգեցնում է քաղցկեղային «առաջին» բջիջների զարգացմանը, իսկ այնուհետև ուռուցքային հանգույցի գոյացմանն ու տարածմանը:

Ներկայումս մեզ հայտնի հիվանդություններից, նախաքաղցկեղային վիճակների շարքին են դասվում հին՝ տևական բրոնխիտները և բրոնխէկտազները, թոքերի հաճախակի ռեցիդիվող խրոնիկական բորբոքումները և պալարախտը, կաթնագեղձերի խրոնիկական կիստոզ փոփոխությունները, լյարդի ցիռոզը, լորձաթաղանթների ճաքճաքումները և չպաքինվող խոցերը, ստամոքսի և հաստ աղիների պոլիպոզները և խոցերը, արգանդի պարանոցի պատռվածքների հետևանքով առաջացած լորձաթաղանթի տևական արտանկումները և այլն: Հետևաբար, ուռուցքային հիվանդությունների կանխման և հուսալի բուժման կարևորագույն նախապայմանը նրանց հնարավորին չափ վաղ ախտորոշումն է:

Ուռուցքների ախտորոշման համար բացի հիվանդի գանգատներից, օգտագործվում են նաև ռենտգենաբանական հետազոտությունը, հատուկ օպտիկական գործիքներով ներքին զննման (էնդոսկոպիայի) միջոցները, ուռուցքի հեռացված



մասի խոշորացույցային ուսումնասիրությունը (բիոպսիա), պունկցիայի միջոցով ստացված նյութի բջջաբանական հետազոտությունը և այլն: Գոհունակությամբ պետք է հիշատակել, որ օպտիկական տեխնիկայի զարգացման ներկա մակարդակը հնարավորություն է տալիս առողջապահության բնագավառն ապահովել այնպիսի կատարելագործված հարմարանքներով (գաստրոսկոպ, բրոնխոսկոպ, ցիստոսկոպ, լապարոսկոպ և այլն), որոնց օգնությամբ ոչ միայն հնարավոր է տեսնել, այլև լուսանկարել զննման ենթակա օրգաններն ու խոռոչները: Ուռուցքների ախտորոշման նպատակով ներկայումս լայն չափերով կիրառվում են ռադիոակտիվ իզոտոպներ, որոնք օգտագործվում են ինչպես ուռուցքի տեղակայումը, այնպես էլ նրա տարածվածության աստիճանը որոշելու համար:

Դժբախտաբար չարորակ ուռուցքներից շատերը իրենց զարգացման վաղ շրջաններում ցավի երևույթներով չեն ուղեկցվում և դրա պատճառով հիվանդները հաճախ նրանց գոյության մասին նույնիսկ չեն կասկածում, որի հետևանքով էլ ցավ չպատճառող ուռուցքները կամ «չնչին» խոցային մակերեսները անհրաժեշտ ուշադրության չարժանանալով, հետագայում լուրջ և վտանգավոր կացություն են ստեղծում: Պետք է նկատի ունենալ, որ չարորակ նորագոյացությունների կլինիկական պատկերի մեջ բացի ուռուցքի գոյությունից միշտ առկա է հիվանդի ընդհանուր անբավարար, արտաքուստ երբեմն անբացատրելի ինքնազգացումը, ֆիզիկական և մտավոր ունակությունների պրոգրեսիվ անկումը, հյուծումը, սակավարյունության զարգացումը և այլն: Բացի դրանից այս կամ այն օրգանում ուռուցքի տեղակայման համապատասխան (ստամոքս, լյարդ, կաթնագեղձ, արգանդ, հաստ աղի, երիկամ և այլն) դրսևորվում են նաև այդ օրգանի ֆունկցիոնալ խանգարումները: Արժանի է հիշատակել այն հետաքրքրական փաստը, որ միակ օրգանը, որում չարորակ նորագոյացություններ չեն զարգանում՝ փայծաղն է: Այս փաստն ինքնըստինքյան ուշագրավ լինելով՝ տեղիք է տվել ենթադրելու, որ այն հակաքաղցկեղային հատուկ նյութ է մշակում:

Քաղցկեղի և մյուս չարորակ նորագոյացությունների բուժման պրոբլեմը լուրջ մտահոգություն է պատճառում գիտնականներին: Ներկայումս առավել կարևորը նախաքաղցկեղային հիվանդություններով տառապող մարդկանց ժամանակին հայտնաբերումն է, քանի որ չարորակ նորագոյացությունների շատ տեսակներով տառապող հիվանդների բուժումը կարող է դրական արդյունք տալ միայն վաղ ախտորոշման ու արմատական բուժման պայմաններում:

Հիվանդագին պրոցեսի զարգացման միատեսակ պայմաններում հիվանդի տարիքային գործոնը զգալի չափով պայմանավորում է հիվանդության ընթացքն ու ելքը: Քանի որ երիտասարդ տարիքում ուռուցքային պրոցեսի զարգացումը օրինաչափորեն ընթանում է ավելի ինտենսիվ կերպով, ապա, հասկանալի պատճառով, բուժման կազմակերպման ընթացքում այն պետք է ըստ արժանվույն գնահատել:

Կլինիկական բազմաթիվ դիտումները վկայում են նաև, որ հղի կնոջ օրգանիզմում նկատելի չափով արագանում է ոչ միայն ուռուցքային պրոցեսի աճը, այլև տեղի է ունենում ուռուցքային պրոցեսի ռեցիդիվ այն կանանց մոտ, որոնք տարիներ առաջ ենթարկվել են չարորակ ուռուցքի վիրահատման: Այստեղից հետևում է, որ այդպիսի կանանց հղիությունը պետք է կանխել, կամ էլ նրա առաջացման դեպքում անհապաղ ընդհատման խորհուրդ տալ:

Չարորակ նորագոյացությունների, այդ թվում և քաղցկեղի բուժման հանրահանաչ մեթոդը վիրահատությունն է, զուգակցված մինչ ու հետօպերացիոն ճառագայթման, իսկ անհրաժեշտության դեպքում նաև հորմոնային և քիմիական միջոցների օգտագործմամբ:

Բուժական այդպիսի միջոցառումները ոչ միայն տալիս են լավագույն արդյունքներ, այլև զգալի չափով երկարաձգում են այն հիվանդների կյանքը, որոնց բուժումն ուշացումով է սկսվել:

Եթե մոտ անցյալում իշխում էր «մեծ ուռուցքների ժամանակ փոքր օպերացիա» կատարելու հայացքը, ապա ցավազրկման նորագույն՝ կատարելագործված եղանակների կիրառման շնորհիվ արմատական միջամտությունների հնարավորությունները խիստ բարելավվել են:

Վիրաբուժական միջամտությունների համեմատաբար ավելի լավ արդյունքները բացատրվում է ոչ միայն նրանով, որ նկատելիորեն կատարելագործվել է հիվանդության վաղ ու ժամանակին ախտորոշելու գործը, այլև այն բանով, որ բուժման կոմպլեքսի մեջ են մտցվել արյանը փոխարինող սպիտակուցային հեղուկներ, հակաբակտերիալ ու սրտային նոր պրեպարատներ և այլն:

Մենք հավակնություն չունենք չարորակ ուռուցքների ապաքինման վիրաբուժական մեթոդը բժշկության վերջնական իդեալը համարել, քանի որ գուցե ժամանակին այն չհամապատասխանի ուռուցքային հիվանդության իսկական էությանը, որի լուծումն արդի համաշխարհային բժշկագիտության առաջնահերթ խնդիրն է: Սակայն ուռուցքաբանության զարգացման ներկա էտապում վիրաբուժական միջամտությունը դեռևս համարվում է առավել արդյունավետ միջոցը:

Անդրադառնալով ճառագայթային էներգիայով չարորակ ուռուցքների բուժման հարցին, պետք



digitised by A.R.A.R.@

է նշել, որ բուժական ցանկացած դոզաներով դրանք օգտագործելու համար օնկոլոգիական հիմնարկները ներկայումս ապահովված են այնպիսի ապարատներով, որոնք բավական հաջողությամբ ներգործելով հիվանդագին հյուսվածքների վրա, գրեթե բոլորովին չեն վնասում մարմնի մյուս մասերը: Բուժման նպատակով ներկայումս հաջողությամբ օգտագործվում են նաև բետատրոնային արագաշարժ էլեկտրոնները:

Վերջին տարիների ընթացքում գործածության մեջ է դրվել նաև, այսպես կոչված՝ տելեգամաթերապիան, որի ճառագայթման աղբյուրը ռադիոակտիվ կոբալտն է: Որպես ռադիոակտիվ նյութեր հաջողությամբ օգտագործվում են նաև ոսկու, արծաթի, տանտալի, իրիդիումի, ցինկի և ցեզիումի իզոտոպները: Ճառագայթային էներգիայով չարորակ ուռուցքների բուժումը կարող է հանգեցնել առաջնային ուռուցքային հանգույցի լրիվ ներծծմանը: Բուժման այս եղանակն ավելի արդյունավետ է դառնում, երբ այն զուգորդվում է հորմոնային դեղամիջոցների հետ:

Սովետական Միության մեջ և արտասահմանյան երկրներում սինթեզվել ու այժմ բավական տարածված կիրառում ունեն մի շարք քիմիոթերապևտիկ դեղամիջոցներ (տիոֆոսֆամիդ, բենզոտեֆ կրուցին, սարկոլիզին, ցիկլոֆոսֆան, դոպան, կոլխամին և այլն), որոնց օգտագործումը զանազան տեսակի չարորակ ուռուցքների զարգացման խիստ ուշացած շրջաններում կասեցնում կամ նսեմացնում է ուռուցքային պրոցեսի աճը: Այդ դեղամիջոցները օրգանիզմ են մտցվում բազմազան ճանապարհներով, որոնցից առավել նորագույն և արդյունավետ եղանակը, դեղանյութը արյան սահմանազատ շրջանառության (պերֆուզիա) մեջ մտցնելն է:

Չնայած քաղցկեղային հիվանդության կանխման և բուժման նպատակով նորանոր միջոցներ են առաջարկվում, սակայն կասկածից վեր է, որ նրանք լիարժեք ու գոհացուցիչ կարող էին լինել հիվանդության բուն էության, նրա առաջացման ու զարգացման բոլոր հարցերի լուսաբանման պայմաններում:

Հակաքաղցկեղային պրոֆիլակտիկ ու բուժական միջոցառումների համաժողովրդական մեծ գործը գտնվում է առողջապահական օրգանների ուշադրության կենտրոնում:

Հակաուռուցքային ծառայության գիտական կենտրոնը մեր ռեսպուբլիկայում Երևանի ռենտգեն-ռադիոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտն է, որը հիմնադրվել է 1947 թվականին: Այս ինստիտուտը, որ գտնվում է ՍՍՌՄ բժշկական գիտությունների ակադեմիայի տնօրինության ներքո, բանիմաց և գործունյա կերպով գլխավորում է ականավոր գիտնական, ՍՍՌՄ բժշկական գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ և Հայկ. ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի իսկական անդամ պրոֆեսոր Վ. Ա. Ֆանարջյանը: Երևանի ռենտգենոռադիոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտն ապահովված է լավագույն կադրերով և այն ամենով, ինչ պահանջվում է արդի մակարդակով գիտական գործունեությամբ զբաղվելու, հիվանդների արդյունավետ բուժման համար:

Գիտության ու տեխնիկայի զարգացման արդի մակարդակն ու վերելքը կասկած չի հարուցում, որ հեռու չէ այն օրը. երբ քաղցկեղի պրոբլեմի լուծման մոտալուտ լուրը անսահման կուրախացնի մեր մոլորակի վրա բնակվող համայն մարդկությանը:

---

# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՔԱՂԱՔԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԵԼԱԿԵՏԱՅԻՆ ԲՋՋԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

*Սոցիալիզմի քաղաքատնտեսության գիտական կուրսի ստեղծման անհրաժեշտությունը, բնականաբար, առաջ քաշեց սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ելակետային բջջի հարցը: Երկարատև վիճաբանությունների նախնական ամփոփումը ցույց է տալիս, որ տնտեսագետների ճնշող մեծամասնությունն այլևս չի կասկածում դրա գոյության մասին: Սակայն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ելակետային բջջի գիտական հիմնավորման հարցում առաջ են եկել սկզբունքորեն տարբեր կարծիքներ:*

*ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի կողմից լույս ընծայված «Քաղաքատնտեսություն» դասագրքի հեղինակները սոցիալիզմի զարգացման ելակետային բջիջ համարում են հասարակական սեփականությունը: Այդ տեսակետին է նաև ընկ. Կրոնրոդը և մի շարք այլ տնտեսագետներ:*

*Ն. Ցագոլովի խմբագրությամբ լույս տեսած «Քաղաքատնտեսության դասընթաց» դասագրքի հեղինակները ելակետային բջիջ են համարում «պլանաչափությունը»: Մի խումբ տնտեսագետներ ինչպես Մոսկվայում, այնպես էլ տեղերում, ելակետային կատեգորիա են համարում սպառողական արժեքը, աշխատանքի արդյունքը, հասարակական արդյունքը և այլն:*

*Հոդվածի նեղ շրջանակները թույլ չեն տալիս հանգամանորեն կանգ առնելու յուրաքանչյուր տեսակետի դրական կամ բացասական կողմերի վրա: Սակայն ուղղակի հակադարձ տեսակետների առկայությունը մեզ բերում է այն համոզման, որ հարցի գիտական հիմնավորման համար անհրաժեշտ է հրաժարվել մի շարք տեսական դոգմաներից, որոնք տեղ են գտել մեր տնտեսական գիտության մեջ և որոնցից կառչելով որոշ տնտեսագետներ մեթոդոլոգիական սխալ մոտեցում են ցուցաբերում այդ չափազանց կարևոր հարցում:*

*Մեր կարծիքով, սոցիալիզմի քաղաքատնտեսության ուսումնասիրության ելակետային կատեգորիայի հարցի լուծման համար անհրաժեշտ է՝ խորապես իմաստավորել սոցիալիստական արտադրական հարաբերությունների իրայնացումը, առարկայացումը, նրանց ապրանքա-դրամային բնույթը:*

*Հայտնի է, որ քաղաքատնտեսությունն ուսումնասիրում է մարդկանց տնտեսական հարաբերությունները, որոնք առաջանում են արտադրության, բաշխման, փոխանակման ու սպառման պրոցեսում և հանդիսանում են ինչպես արտադրության նյութա-իրային գործոնների, այնպես էլ հասարակության հիմնական արտադրողական ուժի՝ մարդու զարգացման ձևերը:*

*Արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը կախված չեն նրանց զարգացման այն որոշակի պատմական ձևերից, որոնցում դրանք դրսևորվում են:*

*Մարդկանց տնտեսական հարաբերությունների իրայնացումը օբյեկտիվ պրոցես է բոլոր հասարակական ֆորմացիաներում, անկախ նրանց ձևից: Այս տեսակետից սոցիալիստական հարաբերությունները չեն կարող բացառություն կազմել: Այնուամենայնիվ մեր տնտեսագիտության բնագավառում այդ հարցին դոգմատիկական մոտեցում ունենալու հետևանքով, երկար ժամանակ ժխտվում էր սոցիալիստական արտադրական հարաբերությունների իրայնացումը: Այդպիսի սխալ մոտեցումը միանգամայն իրավացիորեն քննադատված է Բորիսովի[1] կողմից:*

*Սոցիալիստական արտադրական հարաբերությունների անջատումը նրանց իրային հիմքից, նշանակում է դրանք դիտել ավելի շուտ որպես բարոյա-էթիկական, քան տնտեսական առումով, որը ոչ միայն անխուսափելիորեն հանգեցնում է սոցիալիզմի քաղաքատնտեսության առարկայի ընդլայնված կամ նեղ իմաստով բնորոշման, այլև լրիվ աղավաղում է այն: Քաղաքատնտեսության առարկայի բնորոշման նման աղավաղման*

[1] *Տե՛ս*, «Вопросы экономики», № 12 ,1964 г.



digitised by A.R.A.R.@

անհրաժեշտ է կոլտնտեսային գյուղատնտեսական արտադրության բնագավառում։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը խարսխվում է կոոպերատիվ սեփականության վրա։ Եվ, եթե տնտհաշվարկային հարաբերություններում ձեռնարկությունների ինքնուրույնության հետագա ընդլայնումը հանդիսանում է օրակարգի հարց, ապա այն առավել ևս անհրաժեշտ է կոլտնտեսությունների համար։ Եվ չնայած նրան, որ մոտ 8 տարի է, ինչ տեսականորեն հիմնավորված է կոլտնտեսություններում տնտեսական հաշվարկի արմատավորման անհրաժեշտությունը, սակայն իրականում այդ հարցը մնում է չլուծված։ Կոլտնտեսային արտադրության բնագավառում պետք է ելնել այն սկզբունքից, որ «այն, ինչ ձեռնտու է կոլտնտեսությանը՝ ձեռնտու է նաև պետությանը, հասարակությանը»։ Այդ սկզբունքի կենսագործման ասպարեզում չափազանց մեծ դեր ունեն արժեքային կատեգորիաները։ Կոլտնտեսությունների շահերի ճիշտ զուգակցումը համապետական շահերի հետ հնարավոր է ապահովել միայն և միայն ապրանքադրամային ձևերի միջոցով։ Համագործակցության և օգնության այլ ձևերը որքան էլ լավը լինեն, չեն կարող առողջ հիմք ստեղծել բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդման համար։

Ապրանքա-դրամային հարաբերությունների պլանաչափ, բայց ազատ օգտագործումը չի կարող մեր երկրում վերածնել կապիտալիզմը, քանի որ ապրանքա-դրամային հարաբերությունները չեն որոշում սոցիալիստական կարգերի բնույթը, այլ այն որոշվում է արտադրական միջոցների նկատմամբ հասարակական սոցիալիստական սեփականությամբ։

Այժմ էլ ավելի մեծ ուժով է հանդես գալիս Լենինի հանճարը, որը քսանական թվականների տնտեսական և քաղաքական բարդ իրադրության պայմաններում առաջադրեց ՆԷՊ-ի քաղաքականությունը։ Չնայած սոցիալիստական ռևոլյուցիայի գլխավոր տնտեսական հարցը հանդիսանում էր արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացումը և հասարակական սեփականության ստեղծումը, այնուամենայնիվ սոցիալիզմի կառուցման բախտը տվյալ պայմաններում կախված էր ապրանքադրամային հարաբերությունների զարգացումից։

Եթե կարելի է արտադրության անարխիայի և մրցակցային պայքարի պայմաններում շահույթի, գնի և այլ արժեքային կատեգորիաների միջոցով կարգավորել արտադրանքի քանակի և որակի հարցերը, ապա ինչո՞ւ այն չի կարելի պլանաչափ կազմակերպված հասարակարգում։ Չարիքը գալիս է ոչ թե արժեքային կատեգորիաներից, այլ նրանց օգտագործման անհաջող ձևերից։

Սոցիալիստական հասարակական արտադրության ապրանքային բնույթը բնականաբար ենթադրում է նրա հետազոտությունն սկսել ապրանքի վերլուծությունից, որպես ամենապարզ բջջի, որի շարժման մեջ կարող է, և պետք է բացահայտվեն սոցիալիստական արտադրական հարաբերությունների զարգացման օրինաչափությունները։ Վերջիններս օբյեկտիվորեն ենթադրում են ո՛չ միայն արդյունքի ապրանքային ձևը, այլև բնորոշում են ապրանքային ձևի բովանդակությունը։ Արդյունքի ապրանքային բովանդակությունն արտահայտող օրենքները միաժամանակ հնարավորություն են տալիս բացահայտելու արտադրության միջոցների հանրային սեփականության հարաբերությունների բնույթն ու ձևերը։ Արդյունքի ապրանքային բովանդակությունը ենթադրում է երկու հատկությունների առկայություն՝ սպառողական արժեքի և արժեքի։ Ապրանքի և աշխատանքի երկակի բնույթը, որն առարկայացած է նրա մեջ, նշանակում է սոցիալիստական հասարակական արտադրության երկակիությունը, որպես արտադրության պրոցեսի և արժեքի ստեղծման ու մեծացման պրոցեսի միասնություն՝ արտադրության միջոցների նկատմամբ հասարակական սեփականության բազայի վրա։

Աշխատանքի և սոցիալիստական արտադրության արդյունքի երկակի բնույթի հասկացողությունից է կախված սոցիալիստական քաղաքատնտեսության ըմբռնումը։

Սոցիալիստականորեն արտադրված ապրանքի սպառողական արժեքը հանդես է գալիս, առաջին՝ որպես նրա ֆիզիկական և քիմիական հատկությունների ամբողջություն, որը բնական գիտությունների ուսումնասիրության առարկա է և չի հանդիսանում քաղաքատնտեսության ուսումնասիրության առարկան։

Երկրորդ սպառողական արժեքը, որպես կոնկրետ աշխատանքի արդյունք, հանդես է գալիս աշխատանքի հասարակական բաժանման հետևանքով։ Ուստի պետք է համաձայնել Ս. Հարությունյանի հետ [1], որը միանգամայն ճիշտ է բացատրում սպառողական արժեքի հասարակական հատկությունը, հետևաբար նաև տնտեսական հարաբերությունների արտահայտությունը աշխատանքի արդյունքի միջոցով։ Կոնկրետ աշխատանքի արտադրողականության աճը միաժամանակ բարձրացնում է հասարակական աշխատանքի արտադրողականությունը, այսինքն՝

[1] Ս. Հարությունյան, Որն է սոցիալիստական քաղաքատնտեսության առարկան։ «Լենինյան ուղիով», № 2, 1965 թ.։



իջեցնում հանրորեն անհրաժեշտ կոնկրետ աշխատանքի ծախսումները, ավելացնում մեկ միավոր ժամանակում արտադրվող սպառողական արժեքների քանակը։

Բայց կարելի՞ է արդյոք աշխատանքի արդյունքը, սպառողական արժեքը համարել սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ելակետային բջիջ։ Իհարկե, ոչ, որովհետև այդպիսի դիմազրկված աշխատանքի արդյունք մեր տնտեսական կյանքում չկա։ Աշխատանքի արդյունքը սոցիալիստական հասարակարգում հանդես է գալիս կոնկրետ ձևով, որպես սոցիալիստական հանրային աշխատանքի արդյունք՝ նրան հատուկ բոլոր առանձնահատկություններով։ Առաջին, որպես սոցիալիստական ձեռնարկության անմիջականորեն հասարակական աշխատանքի արդյունք, անկախ աշխատանքի հանրայնացման հասունության աստիճանից։ Երկրորդ, աշխատանքի արդյունքը հանդես է գալիս որպես սոցիալիստական աշխատանքի բաժանման հետևանք, իրեն հատուկ սոցիալ-տնտեսական տարբերություններով՝ մտավոր և ֆիզիկական, գյուղատնտեսական և ինդուստրիալ, ծանր և թեթև, որակյալ և ոչ որակյալ աշխատանքների միջև և այլն։ Դեռ ավելին, սպառողական արժեքը սոցիալիստական տնտեսության մեջ որոշ չափով հանդես է գալիս որպես միջազգային սոցիալիստական և համաշխարհային աշխատանքի բաժանման արդյունք։ Հետևաբար, սպառողական արժեքը, դա ոչ թե ինչ-որ դիմազրկված աշխատանքի պրոցեսի արդյունք է, այլ որոշակի, պատմականորեն պայմանավորված սոցիալիստական աշխատանքի պրոցեսի, հանդես է գալիս ոչ թե որպես սովորական արդյունք, այլ ապրանք, այստեղից բխող բոլոր առանձնահատկություններով։ Բանն այն է, որ սպառողական արժեքը, պարունակելով հասարակական որոշակի ինքնուրույն հատկություն, այդ (այսինքն՝ հասարակական հատկությունը) երևան է գալիս հիմնականում միայն և միայն արժեքի և արժեքային կատեգորիաների միջոցով։ Բոլոր այն փորձերը, որոնք ձգտում են աշխատանքի արդյունքի հասարակական հատկությունները գիտել արժեքային կատեգորիաներից դուրս, հեռացնում են տեսությունը իրականությունից, իսկ պրակտիկայում հասցնում են նյութական մեծ վնասների։ Նյութական բարիքների արտադրության և սպառման միջև կատարելագործված արժեքային կապերի բացակայությունը որոշ իմաստով արգելք է հանդիսանում սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի իրականացման համար։ Ուստի ապրանքա-դրամային կատեգորիաները թույլ են տալիս հայտնաբերել սոցիալիստական հասարակության աշխատանքի արդյունքի հանրային հատկությունները, բացահայտել տնտեսական պրոցեսների իսկական էությունը և զարգացման ուղղությունը։

Աշխատանքի արդյունքի ապրանքային ձևի ամբողջ էությունը կայանում է նրանում, որ ապրանքի մեջ մարմնացած աշխատանքի հանրային բնույթը արտահայտվում է սպեցիֆիկ ձևով—արժեքի, որի սուբստանցը հանդիսանում է աբստրակտ աշխատանքը։

Աբստրակտ աշխատանքը մարդկային աշխատանք է առհասարակ, ֆիզիկական, մտավոր և այլ ուժերի ծախսում՝ ֆիզիոլոգիական իմաստով։ Բայց մարդկային ամեն մի աշխատանքային ծախսում դեռևս աբստրակտ աշխատանք չէ։ Նախնադարյան համայնական կարգերում նույնպես գոյություն է ունեցել մարդկային աշխատանք առհասարակ, բայց այն չի հանդիսացել աբստրակտ աշխատանք։ Միայն ապրանքային արտադրության պայմաններում է առհասարակ մարդկային աշխատանքը դառնում աբստրակտ, ապրանքի արժեք ստեղծող աշխատանք, աշխատանք աշխատանքի հասարակական բաժանման սիստեմի մեջ, արտադրողների տնտեսապես առանձնացման պայմաններում, որոնք արդյունքներ են ստեղծում ոչ թե սեփական պահանջմունքների բավարարման, այլ հասարակության համար։ Հետևաբար, չնայած նրան, որ արտադրության միջոցների հանրային սեփականությունը պայմանավորում է կոնկրետ աշխատանքի անմիջականորեն հասարակական բնույթը, այնուամենայնիվ նրա հասունության և հանրայնացման ցածր մակարդակը և սոցիալիստական աշխատանքի մեջ եղած սոցիալ-տնտեսական տարբերությունները անհրաժեշտ են դարձնում կոնկրետ աշխատանքների վերածումը աբստրակտի։ Ուստի, կոնկրետ աշխատանքի և սպառողական արժեքի հասարակական բնույթը հանդես է գալիս սպեցիֆիկ ձևով՝ աբստրակտ աշխատանքի և արժեքի միջոցով։ Այդ պատճառով ապրանքի արժեքի մեծությունը որոշվում է ոչ թե հանրորեն անհրաժեշտ աշխատանքի քանակով, այլ հասարակականորեն անհրաժեշտ աբստրակտ աշխատանքով։ Դրանում է երևան գալիս կոնկրետ և աբստրակտ աշխատանքի, սպառողական արժեքի և արժեքի միասնությունը և, միաժամանակ, նրանց որակական տարբերությունը։

Ապրանքի արժեքը, որպես աբստրակտ աշխատանքի խտիլ, հնարավոր չէ տեսնել նրա մարմնական ձևի մեջ։ Մարքսը այդ մասին գրել է. «Ապրանքների արժեքը նրանով է տարբերվում այրի Կվիկլից, որ հայտնի չէ, թե որ կողմից մոտենալ նրան» [1]։ Դրանով Մարքսը կրկին անգամ ընդգծել է, որ արժեքի արտա-

[1] Կ. Մարքս, «Կապիտալ», հ. 1, էջ 54։



digitised by A.R.A.R.@

հայտման միակ հնարավոր միջոցը փոխանակային արժեքն է։ Հետևաբար, արժեքը հասարակական հարաբերություն է մարդկանց միջև այն իրերի կապակցությամբ, որոնք արտադրվում են փոխանակության, առք ու վաճառքի համար։ Արժեքը իր արտահայտությունն է գտնում փողի մեջ։ Նշանակում է, որ միայն Ա—Փ ակտի միջոցով կարելի է հայտնաբերել ինչպես աշխատանքի, այնպես էլ արդյունքի անմիջականորեն հասարակական բնույթը։

Փողի և արժեքային կատեգորիաների դերի թերագնահատումը այլ պատճառների հետ մեկտեղ բացատրվում է նաև նրանով, որ մեր երկրում արտադրության միջոցների և սպառման առարկաների որոշ տեսակների պակասության պարագայում, սոցիալիստական ձեռնարկությունները և բնակչությունը բավարարվում էին նրանով, ինչ տրվում էր նրանց։ Երկրի տնտեսական հզորության և նյութական բարիքների աճի շնորհիվ դրությունը փոխվեց։ Սոցիալիստական ձեռնարկությունների կողմից բարձրացավ արտադրամիջոցների որակի, իսկ բնակչության կողմից սպառման առարկաների որակի նկատմամբ առաջադրվող պահանջկոտությունը։ Բընակչությունը, որպես գնորդ, հիմնականում կարողացավ խոչընդոտել ոչ պիտանի ապրանքների հոսքը դեպի առևտրի ցանց։ Ավելի դժվար է ձեռնարկությունների համար, որոնց վրա որոշակիորեն ճնշում էր գործ դնում հարկադիր կոոպերացումը։ Եթե նրանք տնտեսական տեսակետից լինեին ավելի ինքնուրույն, դրությունն այլ կերպ կդասավորվեր։ Ահա թե ինչպես մեր երկրի զարգացման այդ հատուկ պայմանները պատբանք առաջացրին տնտեսական հարաբերությունների նատուրալիզացիայի և ապրանքա-դրամային կատեգորիաների սպասարկումից հրաժարվելու մասին, նրանց դերը հանգեցնելով սոսկ հասարակ հաշվարկային գործիքի։

Դեռ ավելին, այդ պատրանքները տեսական դրույթների ուժ ստացան Ի. Ստալինի հայտնի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության մեջ, որտեղ հեղինակն ուղղակի դնում էր մթերափոխանակության անցնելու հարցը։

Աշխատանքի արդյունքը, սպառողական արժեքը սոցիալիզմի քաղաքատնտեսության. սոցիալիստական էկոնոմիկայի ելակետային բջիջ համարող հեղինակները հազիվ թե իրենց հաշվեն այդ դրույթի կողմնակիցների ցուցակում։ Բայց նրանք ցանկանում են այդ, թե ոչ, նրանց ընդունած ուղին տանում է դեպի այն։ Ցանկանալով ստեղծել ապագայի քաղաքատնտեսությունը, նրանք չեն տեսնում ներկան։

Սոցիալիզմը կոմունիստական հասարակության ստորին փուլն է։ Բարձրագույն փուլին անցումը ընդգրկում է մի ամբողջ պատմական դարաշրջան։ Ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանը ենթադրում է ստեղծել բարձրագույն փուլի ընդհանուր տնտեսական նախադրյալները միայն։ Դրանից երևում է, որ 20-րդ դարի երկրորդ կեսում նույնպես կպահպանվեն ապրանքա-դրամային հարաբերությունները, իսկ բնակչության եկամուտների հիմնական աղբյուրը կմնա դրամական աշխատավարձը։ Ինչպիսին կլինի հասարակական տնտեսական պրոցեսի զարգացման հետագա ընթացքը, ցույց կտա ժամանակը։

«Կոմունիզմը,— գրել է Մարքսը,— մեզ համար մի վիճակ չէ, որ պետք է հաստատվի, ոչ թե իդեալ է, որի հետ պետք է համակերպվի իրականությունը։ Մենք կոմունիզմ ենք անվանում այն շարժումը, որը ոչնչացնում է այժմյան վիճակը» [1]։

Որպես սոցիալիստական էկոնոմիկայի ելակետային բջիջ, անհրաժեշտ է հետազոտել ապրանքի շարժումը, հայտնաբերել նրա զարգացման օրինաչափությունները պատմական նոր պայմաններում, հանրային սեփականության գերիշխանության և հասարակական արտադրության պլանաչափ կազմակերպության պայմաններում։ Ցույց տալ նրա ազդեցության ձևերն ու մեթոդները և այդ կապակցությամբ նրանից վերցնել այն ամենաարդյունավետ կողմերը, որոնք կնըպաստեն կոմունիզմի արագ կառուցմանը։

Բ. ՕՀԱՆՅԱՆ

---

[1] К. Маркс и Ф. Энгельс, Сочинения, т. 3, стр. 34.

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԳԻՏԱԿԱՆ ԼՈՒՐՋ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

Մ. ՆԵՐՍԻՍՅԱՆ

Հայկական ՍՍՌ ԳԱ վիցե պրեզիդենտ




Արևմտահայերի 1914—1916 թթ. մասսայական կոտորածների մասին հրատարակվել են ոչ քիչ հոդվածներ, գրքեր, հուշերի ու փաստաթղթերի ժողովածուներ. հրատարակվել են ինչպես հայերեն, այնպես էլ այլ լեզուներով։ Սակայն այդ գրականության մի խոշոր մասը լուսաբանում է հայ ժողովրդի մեծ ողբերգության պատմության միայն առանձին էջերը։ Պատմական գիտությունների թեկնածու Ջ. Կիրակոսյանի վերջերս լույս տեսած գիրքը * այն սակավաթիվ աշխատություններից մեկն է, որ ունի նյութը ընդհանրացնող և հարցը բազմակողմանիորեն լուսաբանող գիտական ուսումնասիրության բնույթ։

Մեծ եղեռնին նվիրված ներկա աշխատության մեջ, նախ և առաջ, խոսվում է արևմտահայության ծանր վիճակի մասին առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին։ Փաստական հարուստ նյութի հիման վրա գրքի հեղինակը ցույց է տալիս, որ երիտթուրքերի 1908 թ. հեղափոխությունը ոչ մի էական փոփոխություն չմտցրեց երկրի կյանքում, չթեթևացրեց Օսմանական կայսրության ոչ թուրք ժողովուրդների խիստ ծանր վիճակը։ Եվրոպական պետությունների տնտեսական և քաղաքական դիրքերը Թուրքիայում 1908 թ. հետո էլ ոչ միայն չթուլացան, այլև ավելի ուժեղացան և ամրացան։ Չլուծվեցին օրակարգի հարց դարձած ո՛չ սոցիալական, և ո՛չ էլ ազգային հարցերը։ Ավելին։ Ազգային փոքրամասնությունների վիճակը ավելի վատացավ, քանի որ երիտթուրքերի ձըգտումը «թուրքացնել օսմանյան կայսրությունում բնակվող սլավոններին, հայերին, հրեաներին և այլն, ընդունեց ավելի կոպիտ և համառ բնույթ, քան Աբդուլ Համիդի ժամանակ» («Պրավդա», 1912 թ., № 76)։

Արտահայտելով թուրքական ազգայնամոլ, շովինիստական բուրժուազիայի և «լիբերալ» կալվածատերերի շահերը երիտթուրքերի կուսակցությունը («Իթթիհադ վե թերաքքը» — «Միություն և առաջադիմություն») որդեգրելով պանթուրքիզմի-պանիսլամիզմի քաղաքականությունն ու գաղափարախոսությունը, վճռական պայքար էր մղում կայսրության ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման դեմ։ «Աբդուլ Համիդի թագավորության վերջում,— ասված է աշխատության մեջ,— բանտերում նստած 60 հազար և արտասահման արտաքսված 80 հազար մարդիկ 1908 թվականի հեղափոխությունից հետո միայն կարճ ժամանակ Թուրքիայում ապրելու իրավունք ունեցան։ Այնուհետև սկսվեց տեռորի նոր շրջան։ Համիդի 50-հազարանոց գաղտնի ոստիկանների ու լըրտեսների ոհմակը, որը գործում էր Կոստանդնուպոլսում, Թալեաթի և Ջեմալի գլխավորությամբ շատ ավելի կատարելագործեց քաղաքական պրովոկացիաների և հալածանքների իր

---

* Ջ. Ս. Կիրակոսյան. Առաջին համաշխարհային պատերազմը և արևմտահայությունը (1914—1916 թթ.), «Հայաստան» Հրատարակչություն, Երևան, 1965, 512 էջ։



digitised by A.R.A.R.@

փործը։ Կախաղանը նորից դարձավ քաղաքական հակառակորդների հետ հարաբերություն ունենալու միակ միջոցը։ Չկար կյանքի, գույքի, ունեցվածքի, պատվի անձեռնմխելիություն ու ապահովություն։ Կառավարությունը և նրա տեղական օրգանները ոչ միայն չէին պայքարում բացահայտ անօրինականությունների և անարդարությունների դեմ, այլև հաճախ իրենք էին հրահրում այդպիսի երևույթներ» (էջ 9—10)։

Գրքի հեղինակն այնուհետև կանգ է առնում հայկական հարցի 1912—1914 թթ. ժամանակաշրջանի պատմության վրա, բացահայտում է Արևմտյան Հայաստանի համար այդ տարիներին հրապարակ բերված ռեֆորմների նախագծերի իմաստն ու նշանակությունը, լուսաբանում է Գերմանիայի ու Ռուսաստանի, Անգլիայի ու Ֆրանսիայի դիրքորոշումը Թուրքիայի ու հայերի հանդեպ, ցույց է տալիս իմպերիալիստական այդ պետությունների նպատակները և այն, թե ինչպես փոքր «ժողովուրդների իրավունքների մասին փարիսեցիաբար խոսող «մեծ» պետությունները հայկական հարցի շուրջը բարձրացված աղմուկը օգտագործում էին լոկ իրենց զավթողական ծրագրերը իրագործելու համար։ Միաժամանակ նշված է պատմական այն իրողությունը, որ Թուրքիան, մասնակցելով առաջին համաշխարհային պատերազմին, հետապնդում էր իր սեփական էքսպանսիոնիստական, նվաճողական ծրագրերը։ Թուրքիան ճիշտ է կիսագաղութային երկիր էր, բայց այդ չէր խանգարում, որպեսզի նա վարի նվաճողական, իմպերիալիստական քաղաքականություն հարևան երկրների և մասնավորապես Կովկասի նկատմամբ։ Մտնելով պատերազմի մեջ շովինիստ երիտթուրքերը, որ հանդես էին գալիս «ազգային իդեալի» նշանաբանով, ձգտում էին գրավել Կովկասը, Իրանը, Աֆղանստանը և անգամ Մերձվոլգյան շրջանները ու Միջին Ասիան։ Խոսելով առաջին համաշխարհային պատերազմի կովկասյան ռազմաճակատի առաջին ռազմական գործողությունների մասին, հեղինակը ճիշտ կերպով նկատում է, որ արդեն 1914 թ. վերջերին թուրքական կառավարությունը սկսեց հայերի ջարդը, հայկական գյուղերի ու քաղաքների թալանն ու ավերը։

Ինչպես և պետք էր սպասել, ընկ. Կիրակոսյանի աշխատության մեծ մասը նվիրված է արևմտահայության 1914—1916 թթ. եղեռնին։ Այստեղ հարուստ փաստերով ցույց է տրված այն մեծ ոճիրը, այն անօրինակ սև գործը, որ կազմակերպեցին թուրքական բռնակալները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Իրենց հրեշավոր ծրագրերը երիտթուրքերը իրագործեցին խորամանկորեն, հետևողականորեն ու անխնա կերպով։ Նրանք սկզբում զորակոչի պատրվակով բանակ կանչեցին ու գաղտագողի կոտորեցին մարտունակ հայ բնակչության մի զգալի մասը, հետո ձերբակալեցին ու ոչնչացրին մտավորականությանը և ապա անցան կանանց, երեխաների և ծերերի բացարձակ ու մասսայական ջարդերին։ Անպաշտպան բնակչության մի մասը սրի քաշվեց հայրենի գյուղերում ու քաղաքներում, մյուս մասը, որ բռնի կերպով տեղահանության ենթարկվեց, կոտորվեց ճանապարհներին։ Արևմտահայերի այն փոքր մասը, որ աքսորվեց Միջագետքի կիզիչ անապատները, ոչնչացավ մասսայական սովի ու հիվանդությունների հետևանքով։ Սուլթանական կայսրությունը այդպիսով բնաջնջեց մեկ և կես միլիոն մարդ և ծխացող անապատ դարձրեց մի ամբողջ երկիր՝ Արևմտյան Հայաստանը։

Գրքի վերջին մասում ցույց է տրված «մեծ» պետությունների դիրքը բնաջնջման վտանգին ենթարկված արևմտահայության նկատմամբ։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Թուրքիայի «դաշնակից» կայսերական Գերմանիան, ելնելով իր իմպերիալիստական նպատակներից Մերձավոր Արևելքում, ամեն կերպ օգնում էր սուլթանական Թուրքիային հայ բնակչության տարագրումն ու կոտորածը կազմակերպելու գործում։ Փարիսեցիական դիրք բռնեցին արևմտաեվրոպական պետությունները և Ամերիկայի միացյալ նահանգները։ Հայերի «հովանավորների» դերում հաճախ հանդես եկող այդ պետությունները ոչ մի ռեալ միջոցի չդիմեցին սանձահարելու համար ջարդարարներին։

Հայ ժողովրդի դահիճների դեմ հանդես եկավ ժամանակի առաջադեմ հասարակայնությունը։ Թուրքական կառավարության դեմ իրենց բողոքի ձայնը բարձրացրեցին այնպիսի նշանավոր դեմքեր, ինչպիսիք էին Վալերի Բրյուսովը, Յուրի Վեսելովսկին, Անատոլ Ֆրանսը, Ֆրիտյոֆ Նանսենը, Կարլ Լիբկնեխտը, Յոզեֆ Մարկվարտը և շատ ուրիշներ։ Բայց այս ազնիվ ու հումանիստ մարդկանց ձայնը օտար էր գազանացած մարդասպանների համար։ Հայ ժողովուրդը փրկվեց միայն Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի շնորհիվ, նրա դարավոր տանջանքները վերջ գտան 1920 թվականին, երբ Հայաստանում հաստատվեց Սովետական իշխանություն։

Ընկ. Կիրակոսյանի աշխատությունը ունի մի շարք կարևոր արժանիքներ։ Այսպես։ Գրքում հիմնավորված է այն ճիշտ միտքը, թե հայերի մասսայական բնաջնջման պլանը երիտթուրքերը մշակել ու ընդունել էին 1915 թ. շատ առաջ։ Փաստերը ցույց են տալիս, որ երիտթուրքերը դեռևս 1912—1913 թթ., իրագործում էին Օսմանյան կայսրության հայ բնակչության բնաջնջման քաղաքականությունը։ Եվ հասկանալի է, որ թուրքական կառավարության պաշտոնական այն վերսիան, թե արևմտահայերի «տեղահանության» (այսինքն կոտորածների) ծրագիրը ընդունվել է միայն 1915 թ. ռազմական նկատառումների կապակցությամբ, բացարձակ կեղծիք է։ Հենց այս կեղծիքն է իշխում թուրքական ռեակցիոն պատմագիտության մեջ։

Հայերի բնաջնջման քաղաքականությունը կապված էր երիտթուրքերի նվաճողական պլանների հետ։ Թուրք ագրեսորները գտնում էին, որ հայ ժողովուրդը լուրջ խոչընդոտ է հանդիսանում իրենց պանթուրքական նպատակների իրագործման ճանապարհին։ Երիտթուրքերը մասնավորապես մտածում էին, թե ոչնչացնելով հայ ժողովրդը, նրանք կկարողանան համեմատաբար ավելի դյուրությամբ տիրել Կովկասին։ Եվ ահա այդ դիտավորություններից ելնելով էլ նրանք սկսեցին իրենց անօրինակ ոճիրը։

Անտարակույս ճիշտ է հեղինակը, երբ թուրքական կառավարության արյունոտ քաղաքականությունը հայերի նկատմամբ համարում է ցեղասպանություն, գենոցիդի քաղաքականություն։ Երիտթուրքերի ահավոր գազանությունները շատ բանով նման են երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ հիտլերյան ֆաշիստների կողմից կատարած ոճրագործություններին։ Թուրքական դահիճները որոշ իմաստով ֆաշիստական մարդասպանների նախորդներն ու նախատիպերն էին։ Պատահական չէ, օրինակ, որ Հիտլերը 1939 թ. օգոստոսին, ֆաշիստական հրոսակների՝ Լեհաստանի վրա հարձակվելու նախօրյակին, Օբերզալցբուրգում հրավիրված մի խորհրդակցության ժամանակ, հիշեցնում էր իր գեներալներին հայերի կոտորածների մասին, որպեսզի ոգևորի և ավելի համարձակ դարձնի նրանց. հարկավոր չէ ուշադրություն դարձնել հասարակական կարծիքի վրա, պետք է անխնա սպանել տղամարդկանց, կանանց ու երեխաներին, պետք է ոչնչացնել ողջ լեհական ռասան, բարբառում էր Հիտլերը։ «Ո՞վ է այսօր հիշում հայերի կոտորածի մասին»։

Գրքի արժանիքներից է նաև այն, որ այնտեղ լուսաբանված է արևմտահայության 1915 թվականի ինքնապաշտպանական կռիվների պատմությունը։ 1915—1916 թթ. հայկական ողբերգությանը նվիրված աշխատություններում, սովորաբար, չի խոսվում, կամ համարյա չի խոսվում մի շարք քաղաքների ու շրջանների հայ ազգաբնակչության վարած հերոսական դիմադրական-ազատագրական կռիվների մասին։ Նկատենք, որ այս հարցը բավական թույլ կերպով է մշակված մեր պատմական գրականության մեջ։ Ի տարբերություն այլ հեղինակների, Կիրակոսյանը ցույց է տալիս, որ չնայած չափազանց ծանր պայմաններին և ուժերի անհավասարությանը, հայերը մի շարք դեպքերում ոտքի ելան թուրքական կանոնավոր զորքի ու հրոսակախմբերի դեմ իրենց ֆիզիկական գոյությունը պահպանելու համար։ Գրքում պատմվում է, մասնավորապես, Վանի, Շապինգարահիսարի, Ուրֆայի ազգաբնակչության ինքնապաշտպանության, ինչպես նաև Մուսադաղի գյուղացիների հերոսական մարտերի մասին։

Հազիվ թե կասկած հարուցի այն, որ, եթե ժողովրդի ինքնապաշտպանությունը կրեր ընդհանուր և ավելի կազմակերպված բնույթ, ապա արևմտահայության զոհերի թիվը կլիներ ավելի պակաս։ Բայց, ցավոք, հայ ազգաբնակչությունը գտնվում էր անբարենպաստ և ծանր պայմաններում. չկար զենք, թույլ էր կապը առանձին քաղաքների ու գավառների միջև, մարտունակ երիտասարդության զգալի մասը բանակ էր կանչված և ոչնչացված դեռևս պատերազմի սկզբին։ Մյուս կողմից, ինչպես ճիշտ կերպով նշում է հեղինակը, հայկական ռեակցիոն շրջանները քարոզներ էին կարդում այն մասին, որ պետք է ենթարկվել և չդիմադրել սուլթանական կառավարությանը։ Այդ ստրկամիտ քարոզները զգալի չափով ապակողմնորոշեցին արևմտահայերին և մեծ վնաս հասցրին նրանց։

Իրավացի է հեղինակը, երբ խոսելով դեպի Անդրկովկաս կատարած թուրքական 1918 թվի արշավանքի մասին, նկատում է, որ այդ հափշտակողական, թալանչիական արշավանքի ընթացքում երիտթուրքերը ջանում էին իրագործել գենոցիդի իրենց քաղաքականությունը նաև արևելահայության նկատմամբ։ Սակայն, շնորհիվ ժողովրդի հերոսական պայքարին այդ նրանց չհաջողվեց, չնայած որ 1918 թ. արևելահայերը նույնպես մեծ կորուստներ ունեցան։

Կիրակոսյանի աշխատության մեջ, ինչպես տեսնում ենք, ճիշտ լուսաբանություն են ստացել բազմաթիվ հարցեր։ Գրքում, իհարկե, կան նաև առարկություններ հարուցող մի շարք մտքեր ու հակասական պնդումներ, բայց դրանք վերաբերում են երկրորդական և մասնակի հարցերի։ Նկատենք, որ այդ հարցերից մի քանիսը դեռ կարիք ունեն հետագա մանրամասն ու բազմակողմանի ուսումնասիրության։

Արևմտահայերի մեծ եղեռնին նվիրված ներկա աշխատությունը գրված է փաստական հարուստ նյութի հիման վրա։ Հեղինակը օգտագործել է արխիվային ֆոնդեր, մամուլ և պատմական գրականություն՝ հայերեն, ռուսերեն և եվրոպական լեզուներով։ Ընկ. Կիրակոսյանի գիրքը գիտական լուրջ ուսումնասիրություն է և կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։

---



digitised by A.R.A.R.@

# ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՀԱՆՋՈՎ

Աշխատանքային օրվա տևողության սիստեմատիկ կրճատումը սոցիալիստական հասարակության զարգացման օբյեկտիվ տնտեսական օրինաչափությունն է։

Աշխատանքային ժամանակի կրճատման հետ մեկտեղ, բնականաբար, աճում է աշխատավորների արտաաշխատանքային ժամանակը, որի ռացիոնալ օգտագործումը սոցիալիստական արտադրության զարգացման օբյեկտիվ պահանջն է։ «Նյութական արտադրության համար հատկացված ժամանակի կրճատման հետ մեկտեղ,— նշված է ՍՄԿՊ ծրագրում,— ընդլայնվում են արտադրության, գիտության, տեխնիկայի, գրականության և արվեստի բնագավառում ընդունակությունները, ձիրքը, տաղանդները զարգացնելու հնարավորությունները։ Մարդկանց ազատ ժամանակը գնալով ավելի մեծ չափով կնվիրվի հասարակական գործունեությանը, կուլտուրական շփմանը, մտավոր ու ֆիզիկական զարգացմանը, գիտատեխնիկական և գեղարվեստական ստեղծագործությանը, ֆիզկուլտուրան և սպորտը հաստատուն կերպով կմտնեն մարդկանց առօրյա կենցաղի մեջ» (էջ 145—146)։

Վերոհիշյալից պարզ ու որոշակի երևում է, թե պարտիան որքան մեծ նշանակություն է տալիս արտաաշխատանքային ժամանակի և, ամենից առաջ, ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման հարցերին։ Այստեղից էլ տեսական ու պրակտիկ այն հսկայական նշանակությունը, որ ձեռք է բերում աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի և նրա ռացիոնալ օգտագործման պրոբլեմը։ Մեր երկրում սոցիոլոգիական այդ կարևոր պրոբլեմով սկսեցին զբաղվել արդեն 1922—1925 թվականներից և այդ գործում մեծ ավանդ ներդրեց հատկապես սովետական բազմավաստակ գիտնական, ակադեմիկոս Ս. Գ. Ստրումիլինը։ Վերջինիս՝ 1935—1936 թվականներին այդ ուղղությամբ կատարած փորձերից հետո մոտ 25 տարի դադարեցվեցին վերոհիշյալ պրոբլեմի ուսումնասիրությունները, որոնք վերսկսեցին միայն 1958 թվականից։

Ներկայումս աշխատավորների ժամանակի բյուջեն և առանձնապես արտաաշխատանքային ժամանակի օգտագործման հարցերն ուսումնասիրում են Սովետական Միության բազմաթիվ գիտա-հետազոտական հաստատություններ ու գիտնականներ, այդ թվում և Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտը։ Հատկապես ՍՄԿՊ XXII համագումարից հետո այդ պրոբլեմի շուրջ երկրում լույս ընծայվեցին մի շարք արժեքավոր ուսումնասիրություններ, որոնց մեջ ուշադրության արժանի են նաև Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի ավագ գիտաշխատող Հ. Ս. Պետրոսյանի երկու աշխատությունները 1, որոնք վերջերս լույս ընծայեցին «Экономика» և «Հայաստան» հրատարակչությունները, ընդ որում առաջինն ընդգրկում է հարցերի ավելի լայն շրջանակ, քան երկրորդը։

Հ. Պետրոսյանի աշխատությունների գլխավոր արժանիքն ամենից առաջ այն է, որ դրանք վերոհիշյալ պրոբլեմի ուղղությամբ մեր երկրում վերսկսված ուսումնասիրությունների մեջ առաջին և ամբողջական փորձերից մեկն է։ Հեղինակը տարիների մանրակրկիտ և տքնաջան աշխատանք է կատարել քննարկվող հարցերը բազմակողմանիորեն վերհանելու և գիտականորեն լուծելու համար և այդ նրան հիմնականում հաջողվել է։ Իր ուսումնասիրությունների ընթացքում նա օգտագործել է ո՛չ միայն գիտա-հետազոտական ու պաշտոնական տվյալները, այլև անձամբ մասնակցել Սովետական Միության մի շարք քաղաքներում (Կրասնոյարսկ, Նովոկուզնեցկ, Նորիլսկ, Երևան, Նովորոսիյսկ) կատարվող հետազոտությունների մեթոդական հարցերի մշակմանն ու դրանց անմիջական կենսագործմանը։

Իր աշխատություններում հեղինակն ամենից առաջ բացահայտում է արտաաշխատանքային ժամանակ հասկացության էությունը, ցույց տալիս նրա բաղկացուցիչ մասերը։ Հակառակ մի շարք հետազոտողների, Հ. Պետրոսյանը միանգամայն ճիշտ է վարվում, երբ արտաաշխատանքային ժամանակի բոլոր ծախսումներն իրենց նպատակային տեսակետից բաժանում է երկու հիմնական խմբի. արտաաշխատանքային ժամանակի այնպիսի ծախսումներ, որոնք ասպարեզ են ստեղծում աշխատուժի պարզ վերարտադրության համար (զբաղված ժամանակ) և արտաաշխատանքային ժամանակի ծախսումներ, որոնք ասպարեզ են բացում աշխատուժի ընդլայնված վերարտադրության համար (ազատ ժամանակ)։ Այս առնչությամբ նա իրավացի կերպով քննադատում է ինչպես բուրժուական, այնպես էլ սովետական մի շարք մտածողների, որոնք (առաջինները բոլոր դեպքերում գիտակցաբար) նույնացնում են արտաաշխատանքային ժամանակի այդ երկու բաղկացուցիչ մասերը և, ըստ էության, ժամանակի այդ ամբողջ բյուջեն դիտում որպես ազատ ժամանակ։ Հենվելով քննարկվող պրոբլեմի վերաբերյալ Կ. Մարքսի հայտնի դրույթների վրա, հեղինակը պարզորոշ ցույց է տալիս, որ արտաաշխատանքային ամբողջ ժամանակը և ազատ ժամանակը միևնույն հասկացությունները չեն, դրանք միմյանցից տարբերվում են ինչպես իրենց բացարձակ մեծությամբ, այնպես էլ իրենց բովանդակությամբ, ներքին կառուցվածքով ու նշանակությամբ։

Ժամանակակից բուրժուական ռեակցիոն գաղափարախոսների աշխատություններից կատարած բազմաթիվ մեջբերումներով հիմնավոր կերպով ապացուցում է, որ նույնացնելով վերոհիշյալ հասկացությունները, նրանք հետապնդում են մեկ նպատակ՝ աղճատել ազատ ժամանակի հիմնական բովանդակությունը, նենգափոխել ու բովանդակազրկել այն, ստեղծելով այն պատրանքը, թե կապիտալիզմի պայմաններում աշխատավորը տնօրինում է ազատ ժամանակի չափազանց մեծ ֆոնդ։

Արտաաշխատանքային ժամանակի և ազատ ժամանակի ճիշտ սահմանազատումն ունի ինչպես տեսական, այնպես էլ պրակտիկ մեծ նշանակություն։ Իր «չհրապարակված ձեռագրերում» (տե՛ս «Большевик», 1939, № 11—12), «Հավելյալ արժեքի թեորիաներում», «Կապիտալում» և մի շարք այլ աշխատություններում Կ. Մարքսը բազմիցս ընդգծում էր, որ ազատ ժամանակը դատարկապորտության, պարապ ժամանցի ու անգործության ժամանակ չէ։ Արտաաշխատանքային ժամանակի բոլոր բաղկացուցիչ մասերի մեջ այն ամենից հարուստն է իր բովանդակությամբ, որովհետև, ինչպես Մարքսն էր ասում, դա մի ժամանակ է, որը ծախսվում է «ավելի վեհ գործունեության համար»։ Եվ, իրոք, եթե արտաաշխատանքային ժամանակի կազմում կան այնպիսի ծախսումներ, ինչպես, օրինակ, տնային աշխատանքը, աշխատավայրը գնալն ու վերադառնալը և այլն, որոնք առնչություն չունեն անհատի մտավոր ու ֆիզիկական զարգացման, նրա «ավելի վեհ գործունեության» հետ, ապա ազատ ժամանակը հիմնականում օգտագործվում է մարդու մտավոր ու հասարակական ազատ գործունեության համար, որի ընթացքում տեղի է ունենում նրա բազմակողմանի ձիրքերի ու ընդունակությունների հետագա զարգացում։ Այս ամենից հետո պատահական չէ, որ Մարքսն այնպես խստորեն սահմանազատում էր ազատ ժամանակը մնացած արտաաշխատանքային ժամանակից։ Նա շատ լավ գիտեր, որ ամեն մի մարդ ունի այս կամ այն չափով արտաաշխատանքային ժամանակ, սակայն նա միաժամանակ գրում էր, որ «Մարդը, որը չունի ոչ մի րոպե ազատ ժամանակ... ավելի ցածր է, քան փալանավոր կենդանին» (К. Маркс, Ф. Энгельс, соч. т. 13, էջ 140)։

Որոշակիորեն սահմանազատելով ազատ ժամանակն արտաաշխատանքային մնացած ժամանակից, գրախոսվող աշխատությունների հեղինակը հանգում է այն իրավացի եզրակացության, որ առաջինի նշանակությունը չափազանց մեծացել է հատկապես այժմ, երբ գործնականորեն լուծվում են նոր մարդու ձևավորման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման խնդիրները։ «Աշխատավորների արտաաշխատանքային ժամանակը ՍՍՌՄ-ում» գրքում հեղինակը հատուկ բաժնում մանրամասն շարադրում է կոմունիզմի ծավալուն շինարարության ժամանակ արտաաշխատանքային և, ամենից առաջ, ազատ ժամանակի աճող դերն ու նշանակությունը։

Գրախոսվող աշխատություններում, սակայն, Պետրոսյանը չի սահմանափակվում միայն ազատ ժամանակի դերն ու նշանակությունն ընդգծելով։ Նա մեծ տեղ է հատկացնում արտաաշխատանքային ժամանակի, որպես տնտեսական կատեգորիայի վերլուծությանը, սոցիալ-տնտեսական մյուս կատեգորիաների հետ նրա ունեցած կապին ու փոխպայմանավորվածությանը, ժամանակի մնացած մասերի (աշխատանքային ժամանակի) հետ նրա փոխհարաբերությանը, այդ ժամանակահատվածի օգտագործման ռացիոնալացմանը և այլն։

Ընկ. Հ. Պետրոսյանի աշխատությունների էական արժանիքներից մեկն էլ այն է, որ նրանցում փաստական հարուստ նյութի հիման վրա բացահայտված են աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի օգտագործման ընդհանուր օրինաչափությունները սոցիալիզմի օրոք և զուգահեռաբար ցույց են տրված կապիտալիզմի պայմաններում գործող միանգամայն հակադիր տենդենցները։

Մարդ որքան ավելի լիովին ու ռացիոնալ է օգտագործում իր արտաաշխատանքային ժամանակը, այնքան ավելի մեծ են նրա կենսական ու ֆիզիկական ուժերը, գիտելիքներն ու փորձը, հետևաբար և, այնքան ավելի արգասաբեր է նրա աշխատանքը։ Այս տեսանկյունից մոտենալով հարցին, Հ. Պետրոսյանն իր աշխատություններում զգալի տեղ է հատկացնում օբյեկտիվ և սուբյեկտիվ այն գործոնների վերլուծությանը, որոնք էական ներգործություն են ունենում արտաաշխատանքային ժամանակի օգտագործման վրա։ Այդպիսի գործոնների թվին հեղինակը դասում է աշխատանքի պայմանները, աշխատավորի սեռն ու հասակը, նրա ընտանեկան դրությունը, ընտանիքի կազմն ու երեխաների հասակը, անձին ընկնող եկամուտն ու բնակարանային պայմանները, հանրակրթական մակարդակը, զբաղվածության տեսակը, կոմունալ կենցաղային հարմարությունները և այլն։ Բացի այդ, արտա-

---

1 *Г. С. Петросян*, Внерабочее время трудящихся в СССР, «Экономика», *1965 և Հ. Ս.* Պետրոսյան, *Արտաաշխատանքային ժամանակը որպես տնտեսական կատեգորիա, «Հայաստան», 1965։*





digitised by A.R.A.R.@

աշխատանքային ժամանակի օգտագործման վրա ներազդում են նաև այնպիսի գործոններ, ինչպիսիք են՝ ընտանիքում կենցաղային մեքենաների ու սարքավորումների առկայությունը, աշխատավայրի հեռավորությունը, մարդու աշխատանքային ստաժն ու որակավորումը, կոմունալ-կենցաղային, մանկական, առևտրի, կուլտուր-լուսավորական, բժշկական հիմնարկների, հասարակական սննդի ձեռնարկությունների, տրանսպորտի ներքաղաքային տեղաբաշխումը և այլն։

Թվարկված բոլոր գործոնները արտաաշխատանքային ժամանակի օգտագործման վրա ներազդում են ոչ թե մեկուսի, այլ ամբողջությամբ, միմյանց հետ ամենատարբեր զուգորդմամբ։ Ընթերցողը գրախոսվող աշխատություններում հարուստ փաստեր կգտնի վերոհիշյալ գործոնների խաղացած դերի ու նշանակության մասին։ Աշխատություններում տարբեր ժողովուրդների կյանքից վերցրած փաստերի հիման վրա ցույց է տրված, որ արտաաշխատանքային ժամանակի օգտագործումը կախված է ո՛չ միայն վերոհիշյալ գործոններից, այլև ժողովուրդների ազգային-էթնոգրաֆիական տարբերություններից, նրանց կենցաղի առանձնահատկություններից։

Սոցիալիզմի պայմաններում յուրաքանչյուր անհատ կարող է և իրավունք ունի ըստ իր հայեցողության տնօրինելու իր ազատ ժամանակը։ Սակայն այդ չի նշանակում, թե հասարակությունը պասսիվ է և նրա համար միևնույն է, թե ինչպես կօգտագործվի այն։ Ընդհակառակն, ստեղծելով արտաաշխատանքային ժամանակի ռացիոնալ օգտագործման համար համապատասխան նյութական ու կուլտուր-կենցաղային պայմաններ, սովետական հասարակությունը, կոմունիստական պարտիան համապատասխան լծակների օգնությամբ ուղղություն են տալիս այդ ժամանակի օգտագործմանը, որի գլխավոր բովանդակությունը նոր, բազմակողմանի զարգացած մարդու ձևավորումն է։ Այս առումով Հ. Պետրոսյանի աշխատություններն ունեն ոչ միայն տեսական, այլև պրակտիկ նշանակություն։ Դրանցում մեծ տեղ հատկացնելով արտաաշխատանքային ժամանակի օգտագործման հետագա ռացիոնալացմանը, նա հատկապես Երևանի չորս խոշոր ձեռնարկություններում (Հրուշակեղենի-մակարոնի, կարի № 1 ֆաբրիկաների, ավտոդողերի, էլեկտրալամպերի գործարաններ) կատարած ուսումնասիրությունների հիման վրա բացահայտում է այն լուրջ թերությունները, որոնք կան արտաաշխատանքային ժամանակի օգտագործման հարցերում։ Հեղինակը, սակայն, չի բավարարվում միայն թերությունները մատնանշելով, այլև պրակտիկ մի շարք առաջարկություններ է անում դրանք վերացնելու համար, որոնք պետք է գրավեն համապատասխան կազմակերպությունների ուշադրությունը։

Հ. Պետրոսյանը ձեռնարկել է շատ շնորհակալ գործի, հասել որոշակի արդյունքի, դրա վկայությունն են հրապարակի վրա եղած նրա աշխատությունները, և ցանկալի է, որ նա շարունակի ու խորացնի իր հետազոտությունները, որովհետև այժմ, ինչպես երբեք, անհրաժեշտ է սոցիալական այդ կարևոր պրոբլեմի մանրակրկիտ ուսումնասիրությունը։

Այժմ մի քանի դիտողություններ։ Հ. Պետրոսյանի աշխատություններում տեղ են գտել վիճարկելի տեսակետներ։ Այսպես. մենք չենք կարող համաձայնել նրա այն անվերապահ հայտարարության հետ, թե «...հասարակության հարստությունները և հոգևոր ու նյութական բոլոր բարիքներն ստեղծվում են ոչ թե ազատ ժամանակի, այլ աշխատանքային ժամանակի ընթացքում» («Արտաաշխատանքային ժամանակը որպես տնտեսական կատեգորիա», էջ 4)։ Մեր կարծիքով, արդի պայմաններում, երբ արտադրողական ուժերի զարգացումը աշխատանքի բազմաթիվ տեսակներ վեր է ածել իսկական ստեղծագործության, որոշ իմաստով, չի կարելի բացարձակ ձևով սահմանազատել ազատ ժամանակը աշխատանքային ժամանակից։ Մի՞թե կարելի է ժխտել, որ մեր օրերում հոգևոր և նույնիսկ նյութական շատ արժեքներ (գիտական հայտնագործություններ, նորարարություն, գեղարվեստական ինքնագործունեություն և այլն) ստեղծվում են ո՛չ միայն աշխատանքային, այլև ազատ ժամանակիվա ընթացքում։ Լինենք ավելի կոնկրետ. ընկ. Պետրոսյանի վերոհիշյալ աշխատությունները գիտական որոշակի արժեք են ներկայացնում. բայց կարո՞ղ է արդյոք հեղինակը պնդել, թե այդ արժեքները նա ստեղծել է միայն աշխատաժամանակի ընթացքում։ Իհարկե, ոչ։ Այլ կերպ լինել էլ չի կարող, որովհետև ազատ ժամանակը դա այն ժամանակն է, որը Մարքսի խոսքերով ասած՝ «...որպես մեծագույն արտադրողական ուժ հետադարձ ներգործություն է ունենում աշխատանքի արտադրողական ուժի վրա» («Большевик», 1939, № 11—12, էջ 65)։

Ավելին, նույն աշխատության 43-րդ էջում արդեն հեղինակն ըստ էության որոշ իմաստով վերանայում է վերոհիշյալ դրույթը, գրելով, որ մարդիկ ոգեշունչ «աշխատանքով հաճույքով կզբաղվեն նաև իրենց արտաաշխատանքային ժամանակի ընթացքում։ Այդ պատճառով մեզ թվում է, որ արտաաշխատանքային ժամանակի և աշխատանքային ժամանակի միջև եղած սահմանները այլևս չեն ունենա այն նշանակությունը, որ հիմա ունեն»։ Հիմնականում համաձայն լինելով հեղինակի վերջին հարցադրման հետ, գտնում ենք, սակայն, որ դա ոչ թե հեռավոր ապագայի խնդիր է, այլ արդեն սկսված պրոցես։ Նման եզրակացության համար հիմքեր է տալիս կոմունիստական շինարարության մեր այսօրվա պրակտիկան։

Ընկ. Հ. Պետրոսյանի աշխատություններում հանդիպում են ոչ միայն վիճելի, այլև հակասական մտքեր։ «Աշխատավորների արտաաշխատանքային ժամանակը ՍՍՌՄ-ում» աշխատության 49-րդ էջում նա գրում է. «Արտաաշխատանքային ժամանակի օգտագործման ծավալն ու բնույթը հայտնի իմաստով արտացոլում են հասարակության արտադրողական ուժերի զարգացման մակարդակը, ինչպես նաև մարդկանց հոգևոր և ֆիզիկական զարգացման հնարավորությունները։ Այդ նշանակում է, որ ինչպիսին հասարակության անդամների կողմից արտաաշխատանքային ժամանակի օգտագործման բնույթն ու բովանդակությունն են, այնպիսին էլ այդ օգտագործումն ապահովող նյութական պայմաններն ու նախադրյալներն են, որոնք հասարակությունն ստեղծում է տվյալ ժամանակաշրջանում»։

Մեր կարծիքով, հեղինակն այստեղ ընկել է հակասության մեջ. որ արտաաշխատանքային ժամանակի օգտագործման բնույթն արտացոլում է հասարակության արտադրողական ուժերի զարգացման մակարդակը, ճշմարիտ է։ Սակայն երկրորդ դատողությունն երբեք չի բխում առաջինից, որովհետև նյութական պայմաններն ու նախադրյալներն են պայմանավորում արտաաշխատանքային ժամանակի օգտագործման բնույթն ու բովանդակությունը և արտացոլողը երբեք էլ չի կարող իրենով պայմանավորել արտացոլվողը։ Ոչ թե հասարակության ստեղծած նյութական պայմաններն ու նախադրյալներն են պայմանավորված արտաաշխատանքային ժամանակի օգտագործման բնույթով, այլ ընդհակառակն։ Ուրիշ բան է, իհարկե, որ արտաաշխատանքային ժամանակի օգտագործման բնույթն ու բովանդակությունը հակադարձ ներգործություն են ունենում ինչպես արտադրողական ուժերի զարգացման, այնպես էլ աշխատանքի արտադրողականության բարձրացման և այդ ժամանակի ռացիոնալ օգտագործման համար անհրաժեշտ նյութական պայմանների ու նախադրյալների ստեղծման վրա։ Ճիշտ է հեղինակը, երբ իր մյուս՝ «Արտաաշխատանքային ժամանակը որպես տնտեսական կատեգորիա» աշխատության 61-րդ էջում գրում է. «Աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի օգտագործումը սոցիալիստական հասարակարգում լիովին կանխորոշվում է սոցիալիզմի էությամբ, նրա արտադրողական ուժերի զարգացման աստիճանով, նրա արտադրական հարաբերությունների բնույթով» (ընդգծումը մերն է—Բ. Ա.)։

Մեր փիլիսոփայական-տնտեսագիտական գրականության մեջ հաճախ են մեջբերում Կ. Մարքսի այն հայտնի միտքը, որ ապագայի հասարակության մեջ հարստության չափանիշը կդառնա ոչ թե աշխատանքային ժամանակը, այլ ազատ ժամանակը։ Սակայն հաճախ էլ կամ չեն բացահայտում դրա էությունը, կամ էլ մեկնաբանում են միակողմանի՝ միայն տնտեսական տեսանկյունից։ Հարցն այդ ձևով է դրված նաև Հ. Պետրոսյանի աշխատություններում։

Բանը նրանում է, որ կապիտալիզմի և կոմունիստական հասարակության նկատմամբ «հարստություն» հասկացությունն օգտագործելիս Մարքսը դրանց տակ դնում էր բոլորովին տարբեր բովանդակություն։ Մարքսի բազմաթիվ աշխատություններից երևում է, որ «հարստություն» կատեգորիան շատ ավելի լայն է, քան «կապիտալ», «արժեք» կատեգորիաները։ Կոմունիզմի ժամանակ արմատապես կփոխվեն հարստության վերաբերյալ մարդկանց ըմբռնումները։ Համաձայն Մարքսի ուսմունքի, կոմունիստական հասարակությունում իսկական հարստությունը կլինի ամենից առաջ հենց ինքը՝ անհատն իր մտավոր ու ֆիզիկական պոտենցիայով, կամ ինչպես Մարքսն էր ասում, «բոլոր անհատների զարգացած արտադրողական ուժը»։ Ուրեմն, տեղի կունենա արժեքների ռևոլյուցիոն վերագնահատում՝ բառիս բուն իմաստով։

Ընկ. Հ. Պետրոսյանի աշխատություններում թույլ են տրվել առանձին կոպիտ վրիպակներ։ «Արտաաշխատանքային ժամանակը որպես տնտեսական կատեգորիա» աշխատության 41-րդ էջում կարդում ենք. «Սոցիալիստական պրակտիկայում օրինաչափություն է հանդիսանում աշխատաժամանակի չափերի անշեղորեն կատարվող կրճատումը և համապատասխանորեն աշխատանքային (պետք է լինի արտաաշխատանքային—Բ. Ա.) ժամանակի անշեղ աճը»։ Համանման վրիպակ է թույլ տրված նաև նույն աշխատության 12-րդ էջում (աշխատուժի փոխարեն՝ աշխատանք)։

Հեղինակն անփութություն է հանդես բերել նաև առանձին մեջբերումներ կատարելիս։ Վերոհիշյալ աշխատության 3-րդ էջում ՍՄԿՊ ծրագրից կատարված մեջբերումն, օրինակ, կոպիտ կերպով աղճատված է։ Աշխատություններում նկատվում են նաև անհարկի կրկնություններ և մի շարք անհաջող ձևակերպումներ։

Այդ ամենով հանդերձ, Հ. Պետրոսյանի աշխատությունները գրված են ժամանակի պահանջով և արժեքավոր են։

Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# ԲԱԼԹԻԿԱՅԻ ՆԱՎԱՍՏԻՆ՝ ԿՐԵՄԼԻ ՊԱՐԵՏ

«Ես ձեզ հետ,… կանցնեմ այն փողոցներով, որտեղով անցել եմ Իլյիչի, Յակով Միխայլովիչի, Ֆելիքս Էդմունդովիչի հետ միասին, որտեղով քայլել են պանծալի լատիշ հրաձիգները և կրեմլյան կուրսանտները։ Ես ձեզ հետ կբարձրանամ Կրեմլի պատի վրա, որտեղ սրանից ավելի քան 40 տարի առաջ դասավորել էինք գնդացիրներ, պատրաստվելով ետ մղել ապստամբած էսեռների կատաղի գրոհը։ Մենք կբարձրանանք ժողկոմսովետի շենքի երրորդ հարկը, կմտնենք մի հասարակ աշխատասենյակ, մի ոչ մեծ, համեստ բնակարան, տեսեք, բարեկամներ, ահա այստեղ ապրել, այստեղ աշխատել է Վլադիմիր Իլյիչ Լենինը»։ Այսպես է ավարտում իր հիշատակարանը փետրվարյան և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռեվոլյուցիաների ակտիվ մասնակից, 1904 թվականից պարտիայի անդամ, Մոսկվայի Կրեմլի պարետ Պավել Դմիտրիևիչ Մալկովը [1]։

Պ. Դ. Մալկովը Սմոլնու պարետն է դառնում այն օրերին (1917 թ. հոկտեմբերի 29-ին), երբ բոլշևիկյան պարտիան պետական, տնտեսական և զինվորական աշխատանքի էր առաջ քաշում շարքային բոլշևիկներին։

Շարքային նավաստու համար ծանր և դժվարին էին այդ պարտականությունները։ Բայց՝ — Ես գիտեմ, որ Սմոլնու պարետ լինելը կատակ չէ։ Այն էլ գիտեմ, որ դու համապատասխան փորձ չունես… Եթե քեզ նշանակում ենք, ուրեմն վստահում ենք… Հիշի՛ր, գլխավորն այն է, որ դու ո՛չ թե հասարակ նավաստի ես, այլ բոլշևիկ և պետք է կատարես պարտիայի ամեն մի առաջադրանքը (7),— շարունակ հնչում էին նրա ականջին պրոֆեսիոնալ բոլշևիկ Նիկոլայ Պոդվոյսկու խոսքերը։

Դժվար ժամանակներ էին։ Կերենսկին և Կրասնովը կազակային հարձակումների գլուխ կանգնած դավադրություն էին կազմակերպում և շարժվում դեպի Պետրոգրադ, յունկերները գրավել էին հեռախոսակայանը։ Մալկովը նշանակվում է յունկերների դեմ գործող ջոկատների պետ։ Այստեղ նա արդարացնում է իրեն։

Սմոլնին առաջվա նման եռուզեռի մեջ էր։ Մալկովին էր հանձնված սովետների Կենտրոնական գործադիր կոմիտեի ղեկավարության, Պետրոգրադի սովետի և ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի, հասարակական զանազան կազմակերպությունների, թերթերի ու ամսագրերի պահպանությունը։

---

1 Պ. Մալկով։ Մոսկվայի Կրեմլի պարետի հիշատակարանը, Երևան, «Հայաստան» հրատարակչություն, 1965 թ., 348 էջ։

Ծանր էր վիճակը սովետական իշխանության առաջին տարիներին։ Չկար պարեն, հագուստ, վատ էր ջեռուցումը։ Առանձնապես ծանր էր պատասխանատու աշխատողների վիճակը։ Նրանք աշխատում էին գիշեր ցերեկ, առանց հանգստի. շատերի առողջությունը բանտերում և զրկանքներից քայքայվել էր։

— Հաճախ մենք էլ էինք մրսում Սմոլնիում,— հիշում է Պ. Դ. Մալկովը,— իրենց աշխատասենյակներում մրսում էին մեր ղեկավարները, Լենինն էլ էր մրսում։ Քարածուխ և փայտ ձեռք էինք բերում հերոսական ջանքերով… (67)։

Այս ծանր կացության պայմաններում նրան է հանձնարարվում նաև Սմոլնիում ճաշարան կազմակերպելու, պարետատան աշխատողներին մթերքներով ապահովելու գործը։

1917 թվականի դեկտեմբերին Լենինի նախաձեռնությամբ ստեղծվում է Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողով (Չեկա)՝ անսկուն բոլշևիկ Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկու գլխավորությամբ։ Կամաց-կամաց կյանքն իր հունի մեջ էր մտնում։ Անհնարին էր միայն նավաստիների և կարմիրգվարդիականների ուժերով ապահովել Սմոլնու պահպանությունը։ Պետք էր գտնել կանոնավոր զորամասեր։ Եվ գտնվեցին։ Դրանք լատիշական հրաձիգ գնդերն էին՝ կազմված ռևոլյուցիային նվիրված բոլշևիկ բանվորներից։

Դրանք այն լատիշ հրաձիգներն էին, որոնք 1917—1918 թվականների ձմեռը կիսաքաղց, կիսամերկ կատարում էին ռազմառևոլյուցիոն կոմիտեի, ապա՝ Համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի, ժողկոմսովետի և ՀԿԳԿ-ի մարտական առաջադրանքները, պահպանում էին ռևոլյուցիայի միջնաբերդ Սմոլնին, սովետական կառավարությունը, Լենինին։

— Լենի՜ն։ Նրա աննկուն կամքն ուղղություն էր տալիս իրադարձություններին, նրա հզոր միտքը բաբախում էր սովետական իշխանության յուրաքանչյուր դեկրետի, յուրաքանչյուր որոշման մեջ։ Լենինի ներկայությամբ է համակված Սմոլնու ամբողջ մթնոլորտը։ Մի՞թե կարելի է ռևոլյուցիայի օրերի Սմոլնին, սովետական իշխանության առաջին ամիսների Սմոլնին պատկերացնել առանց Լենինի,— ջերմ սիրով գրում է Մալկովը (74)։

1917 թվական։ Ամեն քայլափոխին վտանգ էր սպառնում Լենինի կյանքին։ Նա ո՛չ միայն Սմոլնուց զանազան տեղեր էր մեկնում, այլ Նադեժդա Կոնստանտինովնայի հետ հաճախ դուրս էր գալիս զբոսանքի. հանգստի նրա ամենասիրած ձևն էր այդ։ Թիկնապահի մասին խոսել չէր լինում։ Նույնիսկ Յակով Միխայլովիչի և Ֆելիքս Էդմունդովիչի միջամտությունն ապարդյուն անցան։ 1918 թվականի հունվարի 1-ին Միխայլովյան մանեժի մահափորձից հետո միայն, առանց Իլյիչի կարծիքը հաշվի առնելու, կազմակերպվեց նրա կյանքի պահպանությունը։

Այնուամենայնիվ,— գրում է Մալկովը,— նույնիսկ մահափորձից հետո, ինչպես հարկն է պահպանում էինք մի կարճ ժամանակ, հաշված օրեր։ Հետո նա վճռականապես բողոքեց և պնդեց, որ վերացվի թիկնապահությունը։ Վլադիմիր Իլյիչը նորից Պետրոգրադում շրջում էր առանց թիկնապահի (82)։

Պետրոգրադում էր գտնվում սպայական ակումբը, որն սկսել էր իր հակասովետական, քայքայիչ գործունեությունը։ Մասնավոր տներում, փողոցներում նրանք զբաղվում էին թղթախաղերով, հարբեցողությամբ, անառակությամբ։ Շատ ակումբներ վերածվել էին հակառևոլյուցիոն բների. դրանց վերացման գործը Վառլամ Ավանեսովը հանձնարարում է Սմոլնիի պարետին։

Նոյեմբերի սկզբներին քաղաքով մեկ վխտում էին հարբածները, որոնց մեջ կային զինվորներ և որոշ հետամնաց բանվորներ։ Ջարդերը երբեմն տարերային բնույթ էին կրում, իսկ հաճախ մասնակցում էին հակառևոլյուցիոներները, որոնք ձգտում էին ամեն կերպ ոչնչացնել նորաստեղծ սովետական իշխանությունը։ Ջարդարարները կոտրում էին գինու պահեստների դռները, դույլերով գինի և օղի էին տանում։ Այստեղից էլ սկսվում են տուրուդմբոցները, սպանությունները, կողոպուտներն ու հրդեհները։ Նավաստիների, կարմիրգվարդիականների և ռևոլյուցիոն զինվորների նախաձեռնությամբ կանխվում է այս ամենը։

Սրտի ցավով հեղինակը անդրադարձել է կրոնշտադտցիների խայտառակության, նրանց բանդիտական շայկայի քայքայիչ գործունեությանը։ Պետք էր թափանցել այդ ջոկատը, ուսումնասիրել նրա դասավորությունը, անձամբ դիտել զինանոցները, ծանոթանալ պահակակետային ծառայությանը, հարցաքննել նավաստիներին, հայտաբերել ու պատժել մեղավորներին։ Այս հետաքննությունը հանձնարարվեց լատիշ հրաձիգների առաջին կոմունիստական ջոկատի կոմիսար Օզոլին։ Ռիգայի մետաղագործ, ընդհատակյա բոլշևիկ Օզոլի վրա կարելի է հենվել այնպես, ինչպես քարեպատի վրա, գրում է Մալկովը նրա մասին։

Սակավախոս, միշտ հանգիստ ու կայուն Օզոլը իսկապես պողպատե կամք ուներ, երբ խոսքը վերաբերում էր ռևոլյուցիայի համար պայքարելուն։ Լատիշ հրաձիգները և բոլոր նրան ճանաչողները հարգում և շատ էին սիրում Օզոլին։ Լավ մարդ էր, վստահելի (115)։ Նրա գլխավորությամբ կանխվեցին խռովությունները։

Ռևոլյուցիայի առաջին մեծ քայլը երկրում տիրող քաոսի վերացումն էր, երկաթյա կարգապահության հաստատումը։ Չնայած սովետական իշխանության թշնամիների հերյուրանքներին, քայքայիչ գործունեությանը, այնուամենայնիվ, սովետական իշխանությունը ոտքի կանգնեց. երկրում ռևոլյուցիոն կայուն կարգ հաստատվեց։

Լատիշ հրաձիգները նվիրված էին սովետական իշխանության, պրոլետարական ռևոլյուցիայի գործին։ Նրանք խիստ վճռական էին ռևոլյուցիայի թշնամիների դեմ, վախ չունեին, բացառիկ համախմբված ու կարգապահ էին։ Նրանց «կարելի էր Պիտերի կարմիրգվարդիականների և Բալթիկայի նավաստիների հետ միասին անվանել Հոկտեմբերի երկաթյա գվարդիա»։

1918 թվական. մարտ։ Իլյիչի առաջարկությամբ որոշում էր ընդունվել սովետական կառավարությունը Մոսկվա տեղափոխելու մասին։ Մալկովը հրաժեշտ է տալիս Պետերբուրգին, որից հետո Մոսկվան գավառական, հետամնաց քաղաքի տպավորություն էր թողնում։ Նեղ, ծուռումուռ, կեղտոտ փողոցները տարբերվում էին Պիտերի ընդարձակ, ուղղաձիգ պողոտաներից։ Փողոցները լեփ-լեցուն էին մուրացկաններով, սպեկուլյանտներով, խարդախ մարդկանցով։ Խանութները, կրպակներն ու ռեստորանները համարյա փակ էին։ Սրանց փոխարեն գործում էին գիշերային կաբարեներն ու անառականոցները, որտեղ հավաքվում էին ազնվականներն ու առևտրականները, օտարերկրյա դիվանագետները, սպեկուլյանտներն ու շատ ուրիշներ։

Սակայն ես Մոսկվան ճանաչեցի ոչ միանգամից,— գրում է հեղինակը։— Սովետական Ռուսաստանի նոր մայրաքաղաքն իմ առջև բացվեց աստիճանաբար։ Քայլ առ քայլ ես նրան ճանաչեցի ո՛չ միայն ճակատի, այլև թիկունքի կողմից։ Հենց ժամանելու օրն այնքան անհետաձգելի հոգսեր թափվեցին վրաս, որ ոչ միայն դիտելու և ուսումնասիրելու, այլև ինչպես հարկն է շունչ քաշելու ժամանակ չկար… Եվ այնպես, ինչպես Պիտերում, միմյանց հետևից օպերատիվ առաջադրանքներ էի ստանում՝ երբեմն Ձերժինսկուց, երբեմն Ավանեսովից, իսկ երբեմն էլ ուղղակի Յակով Միխայլովիչից, կամ նույնիսկ անձամբ Վլադիմիր Իլյիչից» (136, 144)։

Հեղինակն առանձին սիրով ու ջերմությամբ է պատմում Վլադիմիր Իլյիչի համեստության, հոգատարության, մարդասիրության, մարդկային անգերազանց պարզության մասին։ Նրա փոքրիկ աշխատասենյակը շատ պարզ էր ու համեստ։ Ոչ մի ավելորդ իր, ոչ մի շքեղություն չկար։ Նա հազվադեպ էր որևէ մեկին դիմում իրեն վերաբերող հարցերով. հարկ եղած դեպքում՝ միայն խնդրում էր։ Երբեմն զինվորական կաթսայիկը





digitised by A.R.A.R.@

ձեռքին ապուրի համար ինքն էր գնում ճաշարան։ «Թե՛ անձնական կյանքում, թե՛ շրջապատի մարդկանց հետ ունեցած հարաբերություններում Լենինն առավելագույն չափով համեստ էր, տակտով, երբեմն նույնիսկ քաշվող։ Սակայն այդ համեստությամբ ու պարզությամբ Վլադիմիր Իլյիչը միշտ մնում էր նույն Լենինը։ ...Իլյիչը կարողանում էր, հարկ եղած դեպքում, լինել տիրական և խիստ (172—173)։

Նորաստեղծ սովետական իշխանության տարբեր ծայրերից բանվորներն ու գյուղացիներն իրենց սիրելի առաջնորդին ուղարկում էին պարենի ծանրոցներ, ուղարկում էին նաև ընկերները։ Խիստ կարիքի մեջ էր Իլյիչը, բայց նա ամեն ինչ հանձնում էր դպրոցներին ու մանկատներին։ «Երեկ ընկեր Բուդյոննին ինձ մոտ էր,— ասում է Իլյիչը։— Հրաշալի ընկեր է։ Ահա, մթերքներ է բերել այստեղ, վերցրեք խնդրեմ և հանձնեցեք մանկատուն՝ երեխաներին։ Անպայման երեխաներին» (175)։

Հազարավոր բանվորների, գյուղացիների կարելի էր տեսնել Իլյիչի աշխատասենյակի մոտ հավաքված։ Նա հաճույքով էր ընդունում նրանց, զրուցում երկար, թափանցում էր հարցի էության մեջ ու իսկույն գտնում լուծումը։ Եվ Իլյիչը անպայման ստուգում էր որոշման կատարումը։

1918 թվական։ Օգոստոս։ Լենինը ծանր վիրավոր է։ Էսեռուհու սև ձեռքը փորձեց խլել նրան իր հիմնադրած, աշխարհում առաջին սոցիալիստական, բանվորա-գյուղացիական պետությունից։ Երկրի տարբեր ծայրերում ապրող միլիոնավոր աշխատավորներ անհամբեր սպասում էին թերթերի՝ Լենինի առողջական վիճակն իմանալու համար։ Ամեն առավոտ Տրոիցկի դարպասի մոտ ծաղկեփնջերով խմբված տասնյակ-հազարավոր մարդիկ, ցանկանում էին անձամբ տեսնել Լենինին։

Հոկտեմբերի կեսերին Վլադիմիր Իլյիչն արդեն ապաքինվել էր։ Նրան այլևս հնարավոր չէր պահել Գորկայում։ Մոսկվան էր սպասում նրան։

Հեղինակը բազմաթիվ ուշագրավ էջերում ցույց է տվել Վլադիմիր Իլյիչի զինակիցներ, անկոտրում կամքի տեր բոլշևիկներ Ֆ. Ձերժինսկու, Յ. Սվերդլովի, Վ. Ավանեսովի, Մ. Կալինինի, Մ. Գորկու, Դ. Բեդնու նվիրվածությունը, աշխատասիրությունը, պատասխանատվությունն ու երկաթյա կամքը։ Ռևոլյուցիայի գործին նվիրված, նրանք աշխատում էին գիշեր-ցերեկ, օրական 16—20 ժամ։ «Մարդկանց էության մեջ թափանցելու Ֆելիքս Էդմունդովիչի կարողությունը, նրա հոգեկան հիանալի հատկություններն օգնում էին երեկվա փականագործներից, խառատներից, դարբիններից ամենակարճ ժամկետում պատրաստելու սքանչելի հետախույզներ ու հակահետախույզներ...»,— գրում է Պ. Մալկովը (219)։

Լինելով Արտակարգ հանձնաժողովի նախագահ, նրա սուր աչքից չէր վրիպում ոչ մի հակառևոլյուցիոներ։ Նա վարպետությամբ կռահում էր նրանց խորամանկությունները։ Մեղադրում էր այն չեկիստներին, ովքեր կասկածում էին մարդկանց՝ առանց ապացույցների։ Ձերժինսկին անձամբ էր մշակում ու ղեկավարում լուրջ գործողությունների պլանները։ Նրան խորթ էր երկյուղը։

Յակով Միխայլովիչ Սվերդլովին լավ էր ճանաչում Վլադիմիր Իլյիչը և ըստ արժանվույն բնութագրել է նրան։ Նրա աշխատանքային օրն սկսվում էր Լենինի հետ զրուցելով։ Հիանալի հռետոր էր Սվերդլովը, կարողանում էր վարել ամենաբուռն նիստերը, որքան բորբոքվում էին կրքերը, այնքան նա հանգիստ ու անվրդով էր երևում։

Յակով Միխայլովիչը ուշադիր ու սիրալիր էր նաև Կրեմլը պահպանող մարտիկների նկատմամբ։ Հետաքրքրվում էր նրանց կենցաղով, օգնում կարիքավորներին։ Եվ պատահական չէր, որ նրան սիրում էին բոլորը։ Նրա աշխատասենյակում հաճախ կարելի էր տեսնել կոմերիտմիության ղեկավարների, սովետների նահանգային և գավառային գործկոմների նախագահների, բանակների ու դիվիզիաների հրամանատարների, պարտիական, սովետական, տնտեսական ղեկավարների, բանվորների ու գյուղացիների պատվիրակությունների, որոնք կարոտ էին նրա հախուռն կենսափորձով իմաստնացած խորհուրդներին։

Թե՛ Պետրոգրադում և թե Մոսկվայում Պ. Դ. Մալկովին էր վիճակված պայքարել հակառևոլյուցիայի դեմ, կատարել մարտական առաջադրանքները։ Առաջին հերթին պետք է պայքարել անարխիստների դեմ, որոնց միացել էին նաև խուլիգանները, խարդախները, կողոպտիչներն ու մարդասպանները։ Անարխիստների մոտ ապաստան էին գտել նաև սպիտակգվարդիականները։ Օրը ցերեկով նրանք զավթում էին տները, կալանավորում ուզած մարդուն, տարածված էին թալանն ու սպանությունը։

Ձախ էսեռներն աշխատում էին խռովությունը կազմակերպել սովետների համառուսաստանյան V համագումարի օրը։ Նրանք որոշել էին գրավել համագումարի նախագահությունը, ձերբակալել Կենտկոմի անդամներին, գլխատել սովետական կառավարությունը և իշխանությունը վերցնել իրենց ձեռքը։ Համագումարում նրանք իրենց պահում էին գյուղական ժողովի աղմկարարների նման։ Նրանք այնպես էին բղավում, սեղաններին խփում, մոլեգնում, որ երբեմն թվում էր, թե մեծամասնություն են կազմում։ Նրանք խաբեությամբ գրավում են կենտրոնական հեռագրատունը, հեռագրեր են ուղարկում իշխանությունն իրենց ձեռքն անցնելու մասին։ Բոլշևիկները ժամանակին կանխեցին այդ ամենը։

1919 թվականի ամռանը դրությունը ծանր էր։ Ամենուր արյունահեղ կռիվներ։ Մի կողմից Կոլչակի, մյուս կողմից՝ Դենիկինի, Յուդենիչի, Ռոձյանկոյի հրոսակները ջանք չէին խնայում՝ տապալելու սովետական իշխանությունը։ Նրանց ձեռքն էր անցել ամբողջ Սիբիրը, Ուրալի մի մասը, Խարկովը, Ցարիցինը, Կուրսկը, Պսկովը, Նարվան և վտանգ էր սպառնում Պետրոգրադին։ Սպիտակգվարդիականների հետ միասին գործում էին նաև անգլիական, ֆրանսիական, ամերիկյան ինտերվենտները։ Նրանք տեր ու տնօրինություն էին անում Մուրմանսկում, Արխանգելսկում։ Ոտքի էին կանգնել նաև մենշևիկները, ձախ էսեռներն ու կադետները։

— Պետք է խիստ ուժեղացնել Կրեմլի պահպանությունը, մանավանդ ցերեկները։ Մտածիր այդ մասին, միջոցներ ձեռք առ։

Ես զգաստացա։ Ավանեսովը ոչինչ հենց այնպես չէր ասում,— հիշում է հեղինակը։— Նա իզուր տեղը չի նախազգուշացնում։ ...Մեզ մոտ՝ արտակարգ հանձնաժողովին է հասել թելածայր, որը դուրս է բերված մի մեծ կծիկից։ Խոսքը մի շատ խոշոր սպիտակգվարդիական զինվորական դավադրության մասին է։ Այժմ հնարավոր չէ որևէ բան ասել սպիտակգվարդիականների զինվորական կազմի մասին, բայց այդպիսին գոյություն ունի, գործում է, դա հաստատված է, և անհրաժեշտ է ձեռք առնել նախազգուշական բոլոր հնարավոր միջոցները, ամեն բան կարելի էր սպասել (318—319)։ Վառլամ Ալեքսանդրովիչը նկատի ուներ Պետրոգրադում գտնվող սպիտակգվարդիական լրտեսական ցանցը, որը մանրակրկիտ ինֆորմացիա էր հաղորդում Յուդենիչի և Ռոձյանկոյի շտաբներին։ Պետրոգրադի գրավումից հետո հակառևոլյուցիայի սվինները կուղղվեին Մոսկվայի վրա։

Սպիտակգվարդիականները մեծ ջանքեր էին գործադրում Մոսկվայի պարտիական ակտիվի աշխատանքները ձախողելու համար։ 1919 թվականի սեպտեմբերի 25-ին նրանք ռումբ պայթեցրին հենց այն րոպեին, երբ նախագահողը՝ Ալեքսանդր Մյասնիկյանը ձայնը տվել էր հերթական հռետորին։ Սկսվեց իրարանցում։ Շատերը դուրս նետվեցին, ոմանք մի կողմ քաշվեցին։ Մոսկվայի կոմիտեի քարտուղար Վլադիմիր Միխայլովիչ Զագորսկու հանդարտ և ազդու ձայնը հանգստացրեց խուճապի մատնվածներին։

«Զագորսկին արագ բարձրացավ տեղից, դուրս եկավ նախագահության սեղանի ետևից, և վստահ հաստատուն քայլերով գնաց դեպի ծխացող հրեշը։ ...Այդ բոլորը վայրկյաններ տևեց։ Զագորսկին ռումբից հինգ, երեք, երկու քայլի վրա էր... Նա ձեռքը մեկնեց, որ լուսամուտից դուրս շպրտի ֆշշացող մահը, և ընկերներին փրկի ահավոր կործանումից, երբ այն հանկարծ ուժգին պայթեց... (343)։

Զագորսկու դիակը գտնվեց պայթյունից մի քանի ժամ անց։ Վիրավորվել էին Մյասնիկյանը, Օլմինսկին, Յարոսլավսկին և շատ ուրիշներ։

Այս նողկալի դավադրության կծիկը բացահայտվեց և անմիջապես լիկվիդացվեց Ֆելիքս Էդմունդովիչի գլխավորությամբ։

Օրեցօր առաջադրվում էին նոր հարցեր։ Ռևոլյուցիային անձնվիրաբար ծառայողների զոհվելը ոչ թե շփոթություն առաջացրեց, այլ մղեց մարդկանց պայքարելու ընդհանուր գործի հաջողության, պրոլետարական ռևոլյուցիայի նվաճումներն անձնվիրաբար պաշտպանելու։

Այդ օրերից անցել են երկար ու ձիգ տարիներ, բայց Պ. Դ. Մալկովը սրտի թրթիռով է հիշում այս ամենը։

Ամեն ինչ նոր է, ամեն ինչ գեղեցիկ... Նրա «լուսամուտից երևում է աղմկածուփ, կենսախինդ, առույգ Մոսկվան։ Լայն փողոցներով անվերջ հոսքով անցնում են աղքատություն ու տառապանք չտեսած, իրենց սեփական կյանքի, իրենց քաղաքի ու երկրի տեր մարդիկ։ Սլանում են մեր սովետական գործարաններում արտադրված հազարավոր ավտոմոբիլներ... Բարձր երկնքում ճախրում են աշխարհում իրենց նմանը չունեցող սովետական հիանալի օդանավերը... Եվ էլ ավելի բարձրանում, անափ եթերում, տիեզերքն ակոսում են Երկրի մեր սովետական արբանյակները։ Ինչքա՜ն լավ է այս աշխարհում ապրելը (347—348)։

Ռևոլյուցիոն ժամանակաշրջանի ռոմանտիկայով է տոգորված Կրեմլի պարետի գիրքը, որը կարդացվում է հափշտակությամբ։ Նրա էջերից զգում եք հեղինակի անկեղծությունն ու պարզությունը։ Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ղեկավարների հարուստ կյանքի Մալկովի պատմած դրվագները և էպիզոդները գերում են ընթերցողին իրենց ջերմությամբ և անմիջականությամբ։

Չնայած լեզվական մի շարք թերություններին, պետք է ասել, որ թարգմանիչ Վ. Պողոսյանը հիմնականում հաղթահարել է թարգմանության հետ կապված դժվարությունները, կատարելով շնորհակալ աշխատանք։

Զ. ԱՍԱՏՐՅԱՆ

---



digitised by A.R.A.R.@

# «ՊՐՈՖԵՍԻԱՅԻ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒ՛ՆԸ»

Այս խորագիրն ունի «Կոմունիզմի ուղիով» թերթի հուլիսի 4-ի համարում տպագրված հոդվածը: Գրական տերմինով ասած դա մի ներբող է Մուղանի կոլտնտեսության ջրվոր, կոմունիստ Նարիբեկ Ռոստոմյանի մասին:

«Կյանքի հինգերորդ տասնամյակն է թևակոխել Նարիբեկ Ռոստոմյանը,— կարդում ենք այդ հոդվածում: Երկար տարիների աշխատող է, միշտ էլ գործ է ունեցել հողի հետ, և միշտ էլ իբրև հաջողության աղբյուրն ընդունել է բարեխղճությունն ու աշխատասիրությունը»:

Եվ հոդվածի հեղինակներ՝ Հ. Մհերյանն ու Դ. Գևորգյանը ցույց են տալիս Նարիբեկ Ռոստոմյանի բարեխղճության և աշխատասիրության երկու օրինակ: Դրանք այնքան էլ նշանակալից և ցայտուն չեն, բայց շատ բնորոշ են ազնիվ, իր գործին նվիրված մարդու հոգեբանությանն ու գործելակերպին:

Ի՞նչ է ջրվորությունը, հասարակ, սովորական, բոլորին մատչելի գյուղատնտեսական մի պրոֆեսիա: Բայց հասարակ թվացող այդ պրոֆեսիան էլ իր ուժը, գեղեցկությունն ու հմայքն ունի: Ջրվորությունը նույնքան հրճվանք և ուրախություն է պատճառում Նարիբեկ Ռոստոմյանին, ինչպես հաջողված կտավը՝ նկարչին, բանաստեղծությունը՝ պոետին, վիրահատությունը՝ վիրաբույժին:

«Հոգնածությունը ցրվում է ուրախության այն զգացումից, որ կարող է ունենալ միայն ջրվորը, երբ հագեցնում է պապակած հողի ծարավը»: Իսկ պապակած հողին ժամանակին և կուշտ ջուր տալը բերքի առատության մեծ նախադրյալ է: Եվ երբ առատ է բանջարեղենը, եգիպտացորենը, բամբակը, խաղողը, դրանում իր համեստ վաստակն ունի ջրվորը: Դրա մեջ է տեսնում Նարիբեկը իր պրոֆեսիայի ուժն ու արժանիքը: Եվ նա հպարտանում է իր պրոֆեսիայով:

Պրոֆեսիայի հպարտության այդ զգացումն են դրվատում հոդվածի հեղինակները:

Այդ բնույթի հոդվածը «Կոմունիզմի ուղիով» թերթում արդեն առաջինը չէ: Այս տարվա հունիսի 20-ին թերթը տպագրեց Գ. Դեվրիկյանի «Համայնական դաշտերի տիրակալը» հոդվածը, որը խոսում է Աղջաղալայի կոլտնտեսության մեխանիզատոր Գագիկ Գևորգյանի աշխատանքային սխրագործությունների, իր պրոֆեսիայի նկատմամբ, համայնական դաշտերի նկատմամբ ունեցած ջերմ սիրո և հպարտության մասին:

Այդ բնույթի հոդվածները ներգործուն են, հրապուրիչ: Դրանք ընթերցողների առջև բաց են անում հողի մարդկանց ներաշխարհը, ցույց են տալիս բնավորություն, հոգեբանություն, զգացմունքներ, ձգտումներ: Շաբլոնից և շտամպից դուրս են դրանք:

Այդ հոդվածներն օգնում են հին սերնդի աշխատանքային փառավոր տրադիցիաներով գյուղական երիտասարդության մեջ սեր և նվիրվածություն դաստիարակել հողագործի, մեխանիզատորի, անասնապահի, ջրվորի պրոֆեսիաների հանդեպ, հարազատ գյուղի, նրա հող ու ջրի, ծառաստանների ու բուրաստանների հանդեպ:

Ժուռնալիստի աշխատանքում այդ շատ կարևոր է: Այդ է թելադրում մարտյան պլենումը: Բանն այն չէ, որ հոդվածներում շատ թվեր և փաստեր լինեն: Կարևորն այն է, որ փաստը խոր վերլուծման ենթարկվի, փաստերի համեմատություն արվի, գտնվի նրա միջուկը. ճիշտ ընդհանրացումներ արվի:

Գյուղի մարդկանց անձնվեր, անշահախնդիր աշխատանքից է կախված գյուղատնտեսության առաջընթացը, նրա վերելքը:

Այդ մարդկանց, նրանց պրոֆեսիաների մասին է, որ պետք է գրել խորը սիրով և ակնածանքով: «Կոմունիզմի ուղիով» թերթը այդ ուղղությամբ առաջին քայլերն է անում: Այդ են վկայում վերը նշված հոդվածները:

Ռ. ՇԻՐՈՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 10453 Պատվեր 2126 Տիրաժ 9000 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 27/VIII 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գիտական կոմունիզմի մասին: *Ե., «Հայաստան» հրատ., 1965, 512 էջ:*

*Այս քրեստոմատիայում զետեղված են Մարքսի, Էնգելսի և Լենինի ասույթները գիտական կոմունիզմի մասին: Գրքում նյութերը բաշխված են ըստ գլուխների, գլուխները՝ ըստ հարցերի, որը կատարվել է թեմատիկ սկզբունքով: Այդ պատճառով ասույթների դասավորումը միշտ չէ, որ համապատասխանում է ժամանակագրական հաջորդականությանը: Գիրքը կազմելիս նկատի է ունեցվել գիտական կոմունիզմի հիմունքների ծրագրի նախագիծը:*

ԲՐՈՒՏՅԱՆ Գ. Ա.— Կյանքը և փիլիսոփայությունը *(Մեքսիկական փիլիսոփայական կոնգրեսի մասնակցի նոթերից): Ե., «Հայաստան» հրատ., 1965, 190 էջ:*

*Փիլիսոփայական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Բրուտյանը այս գրքում պատմում է այն փիլիսոփայական հարցերի (մարդու պրոբլեմը, դարաշրջանի քննադատությունը և այլն) մասին, որոնք քննարկման նյութ են դարձել մեքսիկական (Մեխիկո 1963 թ.) փիլիսոփայական կոնգրեսի կողմից, ինչպես նաև շարադրում է իր տպավորությունները հիշյալ երկրի մասին:*

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԷԴ. Շ.— Հայ փիլիսոփայական միտքը XIX դարի առաջին կեսին: *Ե., «Միտք» հրատ., 1965, 322 էջ:*

*Հեղինակը հարուստ նյութերի հիման վրա շարադրել է հայ փիլիսոփայական մտքի ամենից քիչ ուսումնասիրված շրջանի մատերիալիզմի և իդեալիզմի պայքարի առանձնահատկությունները և նոր աշխարհայացքի ձևավորումը ինչպես Հայաստանում, այնպես էլ Սփյուռքում:*

Ադրբեջանի զավակները—Սովետական Միության հերոսները: *Բ., Ազերնեշր, 1965, 340 էջ:*

*Գրքում զետեղված են Ադրբեջանի Սովետական Միության 102 հերոսների մարտական սխրագործությունները, ռազմա-քաղաքական ակտիվ գործունեությունը, աննախադեպ անձնազոհությունը և ֆաշիստական ուժերի դեմ հերոսական պայքարի վառ դրվագները կերպարող ակնարկներ:*

ՇԱՔԱՐՅԱՆ Հ. Գ.— Ողջախոհության տեղը իմացության պրոցեսում: *Ե., «Միտք» հրատ., 1965, 112 էջ:*

*Այս ուսումնասիրությունը հայ փիլիսոփայական գրականության մեջ առաջինն է բացահայտում ողջախոհության տրամաբանական կառուցվածքն ու բովանդակությունը: Գրքում քննության են առնվում նաև գիտական լեզվի և գիտության կողմից առաջադրված իմացաբանության հետ առնչվող այլ հարցեր:*

ՆԵՐՍԻՍՅԱՆ Մ. Գ.— 1812 թվականի հայրենական պատերազմը և Կովկասի ժողովուրդները: *Ե., ԳԱ հրատ., 1965, 416 էջ:*

*Ակադեմիկոս Մ. Ներսիսյանի այս աշխատության մեջ (ռուսերեն) սկզբնաղբյուրների, փաստաթղթերի և այլ գրականության ուսումնասիրության հիման վրա շարադրված է Կովկասի ժողովուրդների ակտիվ մասնակցությունը 1812 թվականի Հայրենական պատերազմին: Աշխատության մեջ մասնավորապես մատնանշվում է Կովկասյան ազգային զորամասերի, անհատ ռազմիկների ակտիվ մասնակցությունը 1812—1813 թթ. մարտական գործողություններին:*

digitised by A.R.A.R.@

41408



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՐԱՑՈՒՅՑ (1963 Թ.)

## ՄԱՐՏԻ 16

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի հիդրոդինամիկայի ինստիտուտում ստեղծված է հզոր իմպուլսային ջրաշափ, որը զարգացնում է մինչև 60 հազար ատմոսֆեր ճնշում: Սիբիրցիների հիդրոթնդանոթը ի վիճակի է ճեղքելու ուզածդ ամրության լեռնային ապարը:

## ԱՊՐԻԼԻ 1

Սովետական աստղագետ Պ. Շչեգլովը հայտնագործել է, որ մեր երկրագունդը շրջապատում է տափարակ ջրածնային ամպ: Ըստ հաշվումների այն գտնվում է Երկրագնդից 10 հազար կիլոմետրից ոչ հեռու: Մինչ այդ հայտնի է եղել, որ ջրի գոլորշիները և մեթանը, բարձրանալով 80 կիլոմետր, քայքայվում են, անջատելով ջրածին: Բայց դրանց հետագա ճակատագիրը Երկրի մոտակայքում պարզ չէր: Այնինչ ջրածինը տիեզերքի հիմնական շինանյութն է: Պ. Շչեգլովին, որը փորձել է վերականգնել ջրածնի կարմիր գծի ճառագայթման տեղաբաշխումը, հաջողվել է ստեղծել մի սարք, որը 50 անգամ ավելի զգայուն է, քան այդ նպատակի համար մինչ այդ կիրառվածները: Հենց դրա օգնությամբ էլ աշխարհում առաջին անգամ ստացվել է Երկրի մոտակայքի ջրածնային ամպի մի շարք լուսանկարներ: Նրա ցուցումներով ամպը շարժվում է աստղաբաշխական իմաստով ոչ մեծ արագությամբ մինչև 5 կիլոմետր վայրկյան:

## ԱՊՐԻԼԻ 4

Պատմական թանգարանի արխիվում գտնվել է կապիտան Վիտուս Բերինգի էքսպեդիցիայի ամփոփիչ քարտեզը, որի աշխարհագրական մանրամասնությունները զարմացնում են իրենց գիտական փաստացիությամբ: Ենթադրում են, որ դրա հեղինակը եղել է Միչման Պյոտր Չապլինը՝ Բերինգի արշավանքի բոլոր քարտեզների կազմողը: Քարտեզում ամենաարժեքավոր տվյալները Անադիրյան ծոցի և Բերինգի նեղուցի խորության մասին է: Ընդամենը նշված է 23 չափում: Դրանք չկան Բերինգի էքսպեդիցիայի ամփոփիչ քարտեզի մինչև այսօր հայտնի պատճեններից ոչ մեկում: Խորության չափումները հետաքրքիր են ոչ միայն այն բանով, որ առաջին չափումներն են օվկիանոսի այդ տեղում, դրանք օգնում են ճշգրտելու Բերինգի նավարկության ամբողջ ճանապարհը և հատկապես նրա վերջին էտապը:

## ԱՊՐԻԼԻ 15

Լենինյան գիտությունների ակադեմիայում էքսպերիմենտալ բիոլոգիայի ինստիտուտի գիտնականները պրոֆեսոր Եժի Կոնորսկու ղեկավարությամբ ավարտել են կարևոր փորձ, որի ընթացքում կենդանի օրգանիզմից անջատված ուղեղը մի քանի տասնյակ օր ապրել ու աշխատել է:

## ՄԱՅԻՍԻ 18

ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի կենդանաբանական ինստիտուտի պրոֆեսոր Գ. Լինդբերգը նոր փաստերով հաստատել է այն ենթադրությունը, որ գոյություն ունի հյուսիս-ատլանտյան ցամաք՝ խորասուզված 4000—5000 մետր խորությունում: Գիտնականը գրում է, որ երրորդական շրջանում գոյություն է ունեցել «Պալեո-Հուդզոն» գետային սիստեմ, որը Հյուսիսային Ամերիկայի արևելյան առափնյա գետերը կապում է Արևմտյան Եվրոպայի գետերի հետ Իսլանդիայի շրջանում:

digitised by